# ՀԱՅԿԱԿԱՆ ՃԳՆԱԺԱՄՆ

## ԵՒ

# ՎԵՐԱԾՆՈՒԹԻՒՆ

ԳԻՆՆ է. Թղթակազմ, 50 սէնթ,

Լաթակազմ, 75 սէնթ։

# ՀԱՅԿԱԿԱՆ ՃԳՆԱԺԱՄՆ

ԵՒ

# ՎԵՐԱԾՆՈՒԹԻՒՆ



Մ. ՍՄԲԱՏ ԳԱԲՐԻԷԼԵԱՆ

(Խմբագիր "ՀԱՅՔ"ի 1891—98.— Հեղինակ "Bleeding Armenia"ի, "Facts About Armenia"ի, եայլն)



ՊՈՍԹՈՆ

ԱՏԼԱՆՏԵԱՆ ՏՊԱՐԱՆ

1905

# ՅԱՌԱՋԱԲԱՆ

*Ազգի մը բազմադարեան կեանքին մէջ կուգան վայրկեաններ ուր անոր պատմութիւն սրարշաւ ընթացք մը կ'առնէ, դարձակէտի մը կը հասնի և նոր ուղղութեամբ մը թաւալիլ կը սկսի։ Այսպէս եղած է մեր Ազգին համար 1878էն ի վեր։ Խոշոր դէպքերու բաղխած է անիկա և ցխորս իր էութեան ցնցուած։ Ի՞նչպէս կը պատասխանէ հայ ժողովուրդը այդ ցնցումին։ Եթէ թոյլ ու անբաւական է իր հակազդեցութիւնը, չպիտի զօրէ ինքզինք պատշաճեցնել միջավայրի փոփոխութիւններուն և զառամեալի վայրածիգ ուղղութեամբ պիտի սպառէ իր գոյութեան մնացորդը։ Իսկ եթէ, ընդհակառակն, կորովի է հակազդեցութիւնը, նկարագրի փառաւոր հոլովոյթ մը պիտի կրէ, իր ուժերը կեդրոնաձիգ շարժումով մը պիտի կազմակերպուին ու առատօրէն արդիւնաւորին — Ազգը Վերածնութեան դարագլուխ մը պիտի սկսի։*

*Անիկա է ճգնաժամական կացութիւն մը յորպիսում հայ Ազգը հազիւ երկու կամ երեք անգամ գտնուած է յընթացս իր երեք հազար տարուան պատմութեան։*

*Ու դեռ սկիզբն է երկանց։ Խոշոր դէպքեր պատահեցան, աւելի կարեւորները նոր պիտի գան, ու կրնան գալ մօտիկ ապագայի մը մէջ։ Արեւելեան ահագին ու կնճռոտ խնդիրը վերջապէս պիտի ստանայ իր լուծումը գուցէ մեծադղորդ դէպքերու հետեւանօք, ու Արեւելքը պիտի ենթարկուի Արեւմտեան տիրապետող ազդեցութիւններու։*

Ի՞նչ պիտի ըլլայ հայկական կացութիւնը այդ յեղաշրջումներէն յետոյ։ Ատիկա կախում պիտի ունենայ մեզմէ։ Մեր Ազգը առաջնորդի դիրքին պատրաստուած պէտք է ըլլայ իր նախահոգ ու բոլորանուէր ճիգերուն շնորհիւ։

Ներկայ երկասիրութեանս նպատակն է վերլուծել մեր ազգային վերջին փորձառութիւններն և նշանակել անոնցմէ բղխող կենսական դասերը։ Հայկական ներկայ ճգնաժամին ծագումն ու ընթացքն, ազգային և միջազգային տեսակէտներէ, նկարագրելէ յետոյ՝ մատնանիշ կ'ընեմ գործունէութեան արդիւնաւէտ մեթոտը զոր ազգային փորձառութիւնն ու բանը կը յանձնարարեն։

Այս դժուարին վերլուծումն ըրած եմ անվերապահ քննադատութեան դժպհի հետեւանքներէն անվեհեր։ Խծբծելու և խեղաթիւրելու իրենց քաջավարժ ճարտարութիւնն ի հանդէս պիտի բերեն անշուշտ անոնք որոնք պիտի չուզեն հասկնալ, սակայն հայ հանրութեան անհուն մեծամասնութիւնն իր ազգային մտածումներուն անպղտոր ու անվախ արտայայտութիւնն պիտի նկատէ այս գիրքը։ Ու կը հաւատամ թէ Ազգս, տէր ըլլալով ինքն իրեն, պիտի փութայ մեթոտեալ ճիգերով ղեկավարել իր անխոտոր ընթացքը դէպ ազգային նպատակն վեհ ու փառաւոր։

Մայիս, 1905

412 West, 23rd Street,
New York.

Մ· Ս· ԳԱԲՐԻԷԼԵԱՆ

# Ց Ա Ն Կ

Էջ

Գլուխ Ա.—Ազգաց Կենսական Պայքարներն, 1
Գլ. Բ.—Ներկայ Հայ Ճգնաժամին Ծագումը, 15
Գլ. Գ.—Հալածանք և Ընդհանուր Ջարդ, 24
Գլ. Դ.—Հայոց Դիւանագիտական գործունէութիւնը, 45
Գլ. Ե.—Հայոց Յեղափոխական Գործունէութիւնը, 61
Գլ. Զ.—Հայ Յեղափոխական Ընկերութիւնները և Հայ Ժողովուրդը, 79
Գլ. Է.—Եւրոպա և Հայկական Շարժումը, 103
Գլ. Ը.—Հայկական Դատը Քաղաքակիրթ Աշխարհի առջև, 143
Գլ. Թ.—Հայկական Դատը Օսմանեան Կառավարութեան առջև, 172
Գլ. Ժ.—Հայկական Գործունէութեան Մեթոտը, 190
Գլ. ԺԱ.—Ազգային Նկարագիրն և Համերաշխութիւն Հայոց, 205
Գլ. ԺԲ.—Կենսական Ճիգը, 214
Վերջաբան, Հայկական Փառաւոր Հեռանկարն, 222

# ՀԱՅԿԱԿԱՆ ՃԳՆԱԺԱՄՆ ԵՒ ՎԵՐԱԾՆՈՒԹԻՒՆ

## ԳԼՈՒԽ Ա.

## ԸՋԳԱՑ ԿԵՆՍԱԿԱՆ ՊԱՑՔԱՐՆԵՐՆ

Բազմավտակ ու գետաշատ Հայաստանի զաւակ՝ ես փափաքեցայ Նիակարայի Ջրվէժը տեսնել. տեսայ զայն հերու եւ այս տարի դարձեալ գնացի տեսնել զնոյն։ Երեք օր ժուռ եկայ անոր աջ ու ձախ եզերացը վրայ։ Անոր հիասքանչ երեւոյթներն կենդանի կը մնան երեւակայութեանս մէջ։ Միայն Ջրվէժը չէ հրաշալիքը, այլ գետին ընթացքը անկէ վեր ու վար՝ երեք կամ չորս մղոն երկայնութեան մը վրայ, ուր մեծ Արուեստագէտը կը թուի ամփոփ բայց ամենահզօր կերպով նկարագրել մեծ ազգերու կեանքին բազմարկած հոլովումը (evolution)։ Հիացած կը դիտեմ գետը որ քանի մը ճիւղերու բաժնուած կը վազէ արշաւասոյր եւ ամեհի նժոյգի մը պէս կը վիժի խոր ձորին մէջ, կը գոռայ, կը փրփրայ, ջրա-

չոգիի անհուն միգամած մը կը բարձրացնէ դէպ երկինք, ու ժայռերու մէջէն իր ճամբան բանալով՝ խորտուբորտ վիմուտքին վրայէն կ'ընթանայ մոլեգին՝ մեծադղորդ սահանք մը կազմելով։ Քիչ մը աւելի վարը, պատերուն զարնուող գինովի մը պէս, ճամբէն դուրս ելած կը նետուի դէպ ի ցամաքը և չզօրելով բըլրոց մէջէն նոր ճամբայ մը ստեղծել, ահագին պտոյտ մը կ'ընէ և կը դառնայ՝ կատաղութենէն զգօնացած՝ դէպ ի բնական ուղին և կ'սկսի խաղաղ ու լուռ ընթացք մը ուր Նիակարա կը թուի անյատակ խոր և վսեմօրէն լայն, եւ իր լռիկ ու անվրդով վազքովը զօրութեան ու վեհափառութեան աւելի խոր տպաւորութիւն կը կ'ընէ քան երբ քիչ մը վերեւ ահեղագոչ աղմուկով ու վարագաբար կը սրանար ապառաժուտին վրայէն։

Գետին այս բազմազան երեւոյթներուն հանգունատիպ է մեծ ազգերու ընթացքը դարերու մէջէն։ Ազգն ալ ունի իր ճղճիմ ծագումը իբրեւ աղբերակէ մը, իր աստիճանական աճումը իբրեւ այլեայլ վտակաց իրեն խառնուելովը, իր անմիաբանական ճղատումները, իր բարձունքներէ վար ահագին անկումները, իր արբեցութիւնները, իր յեղափոխական մեծադղորդ սահանքները, իր ցնորական ու մոլար պտոյտներն անհնարութեանց ետեւէ, իր իմաստուն միացումներն ու հանդարտ, խաղաղ, հզօր յառաջխաղացութիւններն։

Սակայն ինչպէս որ գետի մը հանդարտասահ ընթացքներէն աւելի անոր մեծադղորդ ջրվէժներն ու ահագնագոռ սահանքներն են որ

մեր հիացեալ մտադրութիւնը կը գրաւեն, նըմանապէս ազգաց երկար պատմութեան ճգնաժամերն կամ վճռական պայքարներն են որ մեր ամենաջերմ հետաքրքրութիւնը կը գրգռեն, որովհետեւ ճգնաժամը ազգի մը ճակատագրին կ'ազդէ, անոր վերականգնումն կամ անկումը կը նախասահմանէ անոր մասնաւոր ուղղութիւն մը հարկադրելով երկար դարերու համար։

Այսպիսի մեծ ու վճռական դէպքերու կարգէն են, օրինակի համար, Սարտիսի առումն ու Լիւդիոյ թագաւորութեան կործանումն ի ձեռն Մեծին Կիւրոսի, 546 ին Ն. Ք., երբ պարսկական կայսրութեան հիմնարկութեամբը աշխարհի տիրապետութիւնը Սեմական ցեղին ձեռքէն ելլելով՝ կ'անցնի Արիական կամ Հնդեւրոպական ցեղին առ յաւէտ։ — Մարաթոնի ճակատամարտը, 490 ին Ն. Ք., երբ Հելլենք յաղթելով պարսկական արշաւանաց վիթխարի բանակին՝ կը փրկեն յունական քաղաքակրթութիւնը ասիականին արբանակելու վտանգէն։ — Արմինիոսի յաղթութիւնը Հռովմէական մեծազօր բանակին վրայ, 9 թուականին Յ. Ք., որով Գերման ցեղին ինքնութիւնն ու անկախութիւնը վճռուած կ'ըլլայ։ — Թուռի ճակատամարտը, 732 ին, յորում քրիստոնեայ իշխանք յաղթելով Ապտուրրահմանի՝ կը կասեցունեն առ յաւէտ մահմետականութեան սպառնալից ընթացքը եւ որով կը վճռուի Խաչին՝ փոխանակ Մահիկին՝ տիրապետութիւնը Եւրոպիոյ վրայ։ — Վալմիի ճակատամարտը, 1792 ին, յորում յեղափոխական Ֆռանսացւոց յաղթութիւնը Եւրոպական

*միապետներուն բանակին վրայ՝ փառաւորապէս կ'երաշխաւորէ արդարութեան նորածին կարգերն որոնք միջնադարեան զեղծումներու շըրջանն աւարտած կը հռչակէին ու կը սկսէին «արդի ժամանակներն։» Գերման բանաստեղծն, անմահն Կէօթէ, որ բրուսական բանակին մէջ էր ի Վալմի, ի տես Ֆռանսացւոց սքանչելի արութեանն ու անակնկալ յաղթութեանը, սա մարգարէական յայտարարութիւնն ըրաւ. «Այս օրս ու այս տեղ նոր դարաշրջան մը կը սկսի աշխարհի պատմութեան համար։»*

*Այս յիշած օրինակներուս մէջ պզտիկ բանակն է որ մեծագունին կը յաղթէ եւ նուազ վարժուածն է որ փորձ գունդերու վրայ զարմանալի գերազանցութիւն մը ցոյց կուտայ. եւ գաղտնիքը հոս է որ պզտիկ բանակը մեծ իտէալի մը յաղթանակին համար կը կռուէր ներշընչեալ խանդավառութեամբ։*

*Կան սակայն ճգնաժամական մեծ դէպքեր եւս ուր ո՛չ փառաւոր յաղթութիւն մը այլ ահաւոր ջախջախում մ'է որ կուգայ փքացած ու մոլորած ազգ մը ցնցել եւ անոր ներքին ախտաւորութիւնն երեւան հանելով՝ առիթ կը ըլլայ փրկաւէտ ճիգերու։ Այնպէս եղաւ, օրինակի համար, երբ Գերմանացիք, 1806 ին, Եենայի ճակատամարտին մէջ Մեծն Նաբոլէոնէն կրեցին սարսափելի ջախջախումը և զգօնանալով իրենց փցուն յաւակնութիւններէն ու երազուն միտումներէն, մտան ճշմարիտ ազգային մեծութեան առաջնորդող շաւիղը։ Այդ թուականէն վաթսուն և չորս տարի յետոյ, 1870 ին, դերերը կը փոխանակուին այս երկու մեծ ազգե-*

րուն միջեւ, և Գերմանացիք.են որ երկարաչունչ աշխատանքով կազմակերպուած ահագին զօրութեան մը ապացոյցը կուտան, և Ցռանսա է որ պարտութեան բաժակը ցմրուր քամելէ յետոյ կ'ուշաբերի եւ կը սկսի բոլորանուէր ճիգերով վերակազմել իր կրթական, վարչական ու զինուորական կարգերը եւ կը հիացնէ աշխարհ արագապէս հասնելով իր այսօրուան հզօրագոյն ու նախանձելի վիճակին։

Դէպքերու այս վերջին կարգին կը վերաբերի նաև այն նուաստացումը զոր ռուս կայսրութիւնը կը կրէ այսօր Ճարոնի հարուածներուն տակ և յոյս կայ, ինչպէս կ'երեւի ինչ ինչ շարժումներէ, որ Ռուսիա գիտակցութիւնն ունենայ իր ներքին տկարութեան ու իր մոլար քաղաքականութեան հանդէպ իր հպատակ ցեղերուն, և արդիացնելով իր կրթական ու վարչական կարգերն՝ սկսի հսկայաքայլ ընթացք մը դէպի ճշմարիտ մեծութիւն։

ՀԱՅ ԱԶԳՆ ալ, իբրեւ մեծ ազգ մը, իր գոյութեան բազմադարեան ընթացքին մէջ ունեցած է փառաց ինչպէս նաեւ տառապանաց շրջաններ, իր կորովի եւ դիւցազնական խոյանքներն դէպի վեր ու իր տկար սահումներն դէպ ի վար։ Որո՞նք են մեր պատմութեան ամենէն կարեւոր դէպքերն կամ կենսական փորձառութիւններն։ Այս հարցման պատասխանելու համար պէտք պիտի ըլլար մեր բովանդակ պատմութիւնը գէթ արագօրէն յիշատակել՝ չեշտելով անոր երկար հոլովման դարձի կէտերն, ինչ որ հոս չունիմ ընել։ Ստիպուած եմ միայն յետահայեաց ակնարկով մը ներկա-

յացնել անոր հնագոյն շրջանը որուն վրայ հին քաղաքակիրթ արեւելքի արձանագրութեանց ընթերցումներն նոր լոյս սփռած են, որպէսզի կարենամ Հայաստանի ամենէն հին և հիմնական փոխակերպութիւնը մատնանիշ ընել:

Ասորեստանեայց արձանագրութիւններն Ուրարդու (Արարատ) կը կոչեն մեր երկիրը, որ Նայիրի կոչուած փոքրիկ իշխանութեանց վրայ Արարատի տիրապետութեամբը կազմուած էր: Հայաստանի առաջին պատմական յիշատակութիւնը 1100 թուականին մօտ կ'իյնայ Ն. Ք.: Ուրեմն մենք ճիշդ երեք հազար տարուան ծանօթ պատմութիւն մ'ունինք: Ասորեստանի միապետը, Դիկղաթբիլէսէր Ա է որ այս ամենահին պատմական կէտը մեզի կ'ընծայէ, արձանագրելով իր յարձակումն Արարատի վրայ: Սաղմանասար Բ կը ձեռնարկէ տիրել անոր եւ 860 եւ 857 թուականներուն կ'արշաւէ յԱրարատ եւ «Արամէ» թագաւորին կը յաղթէ: Նոր ազգատոհմ մը կ'ելլէ Արարատի գահը, Սարտուրիս Ա ըլլալով առաջին գահակալը: Սա նոր աշխարհակալութիւններով կ'ընդարձակէ ու կը զօրացնէ իր իշխանութիւնը անանկ որ երբ Ասորեստանցիք նորէն 850, 833 եւ 829 թուականներուն կը նորոգեն իրենց յարձակումներն՝ անյաջող ետ կը դառնան: Սաղմանասէր Գ (782 - 773) վեց ապարդիւն պայքարներ կը մղէ Արարատի դէմ որուն զօրութիւնը սկսած էր լուրջ սպառնալիք մը նկատուիլ Նինուէի մէջ: Արկիսդիս թագաւորը կը յաջողի Ասորեստանեայց երկիրներէն ալ կարեւոր մասերու տիրանալ: Իր յաջորդը, Սարտուրիս Բ, շարունակելով սահմանակից երկիր-

ներ առնել, կը փորձէ նոյն իսկ Սիւրիոյ աշխարհակալութիւնը՝ յաջողած ըլլալով հիւսիսային թագաւորներ իրեն հետ ի դաշնակցութիւն առնել։ Այս ատեններ է որ Արարատեան ահագին կայսրութիւն մը հիմնարկուելու վրայ կ՚երեւէր՝ Ասորեստանեային տեղը գրաւելու։ Երկու գօրութիւններուն միջեւ կը սկսի մրցակցութեան կատաղի պայքարը, յորում վերջապէս Սարտուրիս կը ջախջախուի եւ Արարատ նորէն նախկին համեստ սահմաններուն կը վերածուի (735)։ Վան մայրաքաղաքն ալ կը պաշարեն թշնամիք բայց չեն յաջողիր առնել։ Սարտուրիսի յաջորդին, Ուրսայի օրով, Սարկոն Բ նորէն կը զարնըուի Արարատի հետ։ Ուրսայի որդի Արկիշդիս Բ ի ի գահ ելլելուն՝ Արարատ զգալապէս պզտիկցած տէրութիւն մ՚էր։

Մեր պատմութեան հնագոյն շրջանը հոս կ՚աւարտի։ Հայաստան մեծամեծ փոփոխութիւններ կը կրէ 700 էն ց 600 թուականն Ն.Ք., որոց մասին թէեւ պատմութիւնը լուռ է, սակայն հետեւեալ դարուն, վեցերորդին դէպքերն կ՚ապացուցանեն թէ Հայաստան նոր ոգի ու կերպարան էր առած այդ միջոցին, հնդեւրոպական ցեղ մը ու լեզու մը հոն տիրել սկսած էին հնոց տեղը։ Հին ցեղի ժողովուրդը բնաջինջ եղած չէր, այլ նորին մէջ ընկղմած էր։

Ասիկա արմատական յեղափոխութիւն մ՚էր մեր երկրին համար, ու ամենէն մեծը որ ցարդ տեղի ունեցած ըլլայ։ Եւ որովհետեւ մեր պատմութեան այս ամենակարեւոր էջը անգիր մնացած է, ստիպուած ենք անոր կենսական հանգամա-

նայցը վրայ գաղափար մը ձեւացնել ընդհանուր ակնարկ մ'արձակելով արեւելքի պատմութեան հոլովումի այն շրջանին վրայ որուն մէկ մասը կը կազմէ հայկական այս յեղափոխութիւնը։

Առաջին տիեզերական կայսրութիւնը զոր աշխարհ տեսած է, հնդեւրոպական էր, Մեծն Կիւրոսի ձեռքով հիմնարկուած։ Անկէ առաջ սեմական ցեղն էր որ, իր գլխաւոր կեդրոններն ունենալով ի Բաբելոն և ի Նինուէ, տիրապետած էր։ Թէպէտ Ն. Ք. վեցերորդ դարուն է որ հնդեւրոպական տիրապետութիւնը համաշխարհային կայսրութեան մը համեմատութիւններն կ'առնէ, սակայն այս փոփոխութիւնը արդիւնքն ու պսակումն էր երկար նախապատրաստական հոլովումի մը։ Հնդեւրոպական կամ արիական ցեղէն գաղթային հոսանք մը դարերով թաւալած ու կամաց կամաց սեմական տիրապետութեան սահմաններուն վրայ խտացած էր և մանր թագաւորութիւններ կազմած։ Վերջինները՝ բաղդատմամբ սեմականներուն՝ բիրտ լեռնցիներ կը համարուէին, բարբարոսներ, սակայն ունէին շատ աւելի բարձր բարոյական մը ու աւելի մաքուր կրօնք մը։ Նորափթիթ այս ցեղը յաջողեցաւ կործանել նրբացած ու ապականած սեմական զօրութիւններն, նախ զԱսորեստանի եւ ապա զԲաբելոնի և զԼիւդիոյ, ճիշդ ինչպէս որ դարեր ետեւ հիւսիսէն հոսող բարբարոսները պիտի ընէին զեղծ ու նրբացած հռովմայական զօրութեան, ողողելով նախ Լոմպարտիոյ դաշտերն ու հուսկ յետոյ իրենց մուտքը գործելով ի փառապանծն Հռովմ։

Մանտայի մհապետը՝ Կիաքսար է որ 607 ին կը կործանէ զՆինուէ, սակայն Կիւրոսի վերապահուած էր մեծ աշխարհակալի դերը։ Արիական փոքր իշխանութեան մը, Եղամի, իշխանն էր Կիւրոս, ընդ վեհապետութեամբ Կիաքսարի յաջորդին՝ Աժդահակայ։ Իշխանութեան անցաւ 559 ին և իր վեհապետին հետ ընդհարում մ'ունեցաւ 550 ին ու առաւ անոր մայրաքաղաքն զԵկբատան, այսպէս սկսելով իր աշխարհակալութեան ասպարէզը։ Աշխարհի պատմութեան մէջ չկայ աշխարհակալի դէմք մը աւելի ազնիւ քան զԿիւրոսին։ Իր բարեպաշտ և վեհանձն ոգին, իբրև ջերմ հաւատացող մը Զրադաշտի կրօնական ու քաղաքական բարեկարգութեան ծրագրին, կ'երևէր իր պատերազմելու կերպին մէջ ինչպէս և իր պարտեալ թշնամեաց հետ վարմունքին մէջ։ Ժողովուրդը տեսաւ զայս և «Հայր» կոչեց զինքը, այն ժողովուրդը որ յետոյ բռնապետ անուանեց զԿամբիւս և հարկահան զԴարեհ։

Կիւրոս Բաբելոնի և Լիւդիոյ զօրութեանց հետ զարնուելէ առաջ իմաստութիւնն ունեցաւ իրեն հետ միացնել դրացի արիական իշխանութիւններն ի մէջ որոց էր և Հայաստան։ Այդատեն, ինչպէս ըսինք, Հայաստան զգեցած էր արիական բնաւորութիւն։ Հայերը հնդեւրոպական մեծ հոսանքին մէկ ճիւղը կը կազմէին որ փոքր Ասիոյ արեւմտեան կողմերը նախապատմական պտոյտ մ'ըրած ըլլալէ յետոյ՝ դարձեալ դէպ Արեւելք թաւալած ու Արարատի տիրած էին։ Հաւանական չէ որ այս տիրապետութիւնը խաղաղ գործողութեամբ, գաղթային ողողումի ուժով կատարուած ըլլայ։ Պէտք է որ Հայք զա-

նազան ճակատամարտներու մէջ յաղթած ըլլան Արարատի որ այն ատեններ տակաւին կարեւոր զօրութիւն մը կը ներկայացնէր անշուշտ։ Թէ «Հայկ» անունով իշխան մը եղած ըլլայ Արարատի աշխարհակալութիւնն ի գլուխ հանողը՝ բաւական ստոյգ կ'երեւի, զի «Հայ» և «Հայաստան»ի պէս ցեղային անուանակոչութիւններն չեն կրնար ծագում առնել առասպելներէ, այլ պատմական ճշմարիտ իրողութիւններէ։ Կիրաքարներու եւ Կիւրոսներու նման հնտեւրոպական մ'էր Հայկ որով սկսած է մեր պատմութիւն ոչ հնագոյն, որպէս կ'ենթադրէ Խորենացին, այլ երկրորդ շրջանը։

Այս շրջանին մէջ Հայաստանի դրացիներն էին Մարք՝ հիւսիսային արեւելեան կողմէն, իսկ արեւելեան հարաւային կողմէն Մանտա, Պարսկաստան և Եղամ։ Մանտա կամ հարաւային Մարք որ վերի փոքր Մարաց հետ չփոթուած էր մինչեւ վերջերս՝ շնորհիւ յոյն պատմչաց բանասիրական մէկ սխալումին, էր հզօրագոյնը այդ հնտեւրոպական տէրութիւններուն։ Երբ Մանտայի միապետը կրօվի անձնաւորութիւն մ'ըլլար, Հայաստանի, Մարաց, Պարսկաստանի ու Եղամի թագաւորները անոր հարկատու կը դառնային, իսկ հակառակ պարագային՝ անկախ կը ըլլային։ Կ'երեւի թէ Կիաքսար, Մանտայի հզօր միապետը, որ զՆինուէ կործանեց, հարկատու ըրած էր վերը յիշուած արիական իշխանութիւններն։ Երբ Կիւրոս առաւ զՆկրատան ու Մանտայի գահը բարձրացաւ, ուզեց ամուր խարսխի մը վրայ հաստատել արիական տէրութիւններու միութիւնը և տեղի չտալ ապստամբութեանց։

Քսենոփոնէն գիտենք թէ Կիւրոս այցելեց Հայաստան և զինուորական զօրութեան և մանաւանդ արդարասէր ու վեհանձն դիւանագիտութեան մը շնորհիւ շահեցաւ Հայաստանի թագաւորին սիրտն ու բարեկամութիւնը և զՏիգրան Ա թագաւորին երէց որդին, հայկական զօրօք իրեն նիզակակից առած՝ գնաց Բաբելոնի դէմ։ Անկէ ետեւ Հայաստան գոհ էր ընդ պարսկական վեհապետութեամբ և իր դրամական թէ զինուորական նպաստները հաւատարմօրէն կը մատուցանէր։ Միանգամ միայն, Դարեհ Ա ի օրով, Հայաստան ապստամբութեան դրօշ պարզեց երբ ուրիշ քանի մը նահանգներ ալ ապստամբած էին, սակայն Դարեհ, թէև ոչ առանց մեծ դժուարութեան և բազմակրկնակ ճակատամարտներու, վերջապէս յաջողեցաւ վերջ դնել Հայաստանի ընդվզումին և ըրաւ զայն իւր կայսրութեան քսան և երեք նահանգներուն կամ սատրապութեանց եօթներորդը, Արմէնիա անուանակոչութեամբ։ Արմէնիա էր մին այն քանի մը սատրապութեանց որոնք մենաշնորհներ կը վայելէին։ Կ'ենթադրեմ թէ Հայաստանի մենաշնորհն յայնմ կը կայանար գլխաւորապէս որ հայ բնիկ թագաւորական հարստութիւնը շարունակեց թագաւորել, թէև Պարսկաստանէն յղուած սատրապ կամ կառավարիչ մը կը ժողվէր հարկերը եւ կը հսկէր վարչութեան։ Կրտսեր Կիւրոսի արշաւանքին առթիւ Հայաստանի թագաւորը յիշուած է, որմէ կը հետևի թէ Դարեհ չէր ջնջած Մեծն Կիւրոսի օրէն մնացած ազգային գահն Արմէնիոյ։

Աքեմինեան տիրապետութեան երկու հարիւր

տարիներու երկար շրջանին մէջ Հայաստան բաբելից դրախտ մ՚էր, վայելելով արտաքին թըշնամիներէ կատարեալ ապահովութիւն և ներքին բարգաւաճ վիճակ մը միանգամայն։ Մեր ամբողջ պատմութեան մէջ անգամ մ՚եւս չենք գտներ այդպիսի աներկիւղ և բարօրիկ կացութեան այդքան երկար շրջան մը։

Այս արագ յետահայեացը ցոյց կուտայ մեզի Հայաստանի ամենէն հին ու կարեւոր վերակազմութիւնը, եօթներորդ դարուն Ն. Ք., երբ հնդեւրոպական լեզու մը, հայերէնը, հնդեւրոպական կրօնք մը, Զրադաշտի դաւանանքը, և մեղմ ու յաճախ հայրական ոգւով իշխանութիւն մը հոն կը հաստատուին և մեր ազգը կ՚ընդունի իր ինքնութեան անջնջելի դրոշմը, իր մտային, բարոյական եւ ֆիզիգական կազմին հայկազանութիւնը։

Ո՞րն է երկրորդը մեր ազգին կենսական փորձառութիւններուն։ Այս մասին կրնայ վէճ յարուցուիլ։ Պէ՞տք է որ կանխ առնեմ Արտաշէսի առաջնորդութեամբ գործուած այն յեղափոխութեան վրայ որով Հայաստան թօթափեց Սելեւկեանց լուծը եւ հայկական միապետութիւնը նորէն հաստատուեցաւ այն ատեն երբ Մեծն Անտիոքոս յաղթուեցաւ Հռովմայեցիներէն 190 ին Ն. Ք.։ Եւ միթէ կրնա՞մ անցնիլ այն ժամանակամիջոցին վրայէն զոր կը ճանչնանք իբրև Մեծն Տիգրանի փառաց շրջանը, առաջին դարուն Ն. Ք., երբ հզօրագոյնը հայ թագաւորաց կը տիրապետէ վերին Միջագետքի, Ասորեստանի, Սոփոնէի (Փոքր Հայք), Ատրոպատէնէ կոչուած մարական իշխանութեան, Սիւրիոյ,

Կիլիկիոյ և Փիւնիկէի, կը հիմնէ կարճատև սակայն ընդարձակածաւալ հայկական կայսրութիւն մը որ կը սպառնայ Պարթեւականին յաջորդել եւ յիրաւի իր դրամոց վրայ կը դրոշմէ Տիգրան «Արքայից Արքայ» տիտղոսը զոր Պարթեւաց միապետներն միայն կը գործածէին ցայնվայր։ Չեմ կրնար ասիկա ազգային մեծ փորձառու-թիւններու կարգը դասել, զի կորովի եւ ուշիմ միապետի մը գործն է այն որ գիտցած է վայր-կենին ընծայած պատեհութիւններէն օգտուելով իր իշխանութեան սահմաններուն ահագին ըն-դարձակութիւն մը տալ. սակայն այս աշխար-հակալութիւնը ազգին վրայ մնայուն եւ փոխա-կերպիչ ազդեցութիւն մը չի թողուր։

Մեծագոյն փորձառութիւններն անոնք են որք ազգային ոգին ու բնաւորութիւնը կը կազ-մեն, և այս պատճառով պէտք է ըսեմ թէ մեր ազգին երկրորդ կենսական փորձառութիւնը Տրդատ Թագաւորին դարձն է, վասնզի ամբողջ ազգը այն ատեն նոր կրօնք մը կ'որդեգրէ, եւ Հայաստան կ'ըլլայ քրիստոնեայ պետութիւն մը։ Ասոր ազդեցութիւնն ահագին էր Հայաստանի ճակատագրին վրայ։ Կրօնական եւ բարոյական գաղափարներու նոր ու մաքրագոյն հոսանք մ'է որ կ'ոռոգէ հայկական հոգին եւ իմացական մշակութեան գործիներ ստեղծել կը ստիպէ ազգին առաջնորդները. հայկական սառերն կը յօրինուին եւ գրականութիւնը կը հիմնուի։ Անդէն Հայաստան բարոյապէս բաժնուած է իր աւիական դրացիներէն եւ խնամեցած Արեւմտից հետ, ու առ յաւէտ պիտի հետամտի Եւրոպական քաղա-քակրթութեան։

Մեր ազգին կենսական փորձառութիւններուն երրորդը Ե դարու ճգնաժամն է, յորում Հայն իր արեամբ կը կնքէ վճիռը թէ ինքը քրիստոնեայ պիտի մնայ, իր հաւատքը պիտի պահէ ամուր և անյողդողդ՝ ի գին ինչ եւ իցէ զոհողութեան։ Աւարայրի դաշտին վրայ Տղմուտ գետին եզերքը տեղի կ'ունենայ փառաւոր ճակատամարտն ուր կ'իյնան Վարդան և 1036 հայրենակիցներ, բայց կը կանգնեն հայ սրտին մէջ դիւցազնական այն մեծ իտէալը թէ „հոգի առաւել է քան զմարմին„ – թէ նիւթականը պէտք է յաւիտեան ստորակարգուի բարոյական շահերուն։ Վարդանանց պատերազմը ամենէն նշանակիչն է մեր պատմութեան վասնզի անիկա ժողովուրդին կռիւն է իտէալի մը համար, կրօնական և բարոյական բարձր կարգերու պահպանման համար, և ոչ թէ երկրաւոր թագաւորի մը անձնական փառքին կամ մեծութեանը, կամ լոկ հողային պահպանութեան կամ ընդարձակման համար։ Այս պատերազմով կը կրթուի հայ հասարակութիւնը տէր ըլլալ իր շահերուն և վարիչն իր ճակատագրին։ Այս փորձառութիւնը ազգային տօներու ամենէն ժողովրդականին ու սիրելիին ծագում տուած է և տասն ու չորս դարերէ ի վեր կը հռչակուի հայ աշխարհին ամեն կողմը տարուէ տարի։

Ո՞րն է չորրորդ մեծագոյն փորձառութիւնը հայ ազգին։ Տղմուտի ճակատամարտէն ի վեր բազում դարեր թաւալած են յընթացս որոց շատ մը խոշոր դէպքեր են տեղի ունեցած։ Մեր ազգը հարիւր անգամ յաղթած է թշնամի բանակներու, իր ազգային թագաւորութիւնը երկու

անգամ վերականգնած և իշխանութեան գահուն
վրայ Աշոտներ ու Մեծ Լեւոններ ողջունած, հո-
յակապ Անի մը ու բարգաւաճ Սիսուան մը ստեղ-
ծած է, և սակայն ասոնց ամենուն վրայէն կ՚անց-
նիմ ու կու գամ աւելի կենսական նշանակու-
թիւն ունեցող դէպքի մը. ո՞րն է այն. —1894–96ի
կոտորածն է այն, կամ այլով բանիւ, հայկա-
կան ներկայ ճգնաժամը։ Բացատրեմ։

## ԳԼՈՒԽ Բ.

## ՆԵՐԿԱՅ ՀԱՅ ՃԳՆԱԺԱՄԻՆ ԾԱԳՈՒՄԸ.

Կոտորածը չէ ներկայ ճգնաժամին ամբողջը,
ինչպէս Տղմուտի ճակատամարտը չէր Ե դարու
ճգնաժամին միակ տռամը։ Կոտորածը ամբողջ
ժամանակաշրջանի մը կեդրոնական դէպքն է։
Պատմութեան այդ կեդրոնական կէտէն վեր ու
վար դիտե՛նք դէպքերու թաւալումը՝ ճշդիւ
ըմբռնելու համար ներկայ ճգնաժամին ծագման
պայմաններն և անոր գերագոյն կարևորութիւնը։

Օսմանեան կայսրութեան մէջ ահագին ու
զարմանալի փոփոխութեան մը հանդիսատես
եղան Տաճկահայք ԺԹ դարուն։ Եւրոպական տէ-
րութիւնք որք առաջ Օսմանցիին զօրութենէն կը
վախնային, հիմա սկսած էին խիթալ անոր տը-
կարութենէն որ կը սպառնար խանգարել զօրու-
թեանց հաւասարակշռութիւնը, և ի պաշտպանու-
թիւն իւր կուգային պատերազմիլ անոր պատե-

րազմները անոնք որ առաջ կը պատերազմէին իրեն դէմ։ Այսպէս պաշտպանեցին զինքը իր Եգիպտոսի հզօր վասալին՝ Մէհմէտ Ալիի՝ յանդուգն ոտնձգութիւններէն և ապա Ղրիմի պատերազմով՝ Ռուսիոյ դէմ։ Օսմանցւոց երբեմնի ահեղ զօրութիւնը ստիպուած էր այժմ քրիստոնեայ Եւրոպիոյ թեւարկութեան ապաստանիլ և անոր խրատներն, գէթ թղթի վրայ, ընդունիլ։ Բարձրագոյն քաղաքակրթութեան մը առջև ակամայ կը խոնարհէր հպարտ Օսմանցին բայց չէր ուզեր և ոչ կրնար ընդգրկել ընկերային ու քաղաքական այն նոր կարգերն որոց շնորհիւ Եւրոպա այնքան զօրացած էր։ Մահմուտ Բ, իմաստուն վեհապետ, յաջողած էր միայն զինուորական կազմակերպութիւնը եւրոպականացնել՝ վերջ տալով եէնիչէրիական դրութեան. սակայն անոր յաջորդներն, Մէճիտ և Ապտիւլ-Ազիզ, չ կրցան ըմբռնել թէ Եւրոպիոյ նախանձելի վիճակը արտաւրոյթն էր զարգացման շատ մը խորընթաց, անչօշափելի հոսանքներու։ Այսու ամենայնիւ դժուար էր Թուրքին ենթադրել թէ իրեն համար արիւն թափող տէրութիւններն չար խրատկուտային իրեն երբ կ՚ուզէին զինքն համոզել թէ ներքին բարեկարգութեանց կարօտ էր կայսրութիւնը իր ապահովութեանն համար։ Ցունաստան, Մոլտավեա, Վալաքեա արդէն թօթափած էին օսմանեան լուծը և ուրիշ նահանգներ ևս կրնային անկախութեան ձգտիլ, պէտք էր ուրեմն գոհ ընել ժողովուրդները բարեկարգութեանց գործադրութեամբ։ Բարեկարգութեանց պէտքն զգացող կուսակցութիւն մը, ի գլուխ որոց Րէշիտ փաշա, մանաւորապէս ընդ ազդե-

ցութեամբ անգլիական դեսպան Քէննինկի, երեւան ելաւ և մինչև անգամ կայսերական հրովարտակներով կրօնական ազատութեան և հաւասարութեան սկզբունքներն հռչակուեցան: Այս ամենը հեռի էին օսմանեան վերածնութիւն մը նախաշաւղելէ, սակայն և այնպէս հարստահարութիւնք զգալի չափով մը մեղմացան քաղաքներուն մէջ և նիւթական բարգաւաճումի շրջան մը սկսաւ քրիստոնեայ հպատակաց համար:

Տաճկահայք լիովին բաժանորդ էին այս բաղդատական բարեշրջման: Կառավարութեան բարձր թէ խոնարհ պաշտօններուն մէջ բազմաթիւ Հայեր կային: Մեր երիտասարդներն, ի խնդիր բարձրագոյն դաստիարակութեան և ազատական արուեստներու, կը դիմէին Եւրոպայի և Ամերիկայի համալսարաններն: Արևմտեան լեզուաց եւ գրականութեան ծանօթութիւնը կուգար նոր լոյս սփռել արթնցած իմացականութիւններու վրայ: Մտաւորական վերանորոգութեան շրջանը որ հեռուէն արշալուսած էր Մխիթարով, աւելի լայնագիրկ և հեռահաս ձեռնարկներու, մանաւորապէս կրթասիրական ընկերակցութիւններու ջանից շնորհիւ, կը խոստանար ընդհանուր իմացական վերածնութիւն մը Հայաստանի համար: Այս կերպով Հայք տնտեսական բարգաւաճման միացնել կը ճգնէին մտաւորական զարգացում մը և յառաջդիմութեան այս կրկին գծերուն վրայէն յաջողապէս ընթանալու աններկբայելի ընդունակութիւն մը ի հանդէս կը բերէին: Հայկական այս ճիգերը լոկ կրթական էին, Թուրքը քաղաքական կամ հակօսմանեան միտումներ չէր ընծայեր Հայերուն, զի մայրաքաղաքին վարժա-

պետններուն և երեսփոխաններուն հայրենասիրութիւնը լոկ բանաստեղծական էր։ Կառավարութիւնն ալ իր հայ հպատակաց նկատմամբ թշնամական քաղաքականութիւն մը չունէր, և գիւղաբնակ հայութեան կրած հարստահարութիւններն զեղծ վարչութեան արդիւնք էին լոկ։

Պէտք է նաև նկատել թէ այս բարեգուշակ եղանակաւորութիւնք յառաջ եկած էին ոչ այնքան քրիստոնեայ հպատակաց նախաձեռնակ ջանքերովն որքան Եւրոպական տէրութեանց թափած արեան ու ճիգերուն ազդեցութեամբ։ 1860ին Սուրիոյ կոտորածին առթիւ Եւրոպիոյ զինեալ միջամտութենէն և Լիբանանու կէս-ինքնօրէն վիճակի մէջ դրուելէն քիչ վերջն է որ Բ. Դուռը կը ճանչնար ու կը հաստատէր Հայոց Ազգային Սահմանադրութիւնը։ Շատ բնական էր ուրեմն որ Տաճկահայք տածէին այն յոյսը թէ եւրոպական ազդեցութեան շարունակումովը Սուլթաններուն վրայ՝ պիտի կրնային տակաւելի ընդհանրական ու զգալի մեղմացում մը հարստահարութեանց ու աւելի մեծ ազատութիւններ ձեռք բերել։

Այս կերպով Օսմանեան կայսրութեան մէջ յառաջդիմական հոսանքներ յառաջ եկած էին եւրոպական ազդեցութեան շնորհիւ։ Մինչ տիրապետող ցեղն դժկամակօրէն կը խլրտէր դէպի առաջ, տիրապետեալ ցեղերն եւրոպական քաղաքակրթութեան տարրերը իւրացնել կը նկրտէին յարաճուն խանդավառութեամբ։ Եթէ իրաց այս ընթացքը բաւական երկար շարունակուէր, հայ և միւս քրիստոնեայ ցեղերն պիտի դառնային երկրին տնտեսական և իմացական գերակշիռ ոյ-

ժերն և Օսմանցիք տակաւ պիտի իյնային անոնց ազդեցութեան ներքև ու օսմանեան կայսրութիւնը թերևս պիտի վերանորոգուէր ներքին ոյժերու զարգացումովը։

Սակայն իրերն իրենց բնական ընթացքին չը թողուեցան։ Մեծ պետութեանց մին այս խոստմնալից հոլովման ընթացքը իր քաղաքական միտումներուն աննպաստ համարեցաւ։ Ռուսիան էր այդ պետութիւնը։ Սա կը նկրտէր ամեն հնարաւոր միջոցներով տկարացնել Թուրքը, անոր կայսրութիւնն անդամատել և իրեն իւրացնել առիւծի բաժինը։ Գլխու որպէս անո՛ր թելադրութեամբն է որ քրիստոնեայ ցեղերն իրենց ուժերու նորածիլ ու դիւրաբեկ վիճակին մէջ մի զմիոյ կնի խաղաղ զարգացման շաւղէն խոտորելով կ'ապստամբին Դրան դէմ ու, որպէս զի սպառսպուռ չջախջախուին, կարօտ կ'ըլլան օտարի պաշտպանութեան։ Ռուսիա միշտ յօժար կ'երևէր անոնց օգնութեան հասնիլ։ Ինքն էր Արևելքի քրիստոնեաներուն տիտղոսաւոր ախոյեանը. իրեն մասնաւոր կոչումն էր, որպէս թէ, պաշտպանել մահմետական լուծին ներքև հեծող ցեղերն։ Քրիստոնէական եղբայրակցութեան մը զգացումներէն ներշնչուած պաշտպանութիւն մը չէր այս, այլ աշխահակալի քաղաքականութեան գեղեցիկ պատրուակ մը։ Պատմագէտ Գրիսի դիտել տուած է զայս շատոնց՝ մատնանիշ ընելով Ռուսիոյ մեթոտին նմանութիւնը, այս նկատմամբ, հին Հռովմի գործելակերպին։ « Հռովմի ծերակոյտը..» կ'ըսէ Գրիսի, « ամեն պատերազմի մէջ հոգ տարաւ իբրև պաշտպան ասպարէզ իջնել։ Այսպէս Հռովմ պաշտպանեց զե-

դողական և զՅունական քաղաքներն Մակեդոնիոյ դէմ․ զԲիւթանիա և այլ ասիական պետութիւններ Սիւրիոյ Թագաւորաց դէմ․ զՆումիդիա Քարկեդոնի դէմ… բայց վա՜յ այն ժողովրդին որուն ազատութիւնը զերազօր պաշտպանի մը բարեհաճութեան շարունակումէն կախեալ է։ Հռովմայ պաշտպանութիւնը վայելող ամեն պետութիւն վերջապէս անոր լուծին ենթարկուեցաւ։ Նմանապէս և Ռուսիա պաշտպան եղած է Բոլոնիոյ, ինչպէս նաև Վրաստանի, Իմէրէթի, Մինկրէլիոյ, Չէրքէզ և կովկասեան ցեղերու։ Նախ պաշտպաններ ու ապա կուլ տուեր է ամենքն ալ։»

Գրիսի իբր յիսուն տարի առաջ ըրած է այս դիտողութիւնը։ Ռուսիա իր բեղնաւոր մեթոտը անկէ իվեր ալ շարունակ գործածեր է։ Պուլկարական շարժումը ռուսական քաջալերութեան և հաշիւի արդիւնք էր։ Լոկ ազատ Պուլկարիա մը ստեղծած ըլլալու մարդասէր նպատակով չէր որ Ռուսիա պատերազմեցաւ Թուրքիոյ հետ եւ ամեն տասնուհինգ Պուլկարի ազատութեան համար մէկ Ռուս զոհ տուաւ։ Հաշիւը պարզ էր․ ռուսական արեան գնով ազատուած Պուլկարիան պիտի ըլլար անուանապէս միայն Պուլկարաց համար և պիտի ծառայէր դիւրութիւն տալու Արջին որ կ՚ուզէր այն կողմէն Կոստանդնուպոլիսի վրայ իջեցնել իր թաթերը։ Ո՛րքան դառն եղաւ Ցարութեան յուսախաբութիւնը երբ Ստամպուլոֆի օրով պուլկար իշխանապետութիւնը ետ քաշուեցաւ մոսկովեան խեղդիչ գիրկընդխառնումէն։ Ռուս կառավարութիւնը չուշացաւ իր զօրավարները քաշել պուլկար բանակէն՝ թող-

լով զայն իր բնիկ անփորձ ռազմագէտներուն, չափուիլ Սերպիոյ հետ։ Այլերախտ Պուլկարիա պիտի ընկճէր, մեղայի գար ու Զարին գիրկն իյնար։ Բայց հաշիւներն հօս ալ սխալ ելան․ Պուլկարիա յաղթող հանդիսացաւ։ Երկու տարիէ իվեր Մակեդոնիայ պուլկարներն կատաղի կռիւ մը կը մղեն Թուրք կառավարութեան դէմ եւ սակայն Ռուսը, Պուլկարիոյ ընթացքէն դառնացած, ոչ ինքը կ'օգնէ անոնց և ոչ թող կուտայ որ Պուլկարիա պաշտպան կանգնի իր հարստահարեալ հայրենակիցներուն։

Ռուսական քաղաքականութեան այս կարի հետաքրքրական և բնորոշ հանգամանքը աչքի առջև ունենալով՝ գանք հայկական ճգնաժամին ծագումը հետախուզելու։

Թէպէտ չունիմ ապացոյց, բանւոր կը համարիմ սակայն ենթադրել թէ յաւարտ 1877 ի պատերազմին ռուսն էր որ Ներսէս Պատրիարքի ականջին շշնջել տուաւ գաղափարը Այ—Սթեֆանօ երթալ և յաղթական տէրութեան պաշտպանութիւնը խնդրել Հայոց համար։ Ռուսը որ Հայաստանի մէկ մասը իւրացուցած էր Ներսէս Աշտարակեցիի ձեռնտուութեամբ, կ'ուզէր Ներսէս Վարժապետեանի գործակցութեամբն ալ ուրիշ Հայկական գաւառներ իր պաշտպանութեան ներքեւ առնելով իր լուծին համար պատրաստել։ Ինծի վերջին աստիճան անհաւանական կը թուի որ Ներսէս այդ յանդուգն քայլն առած ըլլայ առանց Ռուսական թելադրութեան։ Զի՛արդ և իցէ, Պատրիարքը սրտի խորին յոյզերով անշուշտ Այ--Սթեֆանօյի ճամբան բռնեց, թէպէտ չէր կրնար գուշակել ահագին համեմատութիւններն զոր

պիտի առնէր Հայկական խնդիրն և թէ Հայք պիտի ստիպուէին երկար ու ամենադժուարին խաղի մը մասնակցիլ Թուրք, Ռուս, Անգլիացի և այլ վիթխարի զօրութեանց հետ, և նուազ եւս կրնար մտքէն անցունել թէ այս պայքարի ընթացքին մէջ պիտի գար Արիւնի Շրջան մը երբ անէացումը պիտի սպառնար իր ժողովուրդին ազգային ու մինչև իսկ նիւթական գոյութեանը։ Հայ պատմութեան ամենակարևոր մէկ էջն է որ կը պակսի մեզի այս կէտին վրայ, թէ Ներսէս ինչպէս և որքան վարանումէ յետոյ եկաւ որպէս թէ նետել իր ազգը, ջրոց յուզման պահուն, Պրովատիկէի աւազանը։ Գնաց ի ռուսական բանակն և դաշնագրական խոստում ստացաւ թէ Հայկական Գաւառներն Թուրք և Չէրքէզ ցեղերուն դէմ պիտի պաշտպանուէին։

Ներսէսի յաջորդ դիւանագիտական փորձն աւելի դժուար էր։ Անիկա կը փափաքէր որ Հայաստանի պաշտպանութիւնը ռուսական մենաշնորհ մը ըլլալու փոխանակ՝ Եւրոպիոյ մեծ տէրութիւններուն հաւաքական հոգածութեան առարկայ լինէր։ Ուստի կ'որոշէ պատուիրակութեամբ մը դիմել Պէռլին ուր Այ-Սթէֆանօյի դաշնագիրը, Անգլիոյ նախաձեռնութեամբ, կարևոր փոփոխութիւններ պիտի կրէր։ Այս դիմումով ձեռք բերուեցաւ, ըստ երևութին, նոր Դաշնագրին 61րդ Յօդուածը, որ նախորդին պէս երկրայական արժէք մ'ունէր և զոր Վեհաժողովը պիտի մտցնէր հոն եթէ հայ պատուիրակութիւն մը պետութեանց դիմած իսկ չըլլար։ Աւելի ուղիղ կ'ըլլայ ընդունիլ թէ պատուիրակութիւնը ապարդիւն եղաւ։ Սակայն Ներսէս 61րդ

Յօդուածը յաջողութիւն մը համարեցաւ։ Այն ատեն այնպէս կը թուէր Հայերուն թէ իրենց վերաբերութեամբ դաշնագրական յօդուածի մը մեծ տէրութեանց կողմէն ստորագրումը ահագին յաղթութիւն մ'էր. հազիւ նուազ կարեւոր քան զինուց յաղթութիւն մը։

Շատ սպասել պէտք չեղաւ համոզուելու համար թէ դաշնագրական յօդուած մը մեռեալ տառ է լոկ երբ անոր գործադրութիւնը երաշխաւորեալ չէ զօրութեամբ։ Վեց տէրութիւններ հազիւ երբեք կրնան համաձայնիլ որեւիցէ խնդրոյ վրայ. զայս գիտէր Համիտ։ Մենք ալ առակէ մը գիտէինք թէ եօթը տղոց մայրը գայլին կեր կ'ըլլայ։ Մեր պարագային մէջ իրօք Անգլիա՛ էր որ Կիպրոսեան դաշնագրով կը ստանձնէր Թուրքիոյ Ասիական գաւառներուն մէջ բարեկարգութիւններ իրագործելու պարտաւորութիւնը Թուրք կառավարութեան հետ ձեռն ի ձեռն։ Սակայն Անգլիա՝ կէս դարու տխուր փորձառութենէն յետոյ՝ անկեղծօրէն կը հաւատա՞ր անոր կարելիութեանը։ Քէննինկի ազդեցիկ դիրքը այլ եւս կարելի՞ էր ոեւէ դեսպանի համար. եւ ո՞չ ապաքէն Քէննինկ ինքն վրիպած էր ու յուսահատած։

Ուրեմն Հայոց յոյսերը հաստատուն խարիսխ մը չունէին. ընդհակառակն՝ վախի շատ պատճառ կար։ Երբ Ներսէս Ռուսիոյ ձեռքը դրաւ Հայկական Խնդիր մը իբրև աշխարհակալութեան նոր պատրուակ մը, պարտեալն Համիտ դառն անակնկալի մը առջև գտաւ ինքզինք և ահագին էր իր սրտմտութիւնը այն ազգին դէմ որ իր քրիստոնեայ հպատակներուն էն հաւատարիմն էր համնչցուած մինչեւ ցայնվայր։ Ու երբ քանի մը

շարաթ յետոյ Պատրիարքը այդ պատրուակը Ռուսի ձեռքէն առնելով անոր ոսոխին, Անգլիոյ ձեռքը դրաւ, Ռուսը սրտմտեցաւ Հայկական Խնդիր կոչուած գործիքին հակառուսական կիրառութիւններ գուշակելով։ Ուրեմն Յօդուածը յոռեգոյն էր քան անօգուտ, զի մէկ սնօգուտ յօդուածի համար երկու ահեղ թշնամիներ շահած էինք — Թուրք և ռուս կառավարութիւններն։

Ճգնաժամն սկսած էր։

## ԳԼՈՒԽ Գ.

## ՀԱԼԱԾԱՆՔ ԵՒ ԸՆԴՀԱՆՈՒՐ ՋԱՐԴ

Համիտ գիտէր թէ Պէռլինեան դաշնագրի հայկական յօդուածը գործնական արժէք մը չունէր բայց Հայկական Խնդիր մը երեւան ելած էր դիւանագիտական ասպարէզը եւ ընդունակ էր իբրև գործիք ծառայելու ոմանց։ Այդ դաշնագրական յօդուածի առթիւ Հայերը երեւան հանած էին տրամադրութիւններ որոնք յանչափս դժպհի էին Համիտի։ Երէկուան ստրուկները ելած էին բարեկարգութիւն, եւրոպական պաշտպանութիւն, ինքնօրինութիւն անգամ պահանջելու։ Ուրեմն եթէ յօդուածը չըլլար իսկ, հայկական վտանգը կար եւ պէտք էր անոր առջեւն առնել ամեն հնարիւք։ Ցայսմ իրեն աջակից ունէր Համիտ զռուս կառավարութիւնը եւ կը յուսար թէ Անգլիոյ կողմէն ըլլալիք թոյլ հայասիրական

կամէութիւններն հեշտիւ պիտի կրնար ի դերեւ հանել։ Զգուշաւոր քայլերով սկսաւ իր հակահայ արշաւանքը։ Նախ Սահմանադրութիւնը ջնջեց և պատրիարքական իրաւասութիւններն սեղմեց։ Գիտնալով թէ Հայոց ազատասիրական տրամադրութիւններն արդիւնք էին կրթութեան, Հայոց ազգային դաստիարակութեան միջոցներն ըսկսաւ կազմալուծել — դպրոցասէր ընկերակցութիւններու, պատմական դասագրքերու, ազգային երգարաններու եւ անախորժ բառերու ջարդ մը կազմակերպեց։ Այս նոր քաղաքականութեան յետահայեաց գործադրութեան զոհ գնացին կարգ մը հրատարակութիւններ որոնք արտօնուած էին Թուրք կառավարութեան կողմէն եւ հեղինակներն աքսորուեցան կամ ստիպուեցան ապաստանիլ արտասահման։

Երբ 1880 ին Եգիպտոսի անգլիական գրաւումը տեղի ունենալով Մեծն Բրիտանիա Թուրքիոյ ասիական գաւառաց բարեկարգութեան խնդիրն այլ ևս շատ չյուզելու նոր պատճառ մ'ալ ունեցաւ, Սուլթանն աւելի զերծ զգաց ինքզինք անգլիական ճնշումէ և սկսաւ մեծագոյն համարձակութեամբ յառաջ մղել իր հակահայ քաղաքականութիւնը։ Իրեն նպաստաւոր էր նաեւ, աւելի յետոյ, Ֆռանսայի նիզակակցութիւնը Ռուսիոյ հետ որով մեզի նպաստաւոր ազդեցութիւն մ'ևս կը չեզոքանար։ Միւս կողմէն Գերմանիոյ երիտասարդ կայսրը, գերման գաղթականութիւն և շահեր Թուրքիոյ մէջ ստեղծելու հետամուտ, կը շողոմէր զՀամիտ և այդ ալ կուգար աւելնալ նժարին հակահայ կողմը։ Ամեն զօրութիւն կը թուէր Սուլթանին թեր ելլել, իսկ մեզի հակա-

ռակող միջազգային պարագաները կը բազմապատկուէին ։

Միջազգային այս ու այսօրինակ պարագաներ հետզհետէ Համիտի թոյլ տուին վարել պետութեան ներքին գործերը Եւրոպական զսպիչ ազդեցութենէ այնպիսի անկախութեամբ մը զոր իր անմիջական նախորդներն երբեք չէին ունեցած ։ Նոյն իսկ իր մահմետական հայրենակիցներուն չէր խնայեր իր հարուածները, և մերթ ընդ մերթ իր բռնապետական մանգաղը ժուռ ածելով կը հնձէր այն թուրք գլուխները որոնք սահմանադրական կամ ազատական ըլլալու կասկած ներշնչած էին ։ Բանի՛ որ ազատականութեան ախտը Թուրքաց այսինչ դասակարգին մէջ միայն տարածուիլ կը սպառնար, Համիտ կը նկրտէր ախտաւոր գլուխները մէջտեղէն վերցնելով՝ համաճարակին առջեւն առնել, իսկ Հայոց համար այդպիսի մաքրողական մը բաւական չհամարելով՝ աւելի լայնագիրկ միջոցներու հարկ կը տեսնէր ։ Սակայն զգոյշ էր ու շրջահայեաց․ առանց պատրուակի չէր ուզեր նախճիր գործել և կը սիրէր մութի ու լռութեան մէջ շարժիլ որքան որ հընար էր, հանգոյն այն գազանին որ յուշիկ կը մօտենայ իր որսին կամ կը հսկէ ի ծածուկ եւ երբ պատեհ վայրկեանն հասնի, կատաղաբար կը խոյանայ ու կը փառատէ ։

Հարստահարութեանց անզրաւ շարքին մէջ տեղի կ'ունենային դէպքեր ալ որոնք մասնաւորապէս նշանակիչ էին եւ յեղաշրջման նոր փուլ մը կը բանային ։ Վարդենիսցի գիւղացիներէ կազմուած հարսնեւորներու խումբ մը ճամբան յարձակում կրեց Քրդերէ որոնք կ'ուզէին

հարան առեւանգել։ Հայ երիտասարդներն ինքնապաշտպանութեան կռուին մէջ սպաննեցին երկու կամ երեքը Քրդերէն։ Ասոր վրայ բազմաթիւ Վարդենիսցիներ ձերբակալուելով բանտ նետուեցան ի Մուշ։ Կառավարութիւնը կը նշմարէր թէ նորահաս հայ սերնդին մէջ ինքնապաշտպանութեան ոգին կ'աճէր։ Այդ ոգին ճմլել կը փորձէր յախուռն բռնատիրութեան եւ անգթութեան միջոցներով։ Քրդերուն մերօրեայ զէնք եւ նոր համարձակութիւն տալու համար կազմակերպեց քրդային Համիտիյէ հեծելագնդերը եւ այսպէս ծպտեալ բարբարոսութեան արշաւիրքներուն մատնեց ամբողջ գաւառներ։

Կորովի եւ բանիմաց հայ գիւղապետ մը, Օհան անուն, որ օր մը հեծեալ կ'երթար Մուշ քուրդ Մուսա Պէկի խժդժութեանց դէմ բողոքելու, ճամբան պաշարուեցաւ այդ քրդէն, գիւղի մը մէջ, ուր վառարանի խարոյկին վրայ այրելով սպաննեցին զինքը։ Օհան մին է այն յաւերժ յիշելի ողջակէզներէն որոնք զոհուած են ազգին համար։ Օհան օրինական միջոցներով արդարութիւն ստանալ փորձեց ու դառնաղէտ նահատակութեան մը մատնուեցաւ։ Սակայն այն խարոյկը որուն վրայ այրեցաւ Օհան շատ հայ սրտերու մէջ վառեց բարկութեան անշէջ հուրը։

Երբ անգլիական դեսպանը Սուլթան Համիտի գանգատեցաւ Մուսա պէկի այս և ուրիշ ոճիրներն յիշելով, փադիշահը, ջե՛րմ հաւատացեալ, պատասխանեց թէ չէր կրնար այդ զրոյցներու հաւատալ զի Մուսա մահմետական էր եւ անոր վերագրուած արարքները հակառակ էին Ղուրանի օրէնքին'''։ Վերջապէս Պէկը Պոլիս կանչուեցաւ,

Սուլթանէն պատուասիրուելէ յետոյ դատուեցաւ եւ, հակառակ Հայաստանէն յատկապէս եկած քառասուն վկայից փաստերուն, անպարտ արձակուելով առօք փառօք զբօսական պտոյտներ ըրաւ մայրաքաղաքին մէջ։ Ասոր վրայ Հայք եւ Եւրոպա հաւասարապէս համոզուեցան թէ դեսպաններուն աչքին առջեւ տեղի ունեցող այս անամօթ վիժումն արդարութեան՝ լիառատօրէն կ'ապացուցանէր թէ Հայերը Օսմանեան կայսրութեան մէջ օրէնքի պաշտպանութենէն պաշտօնապէս զրկըուած էին։

Այս հրէշային անարդարութիւնը որ Թուրք քաղաքականութեան նոր տրամադրութիւնը կը հրատարակէր աշխարհի, անհունապէս դառնացուց եւ վիրաւորեց Հայութիւնը։ Մուսայի դատաստանը 1889 ի աշունը (Դեկ. 2) աւարտեցաւ, ու 1890 ը եղաւ մասնաւորապէս արձանագրելի թըւական մը ուր Թուրքեւհայ պայքարը ստացաւ իր ծանր հանգամանքը։ Հայաստանի հեռաւոր անկիւնները, հայ գիւղաբնակութեան մէջ կատարուող հնօրեայ հարստահարութիւններն սկսան կարեւոր քաղաքներու մէջ իսկ ի գործ դրուիլ քաղաքական դիտումներով։ Կարինի դէպքը, որ 1890 ին տեղի ունեցաւ, ամենէն նշանաւորն է, եւ ահա թէ ինչպէս այդ եղերերգութիւնը կատարուեցաւ։

Յայտնի է թէ Կարնոյ Հայերը աւելի առնացի եւ համարձակ բնաւորութիւն մ'ունին քան Մշոյ դաշտին ճնշեալ Հայութիւնը։ Խնուսի մէջ Քուրդ եւ Թուրք նորօրինակ եւ հրահանգեալ կանոնաւորութեամբ զբաղած էին Հայ գիւղերը կողոպտելու, ընդ որ Կարնոյ Հայք կարի զայրացած էին։

Սանասարեանի մահուան եւ մարմնոյն ի Տփղիս փոխադրման առթիւ ուզեցին սգոյ ցոյցեր ընել եւ սեւ դրօշներ պարզեցին: Թուրք կառավարութիւնը զայս լաւ առիթ մը համարեցաւ մըտադրեալ խուզարկութիւնը կատարելու եկեղեցւոյն եւ Սանասարեան վարժարանին մէջ: Խուզարկութիւններն կասկածելի բան մը երեւան չհանեցին, զէնք չկար պահուած, որպէս կը կարծէին Թուրքերը: Երկու օր յետոյ, Յունիս 20ին, Հայերու բազմութիւն մը ժողով ըրաւ եկեղեցւոյն բակը, բողոքագիր մը պատրաստելու: Կառավարութիւնը ուզեց ասիկա ապստամբական ցոյց մը համարել եւ ջոկատ մը զօրք ղրկեց Հայերը ցրուելու: Երիտասարդ մը ըսաւ հրամանատարին. ‘‘Մենք հոս խաղաղական ժողով մը ունինք, մեր նպատակն է գրաւոր բողոքել կառավարութեան այն խուզարկութեանց դէմ որք սրբապղծութիւն են, դուք ի՞նչ իրաւամբ կը հրամայէք որ ցրուինք:,, Հրամանատարը քաշեց զերիտասարդն ու զօրաց ձեռքը տուաւ. Հայեր զանիկա ազատեցին և պրծաւ: Ասոր վրայ զօրքը անզէն բազմութեան վրայ կրակ ըրին եւ ջարդը սոսկալի էր: Մինչ այս տեղի կ'ունենար եկեղեցւոյ բակին մէջ, դուրսը, քաղաքին փողոցներուն մէջ եւ տուները նոյնպէս կը սկսէր վայրագ արիւնահեղութիւն մը: Թուրքք քար կոծեցին անգլիական հիւպատոսարանը: Փախստական Հայեր մեծ թուով ապաստան գտան ի պարսկական հիւպատոսարանին ու ամերիկեան միսիոնարաց տուներն: Ժխորը տեւեց չորս ժամ, մինչև մութը կոխեց: Յայնժամ Վալին հրաման հանեց քաղաքին մէջ որ ոչ ոք փողոց ելլէ: Խումբ մը զօրք

գնացին խան մը, եկեղեցւոյն մօտ, ուր Հայեր ապաստանած էին, եւ առաջարկեցին որ դուրս ելլեն՝ ապահովապէս իրենց տուները առաջնորդուելու համար։ Քսանեհինգ հոգիի չափ, վըստահելով այս խոստումին, դուրս ելան, եւ հազիւ քանի մը քայլ հեռացած էին խանէն երբ յանկարծ զօրքը յարձակեցան և սուինի հարուածներով սպաննեցին հինգը եւ վիրաւորեցին միւսները, որք եւ փախչելով մտան նորէն խանը։ Այդ գիշերը փողոցները պահող զինուորները ուր որ Հայ մը առանձին գտան՝ սպաննեցին։ Իբր 400 հաշուեցին հայ վիրաւորեալներու թիւը, եւ 45 Տաճիկներունը։ Յիսունի չափ Հայեր սպաննուեցան այն օրը, բայց օրէ օր մէկ քանի վիրաւորներ ալ կը մեռնէին։

Կարինի այս ջարդը, որ այն ատեն ահագին երեւցաւ, միայն նախաճաշակ մ'էր գալու մեծ կոտորածին։ Փոքր ջարդը սակայն ճիշդ մանրանկար մ'էր մեծին և Հայութիւնը շատ բան կարող էր սորվիլ, մանաւորապէս սա կարեւոր դասը թէ պէտք է Թուրք կառավարութեան եւ զօրաց խոստումներուն չվստահիլ երբեք։ Բիւրաւոր Հայեր ջարդուեցան մեծ ջարդին ատեն այդ սխալը գործելով։

Կարնոյ սարսափելի նախճիրներուն լուրը Կ. Պոլսոյ մէջ ահագին գրգռում յառաջ բերաւ։ Յուլիս 27 ի կիրակի օրն Հայերն ցոյց մ'ըրին Գում-Գափուի մայր եկեղեցւոյն մէջ։ Մէկը կ'ելլէ Պատրիարք Աշըգեանի հարցապնդում մը կ'ուղղէ Էրզրումի դէպքերուն վերաբերութեամբ։ Պատրիարքը կ'առարկէ թէ եկեղեցին յարմար տեղը չէ այդպիսի հարցեր յարուցանելու։

Ցուցարարներն կը նախատեն զՊատրիարքն։ Այս յուզմունքի լուրը կառավարութեան կը հասնի և զօրք կուգան ցրուել ժողովուրդը։ Այս առթիւ ալ ընդհարում մը տեղի կ'ունենայ. երկուստեք սպաննուողներ կ'ըլլան, և 400 Հայեր բանտ կը նետուին։ Ցուցարարներուն ամենէն յանդուգն տարրքն էր երթալ Պատրիարքարանի սրահէն վար առնել Սուլթանին թուղրան ու ոտնակոխ ընել։

Սան-Ստեֆանոյի դաշնագրէն քիչ տարիներ յետոյ երբեր այս վիճակին հասած էին եւ Հայք կը զգային թէ Ներսէսի դիւանագիտական այն քայլով հայ ցեղը անդառնալիօրէն մղուած էր երկար ու դժուար ճամբու մը մէջ որ կրնար յանգիլ ի փրկութիւն կամ ի կորուստ։ Դիւանագիտութեամբ սկսուած գործը տակաւ ճգնաժամի մը ահագին համեմատութիւններն կ'առնէր և չէր երեւիր թէ լոկ դիւանագիտական միջոցներով ի գլուխ պիտի կրնար ելլել։ Սակայն ուրիշ ի՞նչ միջոցներ կային հնարաւորութեան սահմանին մէջ։ Պայքարը հմտագունից առաջնորդութեան կարօտ էր և մեծ գումարներու։ Կովկասի Հայերը որք, Սան-Ստեֆանոյէն շատ առաջ, փորձած էին յեղափոխական բանաստեղծութեան և վէպերու միջոցաւ առնացի տրամադրութիւններ արծարծել Տաճկահայոց մէջ, անտարբեր չը մնացին հալածանքի սաստկացումին առջեւ որուն տակ կը ճմլուէին իրենց արենակիցներն։ Բանիմաց քանի մը անձինք լուրջ կազմակերպութիւն մը ստեղծել մտածեցին և փափաքեցան որ Մշակի Խմբագիր Գրիգոր Արծրունի արտասահման անցնելով արկղակալի պաշտօն վարէր։ Սակայն իրենց

ձեռնարկի նախնական փուլին մէջ իսկ ռուս կառավարութեան կողմէ ամենախիստ ազդարարութիւն և սպառնալիք ընդունելով՝ Արծրունի և իր համախոհներն ձեռնթափ եղան պայքարէն որ, ռուս քաղաքականութեան այնքան վճռական հակառակութեան նշաւակ, չէր խոստանար յաջողութիւն։ Առաջին հակահայ հարուածն էր այս որ կուգար լիառատօրէն ցոյց տալ Ռուսիոյ թշնամական դիրքը հանդէպ հայ դատին եւ ռուսահայոց լաւագոյն եւ բանիմաց դասակարգին յօրինուածական գործակցութենէն կը զրկէր Տաճկահայն։ Անդին կը մնային երկրորդական կովկասահայեր, քիչ ազդեցիկ եւ ոչ բաւական լուրջ որոցմէ Ռուսը կարեւոր արդիւնքներ չէր խիթար եւ զորս կրնար մէկ հարուածով ջախջախել երբ ուզէր, ինչպէս ըրաւ Կուկունեանցի խմբին, կամ աչք գոցել անոնց արարքներուն ցորչափ փրկաւէտ ըլլալէ հեռի՝ կրնային անոնք Տաճկահայոց տագնապն ու վտանգներն աւելցնելու ծառայել։

Ռուս կառավարութեան այս հակահայ արարքները նոր վստահութիւն մը ներշնչեցին Սուլթանին որ այնուհետեւ Անգլիայէն միայն կը կասկածէր։ Անգլիայէ՛ն էր որ տարիներէ ի վեր անհաճոյ ձայներ կը լսէր։ Հո՛ն գոյութիւն առած էր Անգլեւհայկական Ընկերակցութիւն մը Ճէյմս Պրայսի նախագահութեան ներքեւ, եւ հոն կը հրատարակուէր « Հայաստան » անուն թերթ մը ի ջատագովութիւն հայ դատին։ Ասոնք անուղղակի քաջալերութեան աղբիւր մ'եղած էին Հայոց համար։ Բրիտանական Մամուլն էր որ զՀայկական Խնդիրն մերթ ընդ մերթ կը յուզէր եւ

նոյն ինքն Կլատսթոն անձնական նամակով մը հանդերձ հրատարակութեան տուած էր Մուսա Պէկի քոմիթէի խժդժութեանց մէկ տեղեկագիրը։ Թէպէտ Մեծն Բրիտանիա զօրաւոր քայլ մը չէր առած, սակայն թերևս աւելի աղմկալից տռամի մը կը սպասէր շարժելու համար։ Եւ ահա Սասնոյ տռամը։

Սասնոյ քաջերը Մեծ Հայքի մէջ եզական դիրք մ'ունէին և վարժ էին ինքնապաշտպանութեան համար զէնք գործածելու ի հնուց անտի։ Տեսնելով որ իրենց դրացի Քիւրդ ցեղերը, կառավարութենէն դրդուած, նորանոր պահանջներ կ'ընէին և անսովոր բռնութիւններ իրենց վրայ ի գործ դնել կը ժպրհէին, Սասունցիք Քրդաց դէմ ելան 1893 ին, նոյնպէս և 1894 ին, շատ փայլուն յաջողութեամբ։ Ու վերջապէս, հեռուէն եկող թելադրութեան մը անսալով, Թուրք կառավարութենէն իսկ համարձակեցան արդարութիւն պահանջել։ Համիտ հարկ համարեցաւ ջախջախել Սասունը որ իր կարծածէն աւելի ուժով եւ յանդուգն կուգար ի հանդէս, եւ անգութ հարուածը զոր անոր տուաւ արժանի էր Օսմանեան բարբարոսութեան բովանդակ համբաւին։ Ապըստամբներ զսպելու պատրուակաւ ընաջնջումի քաղաքականութիւնը կիրարկեց։ Սասնոյ տռամը Կարինի դէպքին կրկնութիւնն էր, աւելի խոշոր ու մեծադղորդ համեմատութիւններ առած։

Համիտ որ Ներսէսի յաղթած էր դիւանագիտական ասպարէզին վրայ, իր դէմ կը գտնէր հայ ժողովուրդը որ տարուէ տարի աւելի աղմըկալի կերպով ինքնապաշտպանութեան տրամա-

դրութիւն մ՚ ի հանդէս կը բերէր։ Արդեօք ուրիշ քանի՞ տեղեր կային Վարդենիսի ու Սասունի պէս եւ արդեօք դիմադրութեան նորազարթոյց ոգին ո՞րքան արագ կ՚աճէր Հայոց մէջ։ Ասիկա Սուլթանին հանգիստը խռովող խնդիր մ՚էր որ լուծում մը կը պահանջէր անյապաղ։ Պէտք էր հընարել այնպիսի հարուած մը տալ Տաճկահայոց ամբողջութեանը որ հետզհետէ նորանոր Սասուններ երեւան չելլէին նորոգելու Փատիշահին երկիւղները։ Գիտէր սակայն թէ արդէն շատ խոշոր քայլ մ՚էր առած Սասնոյ ջարդովն եւ կը յիշէր թէ Սուլթաններուն հրամանով յանցելումն գործուած նմանօրինակ կոտորածները երբեմն ծանր հետեւանքներ ունեցած էին և եւրոպական միջամտութեան առիթ տուած։

Իրօք Սըր Ֆիլիփ Քըրրի, Անգլիոյ դեսպանը, խիստ լեզու մը գործածած էր Սասնոյ ջարդին առթիւ փատիշահին հետ իր տեսակցութեանց մէջ եւ անանկ կը թուէր թէ բողոքին կրնային յաջորդել աւելի կարեւոր գործողութիւններ։ Մինչ հիւպատոսաց ձեռքով ժամավաճառ քննութիւններ կը կատարուէին Սասունի շուրջը, Համիտ կը հրահանգէր հայկական գաւառաց վալիներն մանաւոր ընթացք մը բռնել Հայոց նկատմամբ։ Ցորչափ բռնաւորին վախը բոլորովին փարատած չէր Անգլիոյ կողմէն որ բաներ մը ընելու երեւոյթն ունէր, վայրկեանը անպատեհ էր նոր խռովութեանց կամ ընդհարումներու համար։ Հարկ էր նախ վճռականօրէն ետ մղել զԱնգլիա իր յաւակնոտ դիրքէն, ինչ որ Համիտ, Ռուսիոյ աջակցութեամբ, քիչ ատենէն յաջողեցաւ ընել։ Մինչ այս դիւանագիտական յաղթութիւնը ապա-

Հովեւու համար ճիգ կը թափէր ասոր, զՀայերն անոյշ յոյսերով կ'օրօրէր անոր։ Կառավարական ամէն կարգի պաշտօնէից կողմէ հրահանգեալ ակնածանք մը կը շռայլուէր Հայերուն ամեն տեղ, որով այն տպաւորութիւնը յառաջ կուգար թէ Թուրքը վճռական սանձահարում մը կրած էր եւ թէ Հայոց պահանջներն գոհացում գըտնելու վրայ էին։ Իրօք քաջալերական չափազանցեալ զրոյցներ ամեն կողմ կը շրջաբերէին այն իմաստով թէ ինքնօրինութիւնը շնորհուած էր եւ միակ վիճեալ կէտը հայկական սահմաններուն աւելի կամ նուազ ընդարձակութեան մասին էր։ Սուլթանը շաբաթներով սնուց Հայոց այս պատրանքը և մերազնեայք, մօտալուտ աղէտներուն գաղափարէն աւելի քան երբէք անկասկած, ուրախ ու հպարտ կ'երգէին ազատութեան ազգային երգեր, նուագներ կը հնչեցնէին, և աներկբայելի յաղթութեան մը նախատօնակը որպէս թէ կը կատարէին ի լուր եւ ի ներկայութեան իսկ Թըրքաց։ Դաւաճանները կը սիրեն բարեկամութեան բարձրահունչ արտայայտութեանց մէջ յանկարծ սպաննել իրենց թշնամիներն։ Կիւաքսար իր Սկիւթացի թշնամեաց պետերն խնճոյքի մէջ գինովցընելով սպաննեց զանոնք։ Յուդա համբուրելով մատնեց զՅիսուս։ Համիտ ալ, Հայոց վրայ խնալէ առաջ, զանոնք պատիր ուրախութեան մը գինովը գինովցուց, անոնց մտքէն հանեց զէնքի և ինքնապաշտպանութեան գաղափարը, և ահա այն ատեն երբ մերազնեայք իրենց դիւանագիտական յաղթութեան վերջնական աւետիսին կը սպասէին երգ ի բերան, առաջին լուրը որ ահաւոր շանթի մը պէս ինկաւ գաւառներուն վրայ, Պոլսոյ՝ եւ

քիչ յետոյ Տրապիզոնի ջարդերուն գոյժն էր, որոնց հուպ ընդ հուպ յաջորդեցին բոթերը այն երկար ու համասփիւռ կոտորածներուն որոց զոհ գնացին հարիւր հազարաւոր Հայեր։

Հայերն ահաբեկելու, անոնց ոյժն ու ինքնապաշտպանութեան ոգին ճմլելու եւ անոնց թիւն զեղչելու գործն էր այս եւ ամեն տեղ միօրինակ յայտագրի մը համաձայն կը կատարուէր։ Նախ Հայ հասարակութեան գլխաւորներէն կը պահանջէին որ, ապացուցած ըլլալու համար թէ իրենց ժողովուրդը ապստամբութիւն չէր մտածեր, զէնքերն յանձնէին կառավարութեան։ Քի՛չ տեղ մերայինք առարկեցին եւ առ հասարակ այս դաւաճան պահանջին համակերպելով ջարդուեցան։ Ամեն ուրեք քաղաքային ու զինուորական պաշտօնեայք, իրենց տրուած բարձրագոյն հրահանգի համեմատ, հոգ տարին մանաւանդ ազդեցիկ և բանիբուն Հայ անհատներն սպաննել, և տրուած պայմանաժամուն մէջ, որ բազում ուրեք 3 կամ 4 ժամ էր և հազիւ ուրեք օր մը կամ աւելի, կողոպտել եւ սպաննել հասարակ մահկանացուներէն ալ որքան որ կրնային։ Կողոպուտը վա՛րձքն էր տեղացի մահմետականներուն որոնք մինչեւ աստիճան մը վտանգ յանձն պիտի առնէին կայսերական հրամանն ի գործ դնելու համար։

Կոտորածոց երկայն շարքին ատեն, որ իբր երկու տարի տեւեց, զոհ գնացողներուն թիւը ոմանք 75,000 և այլք 100,000 հաշուեցին։ Սակայն այդ թիւին վրայ պէտք է աւելցնել նաեւ անոնք որ կրօնափոխութեան, համաճարակ ցաւերու, սովի, ահաբեկութեան եւ գաղթման դժբաղդու-

թեանց զոհ գնացին, այնպէս որ ի վերջ հաշուոյ, սովորաբար ի մէջ բերուող 300,000 թիւը չի կըրնար չափազանցութիւն համարուիլ։

Կոտորածի զոհերուն այս թիւը հաւանօրէն աւելի մեծ է քան Սուլթանին սկզբնական յայտագիրը կը պահանջէր։ Երկու պատճառներ նըպաստեցին Համիտի յաջողութիւնը ակնկալուածէն աւելի մեծ ընելու։ Նախ որ Եւրոպիոյ գոռ ու հզօր կառավարութիւններն եսամոլ անհամաձայնութեան ամօթալի կաշկանդումներէն բռնըւած՝ չզօրեցին մատ մ'իսկ վերցնել ի պաշտպանութիւն անմեղ ժողովրդի մը եւ յանուն արդարութեան։ Լորտ Սալզպուրի բրիտանական Խորհրդարանին մէջ անսովոր դիւանագիտական լեզուով մը յայտարարած էր թէ կործանումը կը սպառնար բռնաւոր Օսմանեան կայսրութեան, բայց այս պղատոնական ցոյց մը մնաց լոկ և երբ Անգլիական դաշնիճը Սուլթանին ստորագրութիւնը բարեկարգութեան ծրագրին տակ ստացուած առեն դիւանագիտական փառաւոր յաղթութիւն մը ձեռք բերած ըլլալու պարծանքովը կը պերճանար, Սուլթանն ու Զարը կը ծիծաղէին իրենց քթերուն տակ, եւ ստորագրութենէն անմիջապէս յետոյ պայթող ջարդերուն ի տես Ռուսիոյ, Գերմանիոյ եւ Ֆռանսայի կառավարութիւններ իրենք զիրենք կը շնորհաւորէին թէ Անգլիա յաղթուած էր Հայերը պաշտպանելու ձեռնարկին մէջ։ Եւրոպիոյ պատմութեան մէջ չկայ աւելի ամօթալի երես մը։ Ազնիւ Ֆռանսացիք միշտ սրտի կսկիծով պիտի յիշեն այս խայտառակութիւնը զոր իրենց արտաքին գործոց նախարարն իրենց վրայ հրաւիրեց՝ Նուաստօրէն արբանակե-

չով Ռուսիոյ։

Կոտորածին սպառնալիքն աւելի ահաւոր ըլ-
լալուն երկրորդ պատճառն ալ այն էր որ հօս ժո-
ղովուրդը յանկարծակիի եկաւ։ Ջարդը վրայ
եկաւ այն ատեն երբ մերազնեայք բնաւ չէին
սպասեր․ ընդհակառակը, ինչպէս արդէն յիշեցի,
յուսով և խնդութեամբ գինով՝ կը սպասէին թէ
վաղը հայկական ինքնօրինութեան արեւը պիտի
ծագէր։ Սուլթանը զանոնք իրենց յոյսերուն գգըլ-
խիչ գագաթէն յանկարծ գահավիժած էր անդուն-
դը և ապշեցուցած։ Այդ պատճառով անոնք չկըր-
ցան իրենց բոլոր ուժովը ինքնապաշտպան ըլլալ։
Բանէ մը չկասկածելով՝ ոչ զէնք պատրաստած էին
և ոչ ինքնապաշտպանութեան միջոցներ կազմա-
կերպած։ Եթէ կանուխէն կասկածած ըլլային,
կրնային այնպիսի կարգադրութիւններ ընել կեդ-
րոնացումի և միջոցներու որ իրենց քիչ զէնքովը
խսկ կարենային փրկել իրենց քաղաքներն։ Յայտ-
նի է թէ Թուրք խաժամուժը կողոպուտի չար-
ժառիթէն կը մղուէր գործի և իր կեանքի ապա-
հովութեանը համար քրդային նախայարձակ գու-
մարտակներ իբրև վահան կը գործածէր ամեն
ուր որ կրնար։ Եթէ Հայերը Թրքաց մէջէն քանի
մը հոգի միայն սպաննէին, Թուրքեր պիտի ըն-
կրկէին եւ ջարդը դադրէր, ինչպէս որ տեղ տեղ
պատահեցաւ ալ։

Այսուամենայնիւ սխալ պիտի ըլլար կոտորա-
ծին ահաւոր համեմատութիւններն ընծայել բո-
լորովին այն պատճառին թէ Հայերը յանկարծակիի
եկան։ Առաջին քանի մը ջարդերուն լուրն առնե-
լէ յետոյ ամեն տեղ մերազնեայք բաւական պատ-
ճառ ունէին կասկածելու թէ կոտորածի հօսանքը

պիտի ներհոլովէր (involve) զիրենք ալ։ Թուրքերը որ այնքան ակնածանօք կը վարուէին իրենց հետ մինչև քիչ օրեր առաջ, ալ բոլորովին սպառնալից դիրք մը առած էին։ Գաւառային իմացականներն ու առաջնորդներն պէտք է գիտնային թէ Թուրքը որ Կ. Պոլսոյ մէջ, դեսպաններուն աչքին առջեւ, Հայերը ջարդելով սկսած էր արշաւանքը, միտք ունէր՝ Եւրոպայէն աներկիւղ և անզուսպ երթալ մինչև ծայրը։ Բնական էր որ հայ հասարակութիւններն ուզէին խոյս տալ կոտորածէն, բայց ի՞նչ էր անոնց ընտրած եղանակը։ Նախ՝ համակերպելով կառավարութեան պահանջին, յանձնել իրենց զէնքերը, երկրորդ՝ փախչիլ և թաքչիլ։ Ասիկա վախկոտ եւ անսիրտ ժողովուրդի կերպն է. ոչխարին կերպը գայլին հանդէպ։ Մեծերը խոհեմութիւն կոչեցին այս գործելակերպը եւ երիտասարդները չափազանց դիւրութեամբ հաւանեցան ստրկային այս ընթացքին։ Առաջնորդները կորովէ և թափանցողութենէ զուրկ գտնուեցան ու չկրցին արագօրէն կազմակերպել դիմադրութիւն մը որ թէ անհատներու կեանքերը թէ ազգային պատիւը պիտի փրկէր. իսկ երիտասարդները, որ երէկ լեռ ու ձոր կը գոռացնէին ազատութեան երգերով, նախաձեռնութեան ոգիէ զուրկ երեւցան, և գէթ անոնցմէ ոմանք չառին իրենց զէնքերն չխուժեցին ոգի ի բռին իրենց թշնամեաց վրայ զորս, ինչպէս ըսի, ահաբեկել եւ ցրուել դիւրին էր տուեալ պայմաններուն մէջ։ Մեր երիտասարդը, որքան ալ քաջ ըլլայ բնութեամբ և Փիզիգապէս հուժկու, դեռ չէ հասած անձնական զարգացումի այն աստիճանին որ, այդպիսի ճգնաժամի

պահուն ամեհի ու դիւցազնական ոգւով ըսէ «Թէպէտև ամե՛նքը փախչին, ե՛ս պիտի կռուիմ։» Անիկա կ՚ուզէ որ մեծերն ըսեն ‘‘Զարկէ՛ք տղա՛ք, „ որպէսզի սիրտ ընէ զարնելու։ Աշխարհ ապշեցաւ տեսնելով որ ինքնիշխանութեան ցանկացող ազգի մը հաստաբազուկ զաւակները կը փախչին ու բիւր բիւրուց ետեւէ կը մորթուին ոչխարի պէս, բացատրութիւններն չափազանց քիչուոր ըլլալով ազգային յատկութիւններն արդարացնելու համար։

Այս մեկնութեան ճշմարտութիւնը անվիճելի ընելու համար կը բաւէ յիշել քանի մը օրինակներ։ Շապին-Գարահիսարի Հայերը վճռական դիրք մը առին ինքնապաշտպանութեան ու բոլորովին զերծ մնացին կոտորածէ։ Այնթապի մէջ դէպքերը նոյն բանը ապացուցին, զի հոն չուկային մէջ յանկարծակիի եկած Հայերը, որք ինքնապաշտպան ըլլալու դիւրութիւն չունէին, ջարդուեցան, իսկ Հայկական թաղին մէջ գրեթէ բնաւ ջարդ չեղաւ՝ շնորհիւ Հայոց զինեալ ինքնապաշտպանութեանը։ Հայկական փակեալ թաղէն դուրս ևս երբ հրոսակը յարձակեցաւ հարուստ Պ. ի տանը վրայ, հայ երիտասարդ մը, հակառակ Պ. ի հրահանգին, կրակ ըրաւ պատուհանէն ու սպաննեց թուրք նշանաւոր հրոսապետը. ասոր վրայ խուժանը փախաւ, և երբ ուրիշ ոեւէ խումբ այն փողոցը մտնելու մօտենար՝ Թուրքերը իրեն կ՚ազդարարէին «այս փողոցէն մի՛ երթաք, կը զարնեն։» Մարաշի մէջ ամենայստակ կերպով երեւցաւ թէ ո՛րն էր փրկաւէտ կերպը. Թուրք պաշտօնէից խոստումներո՞ւն վստահիլ թէ ինքնապաշտպան ըլլալ։ Այդ քաղաքին մեծագոյն

հատուածին մէջ Հայերը հետեւելով կաթողիկոսական տեղապահին ապուշ խրատին՝ Թուրք Կառավարութեան պաշտպանութեանն յանձնուեցան, եւ հետեւապէս բոլորը մորթուեցան։ Քաղաքին միւս հատուածին մէջ, ուր Հայերը նուազ բազմաթիւ էին և Թուրքերը կը հաշուէին հեշտիւ լափել զանոնք, տարբեր բան մը տեղի ունեցաւ։ Հոն տարիներ առաջ Զէյթունէն եկած հաստատուած ընտանիք մը կար. հայրը իր շուրջ ժողովեց հինգ որդիները և Աստուծոյ պաշտպանութիւնը մաղթելէ յետոյ հրամայեց տղոցը առնել իրենց հրացանները ու թաղը պաշտպանել։ Երբ խուժանը մօտեցաւ, հայ տղաքը կրակեցին ու քանի մը մահմետականներ դիտապաստ ինկան։ Արդիւնք — խուժանը փութով նահանջեց և Մարաշի այդ հատուածը զերծ մնաց կոտորածէ։ Այս իրողութիւններն ցոյց կուտան թէ Հայերը ամեն տեղ կարող էին իրենց ունեցած քիչ զէնքովն իսկ արգիլել ջարդերը եթէ կամք ընէին։ Ահա Մարաշի մէջ հարիւրներ կը խողխողուին երկչոտ և անարժան կղերի մը խրատին անսալով, և ուրիշ հարիւրներ կը փրկուին արիասիրտ մարդու մը նախաձեռնութեանը շնորհիւ։

Վերջին աստիճան խրատալից է նաեւ Ակնայ ջարդին պատմութիւնը։ Հոն 1895ին Հայ երեւելիներն գումար մը նուիրեցին հազարապետին և Գայմագամին, որք ջարդը արգիլեցին, թէև քաղաքին Թուրքերու մեծ մասը կոտորածի ջատագով էին։ Քիւրդ գումարտակներ եկան քաղաքին վրայ յարձակելու, սակայն զօրքը ընդ առաջ գընաց և լուրջ ցոյց մ'ընելով յետս մղեց զանոնք։ Երբ ամբողջ տարի մը գրեթէ ամեն տեղ Հայ

արիւնը հոսեցաւ և եւրոպական միջամտութիւն մը չզսպեց Սուլթանը, Ակնայ Թուրքերուն ջարդասէր կուսակցութիւնը յաղթանակեց հազարապետին չկամէութեան եւ սարքեց կոտորած մը որ ամենէն սոսկալին եղաւ։ Նախորդ տարին եթէ ջարդը ըլլար, քանի մը ժամ պիտի տեւէր եւ զոհերու թիւը հաւանօրէն քանի մը տասնեակը չանցնէր. բայց 1896ին ջարդը ուզող կուսակցութիւնը ո՛չ Եւրոպայէն վախ ունէր և ոչ հակառակ կուսակցութիւն մը իրեն դէմ որ չափ դընէր արիւնհեղութեան. ուստի երեքշաբթի առաւօտէն մինչև ուրբաթ սուրն ու հուրը շարունակեցին լափել հայութիւնը։ Հազարապետը որ վարի թաղի Հայոց ընծաներով տունը լեցուցած էր և երեւելի միրազնեայց ամեն վստահութիւն երդուած, աներևոյթ եղաւ պայթման սկիզբէն։ Իսկ հարիւրապետը որ վերի թաղի Հայոց պաշտպանութիւնը ստանձնած էր և հարիւրաւոր կտրիճներ անոր հրաւէրին համեմատ գնացին նոսեւէն իրր թէ կառավարութեան պալատը առաջնորդուելու յապահովութիւն, երբ քաղաքին ծածկուած և մթին մէկ փողոցէն վար կ՚իջնէին, յանկարծ զօրքերէն յարձակում կրեցին ու ամենն ալ սպաննուեցան։ Զոհերուն թիւը 800 հաշուած են։ Այս մորթուածներուն մէջ կային Փիզիքապէս ուժեղ և զէնքի գործածութեան քաջավարժ շատ մը մարդիկ որոնք քարով իսկ կրնային ահաբեկել խուժանը եւ ջարդն արգիլել. բայց քաղաքին վատասիրտ վարդապետ Ցոբիկեանի թոյլ դիրքէն և երևելեաց սխալ խրատէն մոլորած՝ ինկան թակարդը և Մահմէտականի մը քիթն իսկ չարիւնեցին։ Ութսունի չափ այր մարդիկ միայն

վերապրեցան՝ տարօրինակ պարագաներու հրաշազան զուգադիպութեանց շնորհիւ։

Նկատելով երեւոյթները քաղաքականէն աւելի բարձր դիտակէտէ մը, պարտինք խոստովանիլ թէ հայկական գաւառաց մէջ ինքնապաշտպան չըլլալով մորթուած երիտասարդներն ոգւով եւ հաւատով հեռի էին Վարդանի նմանելէ։ Եթէ մեր երիտասարդներն նիւթապաշտութեան մէջ ինկած չըլլային, եթէ անոնք վառուած ըլլային այն հաւատով թէ կեանքը իրմէ վեր բանի մը նուիրուելով է որ ճշմարիտ կեանք կ'ըլլայ, անկարելի բան է որ այնպէս առ ահի անդամալոյծ եղած խողխողուէին։ Ա՜հ, որքան ինկած էին անոնք իրենց դիւցազն նախնեաց հոգեկան զօրութենէն ։ Վարդա՜ն, Վա՛րդան, դուն որ Տըղմուտի եզերքը, ճակատամարտի տագնապալից պահուն, ի խրախոյս քու զինակիցներուդ թողուցիր սպարապետի գիրքդ ու խոյացար ամեհաբար թշնամեաց բանակին վրայ եւ յանուն ազատութեան անոր ամենէն մեծամուր զումարտակը քու ահարկու սրովդ կոտորելով վերջապէս ինկար, ա՜հ, երբ քու երկնաւոր կայանէդ, հրեշտակներէ շրջապատուած, տեսար ԺԹ դարու հայրենակիցներդ որոնք մոռնալով անուն, նախնիք, դիւցազնական աւանդութիւն եւ ուխտ, փախան սարսափահար ու եղան ծակամուտ, եւ կոյանոցներու մէջ իսկ ընկղմելով ուզեցին ապրիլ մարմինի կեանքը և սակայն չկրցան նախատալից խողխողումէն խուսափիլ, ո՛րպէս ամօթահար ծածկեցիր երեսդ և մէկդի դարձար չտեսնել այս ողբալի տեսարանը...։

Խօլ խաւարի այս երկարատեւ գիշերին մէջ

պահ ընդ' պահ հայկական արութեան եւ անձնըուիրութեան փայլատակունք կը շողշողային։ Մասնաւորապէս կար վայր մը, լեռանց ու կիրճերու մէջ նստած փոքրիկ Հայաստան մը որ Տիգրաններու և Վարդաններու դարուց քաջարի հայութեան վեհ տիպարը կը կրէր եւ որ Օսմանեան բռնապետութեան առջեւ խրոխտ ու անվեհեր ճակատ մը պարզած էր միշտ — այն է ԶԷՅԹՈՒՆ։ Ու Զէյթուն, ի լուր ազգային աղետին և բարբարոսութեան որոտումներուն, թոթուըուեցաւ ու սուրը քաշեց։ Իր 2,000 մարտիկներն աննկուն քաջութեամբ դիմադրեցին Թրքաց 75,000 է բաղկացած բանակին երկար ամիսներ։ Վերջապէս ապշած Եւրոպայի միջամտութեամբ ընդհարումը վերջացաւ և Զէյթուն յայնմ հետէ քրիստոնեայ Գայմագամով կը կառավարուէր՝ փոխան մահմետականի։ Զնչի՛ն վարձք։ Բայց աւելի մեծ վարձք մալ ունեցաւ անիկա, ցոյց տալով աշխարհի թէ Հայ ցեղը ինչ եղած է երբեմն ու ինչ ընել կրնայ դեռ իբրեւ զինուոր։

Հայե՛ր, գուգուրացէք Զէյթունի վրայ. բանաստեղծներ, ձեր դիւցազներգական քնարով երգեցէք անոր փառքը. հարո՛ւստներ, ձեր նըուէրները անձրեւեցէք հայրենեաց անձնուէր հայ քաղաքին վրայ, զի նա թէև չկրցաւ Հայաստանը ազատել, Հայութեան պատիւը փրկեց։ Կեցցէ՛ Զէյթուն։

## ԳԼՈՒԽ Դ.

# ՀԱՅՈՑ ԴԻՒԱՆԱԳԻՏԱԿԱՆ ԳՈՐԾՈՒՆԷՈՒԹԻՒՆԸ

Հայկական խնդրոյն ծագումն ու դէպքերուն դէպ ի ճգնաժամ թաւալումը արագօրէն նկարագրած ըլլալով՝ կուգամ քննադատական վերլուծում մը փորձել, աշխատութիւն փափուկ եւ դժպհի, սակայն անհրաժեշտ։

Ինչպէս տեսանք, միջազգային ինչ ինչ տարօրինակ պարագայից մեղսակցութեան ընծայելի է մասամբ մեր աղէտին չափազանց ահաւորութիւնը։ Գիտենք թէ դիպուածք ու մեր կամքէն անկախ պարագաներ կրնան կարեւոր ազդեցութիւններ գործել ինչպէս մեր անհատական անանկ ալ ազգային բաղդին վրայ։ Սակայն ճշմարիտ է նաեւ, ու պայծառօրէն ճշմարիտ, թէ ժողովուրդի մը, ինչպէս անհատին, բուն բարեկամն թէ ամենէն վտանգաւոր թշնամին՝ ինքն իսկ է։ Ազգի մը ճակատագիրն իր՛ ձեռքն է։ Պատմաբանը պարտի ուրեմն ճանչնալ ձախողութեան այն բաժինը որ պատահմանց վերագրելի է, բայց, միւս կողմէ, անաչառօրէն նշաւակել դանդաղութիւնը, անվճռականութիւնը, վախկոտութիւնը, ինչպէս նաեւ աննախատեսութիւնը, չափազանցեալ ինքնավստահութիւն կամ յանդգնութիւնը, մա-

նաւանդ այն ամենէն ծանր սխալը որ կը կայանայ յանկարծ մեծ բան մը ընելու, դիւանագիտական արարք մը կամ ուժով դիմադրութիւն մը յանպատրաստից ( improviser ) ընելու մէջ, առանց մշակուած ծրագրի եւ առանց երկարաշունչ եւ կատարելագործուած պատրաստութեան։

Սխալիլը մարդկային է։ Մեծ ազգերն ալ կը սխալին։ Ահա մեր օրերը, մեր ճգնաժամին առեններն իսկ ականատես եղանք ու կ'ըլլանք խոշոր մոլորանքներու։ Անգլիա սխալ դատեց զԴրանսվալի ոյժը ինչպէս Ռուսիա զՃապոնին, և սխալողները նուաստութիւն, անձկութիւն եւ վարկի աճագին կորուստ կրեցին։ Զարմանալի չէ ուրեմն որ մեր ազգն ալ որ նո՛ր եւ առանց բաւական պատրաստուած ըլլալու ոտք կը կոխէ միջազգային քաղաքականութեան ասպարէզը, գայթ ի գայթ քալած ու շատ անգամ մոլորած ըլլայ։ Բայց պարտինք յրջօրէն եւ անկեղծօրէն քննել եւ ընդունիլ մեր սխալները ու ըստ այնմ ուղղութիւն տալ մեր գործունէութեան, մենք որ աշխարհի վրայ անօք ժողովուրդ մըն ենք ու մեր սխալներուն հետեւանքները անողոք խստութեամբ կը կրենք ամենավայրագ Թշնամիի մը ձեռքէն։

Արթուն և ճարպիկ գործիչ մը ոչ միայն իրեն համակիր և չահակից եղողները իրեն յաջակցութիւն կը բերէ, այլ և իրեն հակակիր և Թշնամի տարրերէն օգտուելու իմաստութիւնը կ'ունենայ։ Ճաբոնցիք Եւրոպիոյ դպրոցներուն մէջ սորվեցան Եւրոպական զօրութեան յաղթել։ Մեծն Պետրոս ու իր զօրապետներն իրենց ի սկզբան յաղթող Շուէտներէն սորվեցան զօրավարել, ինչպէս ի

ւնում։ Թեբէցիք ռազմավարել սորվեցան Սպարտացւոցմէ։ Փորձառութիւնն է մեծ վարժապետը։ Հայերս ալ մեր թշնամիէն, Համիտէն, «Մեծ Ոճրագործէն», քանի մը բան սորվիլ ունինք։ Համիտ վատ մ'է, և ճշմարիտ է Թօքվելի դիտողութիւնը թէ վատասիրտ բռնաւորն է ամենէն գէշը։ Բայց Համիտ իր ուզածը ի գլուխ հանելու մէջ արտակարգ ճարտարութիւն ցոյց կուտայ։ Իրեն յատկութիւններէն մին սա է որ ամօթ չի համարիր Եւրոպացիներէ խրատ հարցնել, թէև Եւրոպան կ'ատէ։ Ամեն միջազգային կնճռոտութեան վրայ լոյս առնել կը ջանայ Եւրոպան լաւ հասկըցողներէ։ Իր գործերը կատարել տալու համար ամենալաւ պաշտօնեաները կը փնտռէ, ու շատ մը Գերմանացիներու պաշտօն տուած է իր բանակը շնորհքով վիճակի մէջ դնելու համար։ Նոյնպէս կ'ընէ իր անձնական գանձուն հոգածութեանը համար։ Հայերը կ'ատէ, բայց անոնցմէ կ'ընտրէ ելմտագէտները իր եկամուտի ձեռնհաս վարչութեան համար։ Նաեւ վերջին ծայր խորամանկ ու կեղծաւոր է։ Արդէն բացատրած եմ թէ ինչպէս անիկա հնարեցաւ մեծ կոտորածէն առաջ Հայերը խաբեպատիր տպաւորութեանց շնորհիւ անհոգութեան եւ անպատրաստութեան մէջ ձգել, որով յաջողեցաւ առանց զոհողութեան ձեռք բերել ամենափայլուն յաջողութիւն մը։ Պէտք է ցաւ ի սիրտ բաղդատել Համիտի գործելակերպին հետ մերինը, երբ մենք մեր ամենափափուկ գործերը փոխանակ մեր ամենէն կարող գործիչներու յանձնելու, հապճեպով կը հետեւինք աւանդական սովորութեան և կ'ընտրենք անյարմարները, երբեմն ամենէն անյարմարները

որ ազգին մէջ կարելի է գտնել։ Ու կ'արժէ որ, նոյնպէս ցաւ ի սիրտ, Համիտի մեթոտին բաղդատենք մեր յեղափոխականացը, որոնք, 20 հոգի ըլլան թէ 50, երբ կ'ուզեն սահմանն անցնիլ ու Հայաստանի մէջ գործ մը գործել. դիմադրութիւն մը պատրաստել, քանի մը օր առաջ կը սկսին խնճոյքի երեկոյթներով հռչակել իրենց մօտալուտ չուն, նոյն իսկ նուագներով փողոցները շրջիլ։ Իսկ իրենց թերթերը ամիսներ յառաջագոյն կը յայտարարեն կատարուելու «ապըստամբութիւնը» և թէ Հայաստանի որ մէկ կողմը կը պատրաստուի այն։ Այսչափին հարեւանցի կը յիշեմ ի հակադրութիւն Համիտի գործելակերպին, ու կ'անցնիմ նախ մեր դիւանագիտական աշխատութեանց մասին խօսելու։

Ի բացատրելն Հայկական Խնդրոյ ծագումը՝ յայտնած եմ արդէն ենթադրութիւնս թէ Ներսէս հաւանօրէն Ռուսէն թելադրուած ըլլալով ըրաւ իր դիմումն ի Սան-Սթէֆանօ։ Պատրիարքին խնդրելովը Ռուսը պաշտօն յանձն կ'առնէր Հայերը Քրդերուն դէմ պաշտպանել։ Եւ կրնա՞ր ասկէ աւելի մարդասիրական ու գեղեցիկ պատրուակ մը գտնել Հայաստանի մէջ յապաղելու համար։

Ներսէս ռուսական թելադրութեամբ առնըուած այս քայլին փրկաւէտ ուղղութիւն մը տալու աշխատեցաւ բայց ոչ առանց նոր սխալներ գործելու, և վրիպելու։ Ըսի թէ Սուլթանը իր գործերը կատարել տալու համար նոյն իսկ Հայերո՛ւն կը յանձնէ պաշտօն եթէ զայնս գտնէ ամենէն ձեռնհասը։ Պետի մը ամենակարեւոր յատկութիւնն է գիտնալ ընտրել ամենէն յարմար

պաշտօնեաները։ Գերմանիոյ քաղաքական միութիւնը ի գլուխ հանող մարդը Կիյյոմ չէր այնքան որքան Պիզմարք, բայց Կիյյոմ փառաւորեցաւ զի գիտցաւ գործիչ ընտրել զՊիզմարք, զՌուն, զՄոլթքէ, իւրաքանչիւրը իր յատուկ գործունէութեան ոլորտին ամենայարմարը։

Դժուար ու փափուկ գործ էր Հայկական Խնդիրը Եւրոպայի դահլիճներուն առջև ջատագովելու գործը․ հարցը քաղաքական էր ու անոր փաստաբանութիւնը պէտք էր յանձնել դիւանագիտական պայքարներու մէջ եփած անձնաւորութեան մը որ արժանապէս դէմ առ դէմ գար քաղաքական աշխարհի ամենէն ճարտար ներկայացուցիչներուն։

Ո՞ւր գտնել սակայն այդպիսի անձնաւորութիւն։ Հայերը քաղաքական կեանք չունէին, ու Դրան հայ էֆէնտիներուն մէջէն չէր որ պիտի կրնար այդպիսի մէկը ընտրուիլ։ Պատրիարքը բընականօրէն դարձաւ դէպ երկու եկեղեցականներ․ Խրիմեան Հայրիկ, մեծագոյն դէմքը հայ ժամանակակից եկեղեցականութեան, որ իբրև գաւառական առաջնորդ և նախկին Պատրիարք՝ քաղաքական գործերու փորձառութիւնն ունէր, թէև նեղ հրապարակի մը վրայ, եւ Խորէն Նար-Պէյ, որ բոլորովին զուրկ էր քաղաքական փորձառութենէ և գլխովին անյարմար էր այդ պաշտօնին։

Անդին Նուպար մը կար, սակայն, որ՝ ըստ վկայութեան օտարաց, դիւանագիտական բարձր հանճարով և փառաւոր յաջողութիւններով մին էր դարուն առաջնակարգ պետական մարդերէն։ Ու Նուպար անտարբեր չէր Հայկական Խնդրոյն։ Անիկա կը զգար թէ հայ ցեղը իր պատմութեան

վճռական մէկ վայրկեանն ապրելու յ ա ն կ ա ր ծ կոչուած էր և կը փափաքէր իր կարողութիւնն ի սպաս դնել իր ազգին։ Ուստի կը յօրինէր ու կը յղէր Պատրիարքին բարեկարգութեան ծրագիր մը՝ շատ տարբեր պատրիարքականէն։ Ներսէսի ծրագիրը աշխարհագրական սահմաններ ցոյց կու-տար և Հայոց թիւը այդ սահմաններուն մէջ գե-րակշիռ կը դնէր, և խնդրած բարեկարգութիւն-ներն ինքնօրինական ու ազգայնական միտում մը որոշապէս կը մատնէին։ Ասիկա Թրքին ու Ռուսին կողմէ միանգամայն ամենախիստ դիմադրութիւն յարուցանելու բնոյթ ունէր, որովհետև Հայաս-տան աստի պիտի ելլէր Օսմանցւոց ձեռքէն ու անտի պիտի ըլլար ռուս յառաջխաղացութեան դէմ կանգնուած պ ա տ ն է շ մը։ Ընդհակառակն՝ Նուպարի ծրագիրը պարզապէս բարեկարգութիւն-ներ կը տնօրինէր՝ բոլորովին զերծ ամեն ազգայ-նական գոյնէ։ Եթէ այս ծրագիրը, որ բանաւոր ու գործնական էր, ներկայացուէր ի Պեռլին, ու ներկայացուէր Նուպար Փաշայի իսկ ձ ե ռ ա մ բ, Թուրքը չպիտի զգար անյաղթելի դժուարութիւն եւ շատ հաւանական է որ Նուպարի իսկ պաշտօ-նավարութեամբ գտնէր իր փրկաւէտ գործադը-րութիւնը։ Այս գործադրութենէն դարձեալ հայ տարրը աւելի պիտի օգտուէր քան անոր անըն-դունակ դրացիները, ու այս կերպով հաստատ ու ընդարձակագոյն խարիսխի մը վրայ դրուած պի-տի ըլլար Հայոց տնտեսական ու իմացական վե-րածնութեան գործը։ Տարիներ վերջը, միջազգա-յին բարեպատեհ պարագայից աջակցութեամբ, թերեւս ինքնօրինութեամբ ալ օժտուէր Հայաս-տանը ու այսպէս խաղաղ յառաջդիմութեան ու-

ժով Հայը նորէն տէր դառնար իր նուիրական Հայրենիքին։

Ցայտնի է թէ Ներսէսի ու իր խորհրդականներուն ընդունելի չեղաւ Նուպարի ծրագիրն ա՛յն պատճառաւ որ անիկա յոյժ քիչ կը պահանջէր Տէրութիւններէն և կարի յամր ու երկար ուղեգիծ մը կը ներկայացնէր դէպ ազգային նպատակը դիմելու, մինչ պատրիարքարանի ծրագիրը շատ բան միահաղոյն ստանալու եւ ոստիւն մը դէպ ի քաղաքական կեանք իրագործելու փորձ մ'էր։ Կրնայ ըլլալ որ այն ատեն Ներսէսի խորհելակերպը Կ. Պոլսոյ Հայոց մէջ ուղիղ երեւցած ըլլայ, սակայն Նուպար ա՛յն ատենէն կրցաւ խորհիլ ինչ որ հիմա ամեն Հայ կը մտածէ թէ մենք մեծ սխալ մը կ'ընէինք խնդրելով Հայաստանի համար այն բանը զոր Ռուսը չէր ուզեր տալ եւ Անգլիացին չէր կրնար պահանջել։

Հարկ է ուրեմն եզրակացնել թէ Ներսէս Վարժապետեան, մեծահոգի և ազնուասի՛րտ անձնաւորութիւն, անկե՛ղծ հայրենասէր, սխալեցաւ անճապարանօք Հայկական Խնդրոյն տալով անգործնական ու յաւակնոտ հանգամանք մը և չյանձնելով ազգային դատին դիւանագիտական ջատագովութիւնը այն պետական մարդուն, Նուպարի, որ այդ փափուկ պաշտօնին գերազանց յարմարութիւն ունեցող միակ Հայն էր։

Մեր դիւանագիտական այս առաջին ճիգին ապարդիւն մնալը պատճառ մը չէր որ բոլորովին ձեռնթափ ըլլայինք Հայկական Խնդրոյն մէկ կարգադրութիւնը, լինի այն շատ համեստ ձեւի տակ, ձեռք բերելու համար դիւանագիտական պայքարը շարունակելէ։ 1878 ի փորձէն երեք գլխաւոր

բան սորված էինք· նախ, թէ Եւրոպայէն մեծ բան ակնկալելու չենք· երկրորդ, պէտք է մեր պահանջներն շատ չափաւոր և գործնական ըլլան· երրորդ, մեր դիւանագիտական աշխատութիւններն ազգին ամենէն կարող և յարմար անձերուն միջոցաւ պարտինք կատարել։

Պէռլինի հայկական յօդուածին սնամէջ հանգամանքը տարուէ տարի աւելի որոշ տեսնուելուն՝ Հայեր սկսան տակաւ այն համոզումը կազմել թէ փաստի հետ ոյժ ևս գործածել հարկ է Եւրոպիոյ ազդելու համար։ ‘‘Ցոյցը’’ որ կանխամտածութեամբ եւ քաղաքագիտական հաշիւով կ'ըլլայ, պէտք է զանազանել այն դէպքերէն ուր հարստահարեալ մը ինքզինք կամ իրեններն պաշտպանելու հարկին տակ՝ զէնքի կը դիմէ, ինչպէս է Վարդենիսի դէպքը։ Արդ, նկատելով որ Հայերը տոկուն և յաղթապանծ ապստամբութեամբ մը Թրքական բռնութեան լուծէն չէին կարող իրենք զիրենք ազատել, պէտք է ընդունինք թէ բոլոր ‘‘յեղափոխական’’ ցոյցերը յաւէտ դիւանագիտական բնոյթ ունէին· այսինքն Թուրք Կառավարութեան դէմ աղմկալից այնպիսի բողոքներ էին որ պիտի ծառայէին մեծ պետութեանց ուշադրութիւնը Հայաստանի վրայ դարձնելու։ Սակայն “ցոյցը” երկսայրի սուր մ'է· եթէ եւրոպական պաշտպանութիւն յառաջ բերելէ վրիպի, Թրքական հալածանքը սաստկացնելու կը ծառայէ անվրէպ։ Անիկա քիչ զոհողութեամբ շատ բան ձեռք բերելու քաղաքականութիւն է որ իր վտանգներն ունի։ Անիկա ալ փորձով սորվեցանք։ Միայն մէկ անգամ միջազգային կացութիւնը և ներքին պարագայք բանաւոր և ար-

դարանալի ըրին հայկական ցոյցը, այն որ 1895 Սեպտ. 30 ին տեղի ունեցաւ ի Կ. Պոլիս։ Սասունի 1894 ի ջարդէն ի վեր շատ ամիսներ անցած էին դեսպանաց ու Սուլթանին միջև բանակցութիւններով։ Բարեկարգութեան ծրագիր մը կար ի մէջի զոր պիտի ստորագրէր Համիտ և որն ի գործ պիտի դրուէր ընդհանուր տեսչի մը հսկողութեամբ։ Այս դիւանագիտական երկարաձիգ պայքարին մէջ կեդծ էր ռուսական դեսպանին, հետեւապէս նաեւ ֆռանսականին, ցոյց տուած ժոյթը, և վերջապէս Անգլիականն ալ, զգալով իր առանձնութիւնը, յուսահատած էր. ամենքը մէկէն նահանջելու վրայ էին։ Երբ այս վերահասպատահականութիւնը լու եղաւ հայ առաջնորդողներու շրջանակին, ուր արդէն գանած էին Եւրոպիոյ նողկալի գաղջութենէն, վերջին յուսահատական հնարքի մը, այսինքն, հայկական ցոյցի մը որոշում տրուեցաւ։ Այն պահուն եւրոպական ազդեցութիւններն իրարու դէմ բաժնըւած էին ու կը թուէր թէ սատանող նժարին արդար կողմը կրնար յաղթական հակում մը կրել նոյն իսկ յարդի մը յաւելումովը։ Անգլիական զրահաւորները մօտն էին ու Եւրոպիոյ հանրային կարծիքը ազդու միջամտութեան մը նպաստաւոր էր։ Ծանօթ և թագուն գործօններու և շարժառիթներու ահագին կնճռոտութիւն մը կար և սակայն, ամեն բան մէկտեղ առած, անանկ կը թուէր թէ մայրաքաղաքին մէջ ցոյց մը այդ ատեն կրնար թերևս դէպքերու հոլովումին տալ մեզի նպաստաւոր դարձուած մը։ Թէպէտ ցոյցը եղաւ Ջարդերու չունկէտը, բայց ոչ ոք կրնայ պարսաւել այդ ձախող ցոյցը։

Այդ ցոյցը ու հետեւորդ ջարդերուն երկայն շարքը երեւան բերին մութի մէջ մնացած շատ մը կէտեր և մանաւանդ այն ահաւոր իրականութիւնը թէ ՀԱՅԱՍՏԱՆ ԲՈԼՈՐՈՎԻՆ ԿՂԶԻԱՑԵԱԼ ՎԻՃԱԿԻ ՄԸ ՄԱՏՆՈՒԱԾ ԷՐ, և թէ ոչ մի տէրութենէ պաշտպանութեան յոյս կար անոր։ Հարիւր հազարներով Հայերու խողխողումը որ տարի մը տեւած էր արդէն և որու տեւողութեան ատեն ոչ մի պետութիւն կամ պետութեանց միութիւն կրցած էր դահիճին ձեռքը բռնել, լիառատօրէն ապացուցած էր ահաւոր իրողութիւնը։ Այդ վայրկենէն Հայերը պարտաւոր էին ամենալուրջ զգուշաւորութեամբ շարժիլ ու ցոյցերէ հրաժարիլ։ Ասիկա էր խրատը զոր դէպքերը կ'աղաղակէին Հայոց։ Բայց գտնուեցան Հայեր որ լսելու ականջ չունեցան։ Ու ահա խումբ մը Դաշնակցական տղաք ցոյց մը ընելու ելան։ Ռումբերով զինուած՝ յանկարծ գրաւեցին Օսմանեան Պանքան, որ եւրոպական հաստատութիւն մ'է ի Կ. Պոլիս, և սպառնացան օդը հանել զայն իր Եւրոպացի պաշտօնեաներովը հանդերձ՝ եթէ դեսպաններն ստորագրութեամբ չխոստանային բարեկարգութիւններն ի գործ դնել։ Ո՜ յիմարութիւն։ Դիցուք թէ դեսպանները ստորագրութեամբ խոստանային, ի՞նչ արդիւնք կրնար սպասուիլ անկէ։ Ո՞չ ապաքէն Եւրոպիոյ լիազօրներն Պէռլինի մէջ անգամ մը ստորագրութեամբ այդ բանին դաշնագրական յանձնառութիւնն ըրած էին, հանդարտ խորհրդակցութեան մը մէջ, ու արդիւնք մը ձեռք բերուած չէր։ Եւ ինչպէս կարելի էր բանաւոր էակի մը յուսալ թէ ան Եւրոպան որ 300,000 Հայերու խողխողումին ու ցրումին ի տես չէր ու-

*ցած կամ չէր կրցած չարժիլ, այս տղոցը սպառնալեաց առջև, առ ահի պիտի չարժէր։ Տղաքը, ռուսական գործիչին միջնորդութեամբ, ապահովապէս ելան պանքայէն ու հեռացան երկրէն բայց իրենց ապշեցուցիչ ցոյցը հայ ցեղին բանիմացութեան վրայ տխուր գաղափար մը տալէ զատ, խիբև անիշխանական արարք մը ենթակայ եղաւ տիեզերական պարսաւի և Հայոց մասին համակրանքի զեղչ մը պատճառեց։ Իսկ Սուլթանը, որուն գիշախանձ ախորժակը բանի մը կը ցանկար իր խնճոյքը կատարեալ ընելու համար, Հայերու կողմէն իրեն ընծայուած այս առիթէն օգտուիլ փութաց և 10,000 Հայեր ալ մայրաքաղաքին մէջ կեր տուաւ իր տապարին, մեր «հերոսներէն» սպառնալիք կրած դեսպաններու աչքին առջև...*

*Այս խայտառակ փորձառութիւնը ղգօնացո՞ւց Դաշնակցականներն. ո՛չ։ Անոնք ցոյցեր ընելու ետեւէ եղած են Արեւնի Շրջանէն ի վեր ու կըրկին և կրկին պատրուակ ընծայած են Գազանին յագուրդ տալ իր արիւնախանձ ախորժակին։ Հայ աշխարհը դեռ 1904 տարւոյ ընթացքին ի նոր սուգ համակեցաւ Սասնոյ Թարմ ջարդին համար, ջարդ մը որ գուցէ վերջին ու մահացու հարուածը եղաւ հայ քաջերու այդ եզական լեռնագաւառին։ Դաշնակցական արշաւախումբ մը, 30–40 հոգիէ բաղկացած, Թափանցած էր Սասունի մօտակայքը, եւ իր համբաւը, շնորհիւ Դաշնակցականաց Թմբուկներուն, ամենքս ալ լսած էինք եւ մեզի հետ, կամ մենէ առաջ, Թուրք կառավարութիւնը, որ ուրախ էր Սասունին վրայ անգամ մ'եւս իյնալու այս հայընծայ առիթին համար։ Ջարդէն առ առաջ Հայեր գուշակեցին այս արշաւախմբին*

երեւէն գալու աղէտը, բայց Դաշնակցականներն խոտեցին ամէն յանդիմանութիւն։ Թուրքը բանակ հանեց իբր թէ 30–40 յեղափոխականներու խումբը հարուածելու համար ու սպառսպուռ աւերեց Սասունը, ի հուր և ի սուր մատնելով նաև ոչ սակաւ գիւղեր Մշոյ դաշտին վրայ ուր որ խումբը հանդիպած էր երբէք։

Կ'երեւի թէ Դաշնակցականները իրենց ապըստամբական այդ փորձը այնքան աղէտալի գտնելէ ետև ուզեցին անկէ օգուտ մը հանելու ուրիշ փորձ մ'ալ ընել և ուստի դիւանագիտական պատգամաւորութիւն մը Եւրոպիոյ դահլիճներուն առջև հանելու ճիգ մ'ըրին։ Ուղղակի «Յեղափոխական Դաշնակցութեան» անունով Եւրոպիոյ առջև ելլելու երես չունէին, զի իրենց շարժումները Եւրոպացւոցմէ դատապարտուած էին իբրև անխոհական և յախուռն։ Չէին կրնար Կ. Պոլսոյ Պատրիարք Օրմանեան Սրբազանը համոզել առ այդ, և ուստի ամենայն Հայոց Հայրապետին դիմած են, որպէս կ'երեւի, եւ յաջողած են Նորին Սրբութիւնը համոզել թէ օգտակար պիտի ըլլար եթէ յանուն իւր պատգամաւորութիւն մը այս միջոցին մեծ Պետութեանց ներկայանար Հայոց անտանելի վիճակին դարման մը խնդրելու։ Այս պատգամաւորութիւնը Ֆռանսայի Նախագահ Լուպէյէն և Միացեալ Նահանգաց Նախագահ Ռոզվէլթէն ընդունուելէ յետոյ՝ վրիպեցաւ Անգլիոյ թագաւորին ներկայանալէ, ուստի եւ միւս Տէրութեանց դիմում ընել անպատեհ համարելով՝ ցրուեցաւ ձեռնունայն և գլխիկոր։ Սասունի կողմը աւելի քան եօթն հազար Հայոց արիւնը ի զուր թափուած ըլլալէ յետոյ՝ Ս. Հայրապետին ազ-

դեցութիւնն ալ այսպէս վտանուեցաւ վայրապար։ Եւ ինչպէս որ արշաւախումբին ձեռնարկին անպատեհութիւնը ջարդէն առաջ ծանուցուած էր, նոյնպէս եւ դիւանագիտական արշաւանքին այս միջոցին անպատեհութիւնը կանխաւ յայտարարուած էր, բայց լսող չեղաւ։

Պէտք չէ որ մեր ամենասիրելի Հայրիկին ընծայենք այս դէպքին մէջ պատասխանատուութիւն մը որ իրեն չի վերաբերիր. անոնք որ զինքը համոզած են այս ձեռնարկին՝ են բուն պատասխանատուները, զի դիւրին է կռահել թէ անոնք միջազգային կացութեան վրայ թիւր տեղեկութիւններ տուած են Նմին Սրբութեան և Եւրոպիոյ մէջ մեր օտար համակիրներուն ազդեցութիւնը մեծապէս չափազանցած։ Ասիկա մեր «յեղափոխական»ներուն սովորական գործելակերպն է։ Զէյթունի ալ, 1895 ին, անանկ ներկայացուցին իրերը իր թէ Անգլիական նաւատորմիղը կազմ ու պատրաստ էր փրկաւէտ հարուածը տալու եթէ իրենք ոտքի ելլէին։

Էի՞ն գոնէ պատգամաւորութեան անդամները իրենց պաշտօնին յարմար։ Ասոնց անուանումին մէջ ալ անտարակոյս «Դաշնակցութիւնը» իր ազդեցութիւնը լիովին գործածեր էր։ Երկու արքեպիսկոպոսներուն մին, Այվատեան Սրբազան, "Դաշնակցական" մը, բոլորովին անյարմար էր. իսկ Սարաճեան Սրբազան, որ ոչ մէկ "յեղափոխական" կազմակերպութեան պատկանելու խոհեմութիւնն ունեցած է, ներքին, առաջնորդական գործեր տնօրինելու մէջ բաւական ճարպիկ է ու փորձառու, բայց վստահութիւն բրած պիտի ըլլայի եթէ չըսէի թէ անիկա զուրկ է այն լեզուական

և քաղաքական հմտութիւնէն որ Պետութեանց գլուխներուն եւ Կառավարութեանց վարչապետներուն կամ Արտաքին Գործոց Նախարարներուն առջեւ առանձ փափուկ առիթներով ելլելու համար անհրաժեշտ է։

Ճշմարիտ է թէ Եւրոպական մշակութիւնը փոխ չի կրնար առնուիլ, բայց լեզուական թերութիւնը կրնայ դարմանուիլ թարգմանի կամ քարտուղարի աջակցութեամբ։ Պատգամաւոր սրբազանները գոնէ ամենէն կարող ազգայիններ իրենց թարգման կամ աջակից առնելու իմաստութիւնը ունեցա՞ն։ Իրենց առաջին դիմումը Ֆռանսայի Նախագահին պիտի ընէին, եւ սակայն մեր փարիզաբնակ իմացականներուն մէջէն, որք մէկէ աւելի են, զանց ընելով զՉօպանեան, յոյժ կարող գործիչ, զանց են ըրած նաեւ զՁերազ որ, ոչ-կուսակցական մը, Ներսէս Պատրիարքի նախկին քարտուղարն եւ Ներսէսեան պատգամաւորութեան թարգմանը եղած, ու երկար տարիներէ ի վեր Եւրոպիոյ մէջ հայ դատին ջատագովութեանը պարապած ըլլալով, նոր պատգամաւորութեան թարգմանն ըլլալու ամեն յարմարութիւն ունէր։ Սարաճեան Սրբազան, կրնանք գուշակել թէ ինչ ազդեցութենէ յաղթուած, ընտրեր էր սակայն իբրեւ թարգման Կովկասահայ մը որ, որքան կրցանք տեսնել եւ լսել զինքը յԱմերիկա, ոչ միայն քաղաքագէտ չէ այլ եւ ոչ իսկ լեզուագէտ, եւ որ, անկարող Փրանսերէն լաւ գրելու, կարող եղած չէ մինչեւ իսկ գէշ գրուած մը ճանչնալ. զի ցաւով տեսայ թէ Հայրապետին հզօր նամակը, առ Վեհապետս ուղղեալ, խեղճ կերպով թարգմանուած էր Ֆռանսերէնի, ու

անգլիարէն թարգմանութիւնն ալ էր տափակութեան հրաշակերտ մը։ Այդպիսի թարգմանութեամբ մը զգեստաւորուած՝ Մկրտչի Աթոյ վըրտահար սրտի խորէն առ հզօրս աշխարհի արձակուած հոգեշունչ հառաչանքը ողորմելի երեւոյթ մ'էր առած։ Մեծ Տէրութիւններն Ծայրագոյն Արեւելքի ընթացիկ պատերազմին հոգերովը ու երկիւղներով կաշկանդուած ըլլալով, Հայրապետին սրտաճմլիկ ճիչը յամենայն դէպս չէր կարող արձագանգ գտնել եւ ոչ ուստեք, բայց պատգամաւորութիւնը իրաւունք չունէր Հայ ազգին մշակուած դասակարգին վրայ այնպիսի արգահատելի տպաւորութիւն մը հաղորդել Եւրոպիոյ։

Այս բոլորը ցաւալի է ինձ ըսել, բայց հարկ է խոստովանիլ թէ այս վերջին պատգամաւորութիւնը, երկրորդը իր տեսակին մէջ որ յանուն ազգին կուգար ներկայանալ մեծ տէրութեանց դահլիճներուն, ունէր 1878 ի պատգամաւորութեան բոլոր թերութիւններն ուժգնօրէն չափազանցուած, հանդերձ նոր ու խոշոր թերութիւններով։ Երկու եկեղեցականներն անյարմար էին, կարողութեան տեսակէտէ, եւ աշխարհական ընկերը զոր ընտրած էին, իրենց թերութիւններն լեցնելու փոխանակ կը չեշտէր, չկրնալով նոյնէ ուղերձով կամ բանախօսութեամբ, ի Պոսթոն թէ ի Նիւ Եորք, օտար համակիրներու և բարեկամաց առջեւ պատշաճօրէն դնել Հայկական դատը։ Եւ որ աւելին է. այս աշխարհական թարգմանը օտար թերթերուն մէջ ներկայացուած էր իբրեւ մին երեք կաթողիկոսական պատգամաւորաց, սխալ ներկայացում մը որուն թոյլ պէտք է չտային Սրբազանները։ Աւելին կայ. այդ աշխարհականը

"Դաշնակցական" ծանօթ գործիչ մ'էր, ինչպէս և Այվատեան սրբազանը, եւ երեքին երկուքը յեղափոխական ընկերութեան մը պատկանելով բնական է որ ամբողջ գործը Դաշնակցական ձեռնարկի մը երեւոյթն ունէր. ու եթէ այս բանը իմացուէր դահլիճներուն մէջ՝ շնորհիւ օսմանեան դեսպաններու, բաւական էր պատգամաւորութիւնը մերժելի ընել, զի չկայ Եւրոպական Մեծ Տէրութիւն մը որ պաշտօնապէս ճանչնալ ուզէ Օսմ. Կառավարութեան դէմ ապստամբութիւն սարքող խումբ մը։ Միւս կողմէն, Հայոց մէջ, այսպիսի հանգամանք ունեցող պատգամաւորութիւն մը դաշնակցութեան վարկը աւելցնելու պիտի ծառայէր ու այն տպաւորութիւնը թողուր պարզամիտ շրջանակներու մէջ թէ նոյն իսկ Ս. Հայրապետը ինկած էր Դաշնակցականաց ազդեցութեանը տակ։

Այս խորհրդածութիւնները կը հասցնեն մեզ եզրակացութեան մը։ Հայոց մէջ տեսնուած յեղափոխական գործունէութիւնը իբրև անխոհեմ և անկարող առաջնորդներու վնասակար արարքներու շարք մը միշտ ողբացած էինք, հիմա ստիպուած ենք ողբալ նաև մեր դիւանագիտական արարքներուն ամենէն կարեւորին վրայ որ տեղի ունեցած ըլլայ 1878 էն ի վեր, զի փորձառութենէ անխրատ և աւելի քան զառաջինն արատաւոր էր ու անճարակ, աճապարանքով կարկատուած պատգամաւորութիւն մը որոյ երեք անդամներուն ոչ մին յարմար էր գործին և երկուքը գերազանցապէս վնասակար։ Ինչո՞ւ չենք հասկնար այս կենսական բանը թէ Հայկական ներկայ ճգնաժամը վրայ եկած է իր բոլոր սպառնալից

ահաւորութիւններովն երբ մեր ազգը դեռ պատրաստուած չէր պայքարին։ Եւ ի՞նչու կը յամառինք չհասկնալ թէ, 1878 էն ի վեր թաւալած քառորդ դարու ընթացքին մեր ժողովուրդը իմացական և անտեսական ահագին տուգանքներ կրած է իր անկարող առաջնորդներուն երեսէն, եւ թէ մեզի պէս ազգի մը համար որուն բարձր ընդունակութիւններն դեռ կրթութեամբ վերածուած չեն գործօն զօրութիւններու, հարկ անհրաժեշտ է դժուար ու փափուկ միջազգային ու ներքին գործերը յանձնել եւրոպական զարգացումի հասած սակաւաթիւ անհատներուն, թէպէտ աշխարհական ըլլան անոնք թէպէտ եկեղեցական։

## ԳԼՈՒԽ Ե.

## ՀԱՅՈՑ ՅԵՂԱՓՈԽԱԿԱՆ ԳՈՐԾՈՒՆԷՈՒԹԻՒՆԸ

Գաղափարներու ահռելի քաոս մը մեր առջև կ'ելլէ երբ յեղափոխական ոլորտը դիտել կուզանք, և սակայն անհրաժեշտ է անողոք վերլուծման մը ենթարկել զայն ու պարզելով ամեն բան՝ ի վեր հանել ճշմարտութիւնը, բոլոր ճշմարտութիւնը։

Ու նախ զգացումի վրայ խօսինք։ Հայ ազգին յուսախաբութիւնը, ցաւը, կրած անասելի

անիրաւութիւնները, անգութ ու անդուլ հալածանքը, վիթխարի դաւակցութիւնը և կոտորածը որուն զոհ եղան իր բիւրաւոր կտրիճները, բաւական են և աւելի քան բաւական իր մէջ ընդվզման ոգի գրգռելու և յուսահատական արարքներ թելադրելու իր որդիներէն ամենէն կրակոտներուն։ Երբեք ժողովուրդ մը ապստամբած չէ աւելի արդար պատճառներով և աւելի անտանելի պայմաններէ մղուած քան զմերն։ Պէռլինի դաշնագրին մէջ մեծ տէրութիւնք եւ Օսմանցիք հռչակեցին թէ հայաբնակ գաւառներն բարեկարգութեան պէտք ունէին, և Եւրոպա պարտաւորութիւն յանձն առաւ հոգ տանելու որ 61 յօդուածն ի գործ դրուէր։ Սակայն 1873էն իվեր Հայոց վիճակը ընդհակառակն վատթարացաւ Օսմանեան Կառավարութեան յօրինուածական մահաշունչ հալածանքներուն պատճառով։ Եւրոպա ոչ միայն դաշնադրուժ եղաւ այլ եւ անզօր հանդիսատես մը հայկական չարչարանաց և ջարդերու անզրաւ շարքի մը որ դեռ կը շարունակէ։ Հայերը կրնան շատ ճարպիկ դիւանագիտութեամբ մը վարած չըլլալ իրենց դատը, սակայն դատը արդար է եւ իրենք անմեղ զոհեր են։ Իրենց անվիճելի իրաւունքն էր ջարդէն առաջ եւ մանաւանդ ջարդէն յետոյ ապստամբիլ, յեղափոխել իրենց գաւառներուն կառավարութիւնը և արդար վարչութիւն մը հաստատել զինու զօրութեամբ։

Ասիկա անվիճելի ճշմարտութիւն մ'է, բայց բոլոր ճշմարտութիւնը չէ։ Յեղափոխելու իրաւունքի խնդրոյն քով կայ նաեւ կարողութեան խնդիրը։ Եւ հոս է մեր ցաւը ոստոտկացնող դառն

պարագան։ Ըսի թէ երբեք ժողովուրդ մը ապըստամբած չէ աւելի արդար պատճառներով, եւ հարկ է որ աւելցնեմ թէ երբեք ալ ժողովուրդ մը ապստամբած չէ մեր գտնուած պայմաններու տակ։ Ուրիշ բան է փափաքիլ, եւ ուրիշ բան է կարենալ։ Տեսնուած չէ երբեք որ անզէն ժողովուրդ մը ապստամբի։ Եւ շատ ցաւալի կերպով պայծառ է այն իրողութիւնը թէ Հայը, եթէ զէնք ունենայ ալ, չէ՛ կարող Օսմանցւոց հետ չափուիլ։ Յոյները կանոնաւոր բանակներով ելան այդ փորձն ընել քանի մը տարի առաջ, ու յաղթուեցան։ Ռուս վիթխարի կայսրութիւնը 1876ին անհուն նեղութիւն կրեց Օսմանցւոց յաղթելու դժուար գործին մէջ ու այսօր հազիւ պիտի համարձակէր պայքարը կրկնելու։ Աշխարհ Օսմանցւոյն անկումին վրայ շատ կը խօսի և Ռուս մը շատ տարի առաջ «հիւանդ մարդը» կոչեց զայն, սակայն այս ամենը բաղդատական բացատրութիւններ են որոցմէ խաբուելու չենք։ Թուրքը չէ այլ եւս այն հզօր ոյժը որմէ Եւրոպա կը վախնար երբեմն, սակայն է տակաւին ոյժ մը շատ պատկառելի, և մէկէ աւելի եւրոպական տէրութիւններ պիտի փափաքէին զայն զինակից ունենալ ի հարկին։ Պուլկարիա իր աւելի քան 250,000 զօրքովը չէր համարձակիր, առանց զինակցի, զարնուիլ Օսմանցւոց հետ այսօր։ Արդ, ի՞նչ անուն տալ պէտք է 50 կամ 100 հոգիէ բաղկացած հայկական խմբերով յեղափոխական շարժումներ ընելու փորձին։ Եւ Հայաստան ափ մը հող չէ, այլ աւելի քան 60,000 քառակուսի մղոն լայնածաւալ երկիր մը, ուր Հայուն հետ սփռուած են կրկնապատիկ թուով այլազգի ու այլակրօն, անհամա-

կիր կամ Թշնամի ցեղեր։ Այս ցեղագրական դժբաղդութեան հետ ունինք աշխարհագրական դժուարութիւններ ալ։ Օսմանցին կրնայ ի հարկին իր կայսրութեան այս կամ այն ծայրէն մաս մը թողուլ, բայց իր կեդրոնական մասին վրայ եղած բաժանումի կամ օտարացումի միտումներուն դէմ ամենակատաղի դիմադրութիւն ընելէ չէր կրնար վրիպիլ։ Եւ այս մասին Համիտի խոստովանութիւնը արեւելագէտ Վամպէրիի շատ նշանակիչ է։ Ահաւասիկ թէ Վամպէրի ինչ կը պատմէ իր "Ցուշք"ի մէջ կոտորածէն առաջ իր մէկ տեսակցութեանը մասին.—

''Կը վստահացնեմ Ձեզ," ըսած է Համիտ մտերմօրէն Վամպէրիի, ''թէ Հայերուն խելքը շուտով գլուխնին պիտի բերեմ։ Իրենց գլխուն հարուած մը տալով մոռցնել պիտի տամ յեղափոխութեան գաղափարը։...Գրեթէ հարկադրըուած եմ այս արմատական միջոցները ձեռք առնել ի ներկայութեան այն անդուլ հալածանքին և թշնամութեանը զոր քրիստոնեայ աշխարհը ցոյց կուտայ։ ԶՌումանիա և զՑունաստան առնելով՝ Եւրոպա Թուրքիոյ ոտքերը կտրեց։ Պուլկարիոյ, Սերպիոյ եւ Եգիպտոսի կորուստով՝ անոր ձեռքերը կորզեցին, եւ հիմա, այս հայկական յուզումով կ՚ուզեն մեր ամենէն կենսական մասերը, մեր աղիքը խլել մեզմէ։ Այս պիտի ըլլար մեր ամբողջական կործանումը, եւ մենք բոլոր մեր զօրութեամբը դէմ պիտի դնենք ատոր։''

Նկատելով մեր անզէն, անկազմ, ցրուած վիճակը և թուական ու զինուորական ահագին անբաւականութիւնը, յայտնի էր թէ ջարդերէն առաջ իսկ անհնար էր մեզ յեղափոխութիւն

գործել։ Իսկ Ջարդէն յետոյ բոլոր այդ ցաւալի պայմաններն աւելի շեշտուած են։ Հայք աւելի աղքատ, աւելի անզէն, աւելի ցրուած ու քիչուոր են քան առաջ։ Ասոնց համար յեղափոխութիւն գործելու ոևէ ձեռնարկ յոռեգոյն է քան սխալ մը, ինքնասպանութիւն է։ Ու պէտք է անմիջապէս աւելցնեմ թէ Տաճկահայոց մտքէն իսկ չանցնիր ապստամբութիւն։ Անոնք իրենց սպառեալ և անարիւն վիճակին խորին գիտակցութիւնն ունին։ Անոնք կը զգան թէ կազդուրման և դարմանի երկար տարիներու կարօտ են։ Ասիկա հասարակ ողջմտութեան խորհուրդն է, և մերայինք այդ ողջմտութիւնն ունին։ Անոնք գիտեն թէ ոչ միայն անկարող են ապստամբիլ այժմ, այլ թէ իրենց համար ատիկա անկարելութիւն մը պիտի ըլլայ դեռ երկար տարիներ։

Այս ցաւալի բայց յոյժ ակներև պայմաններն տրուած ըլլալով՝ ի՛նչպէս բացատրել արտասահմանի մէջ յեղափոխական ընկերութիւններու շարունակումը։ Ի՞նչպէս մեկնելու ենք յեղափոխական կոչուած արշաւախմբերու արտասահմանէն ի Հայաստան մուտ գործելն։ Այս յեղափոխական Հայերը, թէպէտ թուով քիչուոր, ինչո՞ւ կը յարատևեն հետապնդիլ անհնարինին գործադրութեանը, եւ իրենց այդ փորձերով կը բերեն նորանոր զարհուրանք ու արիւնահեղութիւններ արդէն ուժասպառ գաւառներուն մէջ։

Այս ապշեցուցիչ երեւութին պատճառները բարդ են եւ հոգեբանական վերլուծում մը կը պահանջեն։

Նախ, կը սիրեմ հաւատալ թէ կան երիտասարդներ, թէև բացառիկ թուով, որոնք սման-

եան բարբարոսութեան դէմ բուռն զայրոյթ զգալով, կը մղուին ՑՈՒՍԱՀԱՏԱԿԱՆ ՇԱՀԱՏԱԿՈՒԹԻՒՆ մը գործելու, և ոգի ի բռին կ'երթան զարնել ու զարնուիլ անհաւասար պայքարին մէջ։ Ասիկա շատ բարձր և շատ սխրալի է զգացական տեսակէտէ։ Բայց ճիգը ամուլ է գործնական օգտակարութենէ եւ մանաւանդ յղի ողբալի հետեւանքներով։ Ճշմարիտ հայրենասէր մը պարտաւոր է ըլլալ խոհեմ եւ զգօն և լուրջ, անիկա իրաւունք չունի ինքզինքը զոհել հայրենիքի դատին անանկ ատեն ու անանկ կերպով մը որ դատը աւելի վտանգուի ու իր հայրենակիցները աւելի խորասոյզ ընկղմին արեան ու աւերի մէջ։

Յեղափոխական ասպարէզին վրայ այսպիսի անկեղծ երիտասարդներ կային ջարդէն առաջ, ու հիմա ալ կարելի է գտնուին, բայց անոնք չպիտի տեսնուէին այդ մոլար և աղգաւեր ուղղութեան մէջ եթէ չգտնուէին ուրիշ կարգ մը յեղափոխականներ որոնք նուազ անկեղծ են եւ որոց չարժառիթները խառն են։

Այդ խառն չարժառիթներու կարեւոր մէկ տարրը ՏՆՏԵՍԱԿԱՆ է։ Տնտեսական պատճառներ քաղաքական գործերու մէջ շատ աւելի մեծ դեր կը կատարեն քան դրսէն կ'երեւի։ Քաղաքագէտ մը որ քսան տարուան ծանօթութիւն մ'ունէր Լուի Նաբոլէոնի հետ՝ յայտարարեց թէ այն բանը զոր ամենէն լաւ գիտէր անոր նկատմամբ սա էր որ եթէ "փոքր" Նաբոլէոն անձնական հարստութիւն մը ունեցած ըլլար, Երկրորդ Կայսրութիւն ըսուածը եկած պիտի չըլլար Ֆռանսայի գլխուն։ Կարելի է ապահովապէս հաստատել թէ մեր յեղափոխական առաջնորդներէն ոմանք եւս, գու-

ցէ չատերը, եթէ անձնական հարստութիւն ունեցած ըլլային, 1896 էն յետոյ յեղափոխական ոչ թմբկահարութիւնք եւ ոչ խլրտմունք տեղի կ'ունենային Հայաստանի մէջ կամ անկէ դուրս։ Այս պարոններէն ոմանք ջարդէն առաջ իջած էին յեղափոխական ասպարէզը, թերեւս անկեղծ զգացումներէ մղուած, բայց չգիտցան թողուլ զայն երբ ողջմտութիւնը կը հրամայէր իրենց քաշուիլ։ Ապրուստի ապահով միջոց մը կար հոն, եւ ուստի ըսին. "J'y suis, j'y reste."

Ուրիշ զգացում մ'ալ կայ որ կը զօրացնէ տնտեսական չարժառիթը։ Ազգային գործիչի, ընկերութեան ղեկավարի կամ ԱՌԱՋՆՈՐԴԻ ԴԵՐՆ ալ ունի կաշկանդող հրապոյր մը, մանաւանդ յեղափոխական գործունէութեան մէջ որ միշտ ոգեւորեալ կամ արբեցեալ տրամադրութիւններու մթնոլորտ մը կը պահանջէ։

Առաջնորդը հետեւողներու կարօտ է։ Աստի կը ծագի փրոփականտի հարկը։ Եթէ տղոց շարքերը անօսրանան, պէտք է խտացնել նորադարձներով։ Կարելի՞ է սակայն հայկական ներկայ պայմաններուն մէջ արդիւնաւէտ յեղափոխական փրոփականտ մը։ Պէտք է որ քարոզողն ինքն համոզուած ըլլայ՝ ուրիշներն եւս համոզել կարենալու համար։ Եւ արդեօք հայ յեղափոխական գլուխներուն մէջ ամուր համոզում կա՞յ։ Կրնա՞նք ատոր հաւատալ առանց զիրենք խելագարուած ենթադրելու։ Եւ այս մեզ կը բերէ պատճառներու ամենէն խորունկին ու նուրբին որոյ շնորհիւ յեղափոխական թմբկահարութիւնը դեռ կը լսուի։ Հոգեբանութիւնն ապացուցած է թէ իղձերը հայր են խորհրդոց։ Երբ մարդ մը իր

կէս հաւատացած բանը ուրիշներուն, քարոզէ չարունակ, իր տարակոյսները կը փարատին տակաւ և համոզումն ու հաւատքը կը զօրանան՝ մինչ տրամաբանութիւնը կը մոլորի առանց իր գիտակցութեանը։ Այսպիսին կը սկսի բաները տեսնել այնպէս ինչպէս իր նպատակին կը յարմարին։ Այս հոգեբանական վիճակին մէջ են անոնք որ տկար և ուժասպառ Հայաստանի մէջ յեղափոխական զօրութիւն կը կարծեն տեսնել, և անտարբեր ու հոգերէ կաշկանդուած Եւրոպական տէրութիւններն իրենց կը թուին Հայկական Հարցը ձեռք առնելու տրամադիր։ Ուստի յեղափոխութիւն կը պոռան, բռնազբօսիկ խլրտումներ կը նիւթեն, նոր ջարդ մը և դառն յուսախաբութիւններ կուգան ցնցել Հայութիւնը, և մեր պարոններն խառնամառն զգացումներով կը դիտեն իրաց զարհուրելի ընթացքը։

Կէս ինքնախաբ այս պարոնները կը հանդիսանան կէս խաբեբայ հանդէպ հայ հանրութեան որոյ եռանդուն բայց անիրազեկ և անխոհուն անդամներէն ոմանց կը փոխանցեն իրենց վտանգաւոր պատրանքները։ Իրենց փրոփականտի մեթոտները շատ նպատակայարմար են։ Ամենավստահ շեշտով մը հաստատումներ կ՚ընեն բանիւ և գրով, եւ առանց փաստի՝ նոյն բանը անդադար կը կրկնեն։ Կիւստավ Լը Պոնի գործը (La Psychologie des Foules) կարդացած ըլլալով թէ ոչ, գիտեն թէ ամբոխին ինչպէս պէտք է խօսիլ։ Երկար տարիներ յեղյեղուած վճիռ մը, թէև արտառոց ըլլայ, ունկնդիրներուն մէջ ամուր համոզում մը կը ստեղծէ։ Ասիկա մանաւորապէս ճշմարիտ է այն վճիռներուն վերաբերութեամբ որք ամբոխին

կը խոստանան իր յոյսերուն եւ երազներուն ըստոյգ եւ չուտափոյթ իրականացումը։

Երկարօրէն նկարագրելու պէտք չունիմ հոս մեր ամբոխին քարոզուած գաղափարներն. ամենը մէկ բառի մէջ կը սեղմուին —ՅԵՂԱՓՈԽՈՒԹԻ՛ՒՆ։

‘‘Յեղափոխութիւնը” կոտորածէն առաջ ժողովրդական եղաւ, այսինքն երբ Հայերը կը յուսային թէ յեղափոխական ցոյցերը պիտի հարկադրէին Եւրոպական փրկաւէտ միջամտութիւն մը։ Երբ որ հաւատք մը ժողովրդական ըլլայ, վարակիչ զօրութիւն կը ստանայ եւ ժողովրդի ստորին խաւերէն կամաց կամաց թափանցել կը միտի վերագոյն խաւերն ևս, ճիշդ համաճարակի մը պէս։ Ոչ միայն ազատ արտասահմանի այլ և Ռուսիոյ և Թուրքիոյ Հայոց մէջ գտնուեցան յեղափոխականներ որոնք խորհող դասակարգին կը պատկանէին։ Բայց ջարդերէն յետոյ Յեղափոխութիւնը կորսնցուց ժողովրդականութիւնը, քանզի ամեն աղետաբեր գաղափար և անյաջող առաջնորդ վարկաբեկ կ՚ըլլան։ Բառին Եւրոպական իմաստովը հայ յեղափոխական կուսակցութիւն չկար ջարդերէն առաջ ալ, սակայն մինչեւ այժմ ալ յեղափոխական ‘‘կուսակցութիւն” մեծամոլիկ բացատրութիւնը կը գործածեն պետերը իրենց պարզամիտ հետևողներուն պատրանքը պահպանելու հոգեբան ճարպիկութեամբ մը։

Թէպէտ այսօր յեղափոխական կուսակցութեանց, կամ, թիւրիմացութեան տեղի չտալու համար ըսենք ‘‘ընկերակցութեանց” անդամները սակաւաթիւ են, բայց Յեղափոխութիւն բառին հմայքին ներքև բաւական ոյժ մը կը ներկայացը-

նեն արտաասահմանի մէջ, և իրենց վաստակի կարեւոր մէկ մասը գանձին կը նուիրեն։ Յեղափոխութի՛ւնն է Հայաստանի փրկութեան միջոցը, միա՛կ միջոցը, ստո՛յգ միջոցը։ Ահա իրենց համառօտ հաւատոյ հանգանակը։ Դժուար է իրենց տրամաբանել։ Յեղափոխութիւնը փրկած է Ֆրանսան, Յեղափոխութեամբ ազատած է Յունաստան, Յեղափոխութեամբ երէկ ազատեցաւ Կրետէ։ Հայաստանի համար ալ ազատութեան ուրիշ ճար չկայ բայց եթէ Յեղափոխութի՛ւն։ Տղաքը մտքէ չեն անցուներ, և ո՞վ պիտի տար իրենց այդ ծանօթութիւնը, թէ յեղափոխութիւնը միշտ չէ յաջողած, թէ Հայոց պատմութեան եւ ուրիշ ազգաց պատմութեան մէջ անթիւ օրինակներ կան անյաջող յեղափոխական շարժումներու։ Սակայն պատմութեան ուսումը, ամենէն կարեւորը մեր ազգին համար, ամենէն անարգուածն է առ մեզ։ Այսօր իսկ կը կարդայի մեր յեղափոխական թերթերէն մէկուն մէջ այսպէս լաւ գրուած յօդուած մը յորում սա տողերը կան։

«Հրէաները Դաւիթին աւանդութիւնը չի պահեցին։ Անոնք չի յանդգնեցան երբեք, այլ սողացող ճարպիկութիւնն եղաւ յաւէտ իրենց դիմադրութեան զէնքը բոլոր բռնութիւններուն դէմ, անոնք տիպար-ստրուկ ցեղն եղան գերազանցօրէն։»

Այս տողերն առիթ կուտան ինձ կարեւոր սըխալ մ՚ուղղելու եւ կարեւորագոյն պատմական դասի մը վրայ մերայնոց լուրջ ուշադրութիւնը հրաւիրելու։

Պատմութեան ամենէն փառաւոր յեղափոխութիւններուն մէկը հրէական յեղափոխութիւ-

նըն է՝ առաջնորդութեամբ Յուդայ Մակաբայեցւոյ։ Արեւելից վրայ կը ծանրանար այն ատեն Սելեւկեան տիրապետութիւնը բռնաւոր ու զեղծ։ Յուդայի կռիւը կրօնական ազատութեան կռիւն էր, հանգոյն մեր Վարդանի պայքարին։ Հեթանոս աստուածներու զոհ մատուցանելու հարկին դէմ է որ Յուդայի ընդվզումը կը սկսի։ Այս դիւցազնը 3,000էն մինչև 10,000 մարտիկներ ունեցաւ իր տրամադրութեան տակ՝ Սիւրիոյ զօրավարաց կանոնաւոր և խոշոր բանակներուն դէմ պատերազմելու համար, եւ փայլուն յաղթութիւններու շարքէ մը յետոյ, 166էն սկսեալ, ինկաւ ճակատամարտի մը մէջ 161ին Ն. Ք.։ Բայց կռիւը շարունակուեցաւ և 142ին Դեմետրիոս, որ Հրէից օգնութեան շատ պէտք ունէր իր մրցակից Տրիփոյի դէմ, ճանչցաւ զՄատաթիա իբրեւ քահանայապետ եւ իշխան Հրէաստանի։ Կրօնական ազատութեան համար մղուած կռիւը այսպէս յանգեցաւ քաղաքական ինքնօրինութեան։

Նոյնպէս և Հրէից գործն եղաւ այն յեղափոխական շարժումը որ ամենէն յիմարականն է աշխարհի պատմութեան մէջ։ Այս անգամ ապստամբութիւնը Հռովմէական իշխանութեան դէմ էր։ Իսրայէլի որդիքը կը հաւատային թէ ինչպէս նախորդ դարուն մէջ յաջողած էին Սելեւկեանց նուաղուն զօրութեան յաղթել, պիտի զօրէին նոյնպէս Հռովմէական կայսրութեան հետ չափուիլ։ Չէին տեսներ պայմաններու տարբերութիւնը։ Հռովմայեցւոց՝ իշխանութիւնը Հրէից կրօնական ազատութիւնը կը յարգէր եւ այս կողմէն գանգատի տեղի չկար։ Բայց ուրիշ սարսափելի գաղափար մը թունաւորած էր հրէական

դիտակցութիւնը։ Հրէայք իրենք զիրենք Եհովային, երկնից ու երկրի Տէրոջն ընտրեալ, հարազատ ժողովուրդը կը համարէին։ Ու եւս ՆԱԽԱՆՁԱՒՈՐ կոչուած աղանդ կամ ընկերութիւն մը որ վարդապետեց թէ օրէնքը Հրէից կ'արգիլէր Աստուծմէ զատ ոեւէ վեհապետ ճանչնալ։ Հրէայք Յոյն-Հռովմէական քաղաքակրթութեան ոգին չըմբռնեցին աւելի քան Մահմետականք կ'ըմբռնեն զքրիստոնէականին։ Անոնք դարուն ամենէն անհանդարտ, խռովայոյզ ցեղն էին, եւ խաղաղութիւնը կ'ուզէին այն պայմանով որ իրե՛նք ըլլային ուրիշ ազգերուն վրայ տիրող․ իրե՛նք միայն արժանի էին այդ վեհ դիրքին։ Այդ խօթամիտ համոզումներն կը տարածուէին ազգին մէջ ի ձեռն բաղդախնդիր եւ աւազակաբարոյ, մեծախօս և յանդուգն հայրենասէրներու որոնք անսահման ժողովրդականութիւն կը վայելէին։ Ասոնք շատ աւելի հետեւողներ ունէին քան լուրջ և չափաւոր քաղաքականութեան ջատագովներն ու մեծախոհ մարդիկը։ Իրօք, անոնք զաւազակն Բարաբբա աւելի հայրենասէր և յարգելի համարեցան քան զՅիսուս։ Յովսեպոս, հայրենասէր պատմիչն, կը վկայէ թէ․ «Հրէաստան լեցուն էր աւազակներով և կախարդներով որոնք կը պատրէին ժողովուրդը և օր չէր անցներ յորում Ֆէլիքս չպատժէր զոք մէկ կամ միւս տեսակէն։ Սակայն աւազակներն կը չարունակէին գրգռել ժողովուրդն յապստամբութիւն ընդդէմ Հռովմայեցւոց և կ'այրէին ու կը կողոպտէին այն գիւղերը որք կը մերժէին իրենց հետեւիլ։»

Մոլեռանդ հայրենասէրներէն մէկը 30,000 հոգիէ բաղկացած ամբոխ մը համոզեց Ձիթենեաց լեռն ելլել իրեն ետեւէն եւ անկէ դիտել թէ ինչ-

պէս իր հրամանին վրայ Երուսաղէմի պարիսպներն պիտի իյնային։ Ֆէլիքս զօրք ղրկեց բազմութիւնը ցրուելու։ Խռովայոյզներու դէմ ձեռք առնուած այսպիսի կառավարական միջոցներ աւելի ատելի կը հանդիսացնէին զՀռովմ յաչս Հրէից։ Բայց Հրէայք քիչ ատենէն պատեհութիւն ունեցան այլապէս տեսնել Երուսաղէմի պարիսպներուն անկումը, զի յիմարական ապստամբութիւնը պայթեցաւ առաջնորդութեամբ Մանահէմի եւ Եղիազարի, եւ յեղափոխական դրօշը շուտով արատաւորեցաւ ինչպէս կը սպասուէր այն անբարոյական ոգիէն որ կը ներշնչէր զայն։ Երբ Հռովմայական բերդապահ զօրքն, յեղափոխականաց խոստման վստահելով, անձնատուր եղան եւ զինաթափ, Նախանձաւորները զանոնք բոլորը սուրէ անցուցին, բաց ի մէկ անձէ որ յանձն առաւ թլփատուիլ։ Այս արարքը կատաղութեան ցունց մը տուաւ երկուց կողմանց։ Կեսարիոյ մէջ 20,000 Հրէայք ջարդուեցան, յԱղեքսանդրիա՝ 50,000, ի Դամասկոս՝ 10,000։ Հրէայք պարսպապատ քաղաքներու մէջ ամրացած՝ ամենայամառ դիմադրութիւն մ'ընծայեցին Հռովմայական զօրաց։ Երուսաղէմի պաշարման պատմութիւնը ամենաքստմնելի եղեռներու, հիանալի տոկունութեան եւ աղէխարշ տռամներու շարք մ'է։ Յոտապատ քաղաքին դիմադրութիւնը, Յովսեպոսի ղեկավարութեամբ, Հրէական անսպառ հընարիմացութեան, աննկուն քաջութեան եւ անշէջ կատաղութեան երկարատեւ ու ահաւոր հանդէս մ'էր։ Չեմ կարծեր թէ մարդկային պատմութիւնը անոր հաւասարող ուրիշ պաշարման դէպք մը կ'ընծայէ։ Քաղաքին առումէն յետոյ

Յովսեպոս պրծելով գրած է զարհուրելի պատմութիւնը։ Այդ ամենայանդունդն ապստամբութեան մէջ մարեցաւ Հրէից ազգային կեանքը և Իսրայէլի որդիքը ցրուեցան ի սփիւռս աշխարհի։

Ո՛չ, Հրէայք ընդվզումի անընդունակ չէին. անոնք յանդգնած են յանդգնութիւն մը որ եզական, առասպելական է։ Դաւիթ կործանած էր զԳողիաթ, ու Հրէաստան պիտի յաղթէր Հռովմէական տիտանին, վասնզի "Աստուծոյ ընտրեալ ժողովուրդին" անկ էր տիրել ազգերու, բայց երբ Իսրայէլի որդիքը բիւրք բիւրուց իրարու ետևէ ջարդուեցան, դիակները լեռնացան ու արիւնը գետօրէն հոսեցաւ, Եհովա մատը վեր չառաւ իր ժողովուրդը պաշտպանելու, վասն զի Աստուած տովորութիւն չունի անհատ մը կամ ազգ մը անձնասպանութիւն գործելէ արգիլելու։ Մոլար հաւատքը, երկնաբերձ ամբարտաւանութիւնը, յոխորտ ինքնավստահութիւնը, կրօնասիրութեան քօղով դիմակաւոր մոլեռանդութիւնն ու վսոա մոլութիւնը մղեցին զՀրէաստան հակաբանական ապստամբութեան մը որ զիրենք բարձրացնելու փոխան՝ յանդունդ գահավիժեց։

Պատմութեան այս ահեղ դասին վրայ կը հրաւիրեմ հայ յեղափոխական հայրենակիցներուս ամենալուրջ ուշադրութիւնը։ Դաշնագիրը, մեծ Տէրութեանց պաշտպանեալն ըլլալու մոլար վստահութիւնը, յանկարծ բարձրանալու ձգտումը, անհաշիւ անչրջահայեաց շարժումները՝ մեր ազգն ալ անդունդին բերանը տարած հասուցած են։ Ամեն ինչ հաշիւի առնելով, Հայաստանի ընդդէմ Օսմանեանց ապստամբելու այժմու կարողութիւնը աւելի խղճալիօրէն անբաւական է քան Հրէ-

տատանիւնն էր առաջին դարուն ընդդէմ Հռովմայեցւոց։ Հրէից տիրապետող Հռովմը հեռուն էր, մեզի տիրող Օսմանցին մեր մէջն է և զմեզ ամեն կողմէ շրջապատած է։

Բայց քանի որ մեր յեղափոխելու փորձերը ողջմտութեան հակառակ են, կրնայ հարցուիլ թէ ի՛նչպէս բացատրելու է որ փորձեր կրցան երբեք ըլլալ, որքան ալ անզօր։ Ցիշել պէտք է ուրեմն թէ ցոյցերը, թէ ի գաւառս և թէ ի մայրաքաղաքին, Հայկական Խնդրոյն ծագումէն ի վեր, միշտ եղած են Կովկասահայ գործիչներու թելադրութեամբ կամ նախաձեռնութեամբ։ Ինչպէս յեղափոխական քարոզութիւնը նոյնպէս եւ շարժումները Ռուսահայերուն կը պարտինք մենք։ Ռուսիա քանիցս յաղթած ըլլալով Թուրքիոյ, բը՜նականօրէն Կովկասի Հայերը բաժանորդ են ռուսական արհամարհոտ դիրքին հանդէպ Օսմանցւոց, մինչ աստին Տաճկահայք, ի ներքուստ ճանչնալով զԹուրքն, գիտակցութիւնն ունին Օսմանցւոյն անդիմադրելի զօրութեան իւենց նըկատմամբ, և ուստի յեղափոխութեամբ իրենց դատը շահելու գաղափարը բնականօրէն անխորհելի էր ասոնց։ Սակայն Կովկասեան կամ ժընեվական կոչուած Հայեր յաջողեցան, այն հոգեբանական գործողութեանց շնորհիւ զոր արդէն նկարագրած եմ, կամաց կամաց յեղափոխութիւնը գործնական երևցնել Կ. Պոլսոյ և արտասահմանի Տաճկահայ մտաւորականներէն ոմանց, եւ ասոնցմէ ալ ուրիշներ կարգաւ ծծեցին թիւր եւ վտանգաւոր մոլութիւնը։

Ժամանակ է, զի լաւ է ուշ քան երբեք, որ Տաճկահայքս անդրադառնանք այս մոլորութիւն-

ներուն վրայ եւ հնաւորց հայկական ողջմտութեամբ դատենք իրերն ու անձերն։ Օսմանցին առանց յատկութիւններու ցեղ մը չէ, թէեւ չունի նախկին կորովն։ Անիկա նշանաւոր եղած է իբրեւ պատերազմող եւ իբրեւ կազմակերպող ցեղ մը։ Ասոնց վրայ աւելցնել պէտք է անոր քաղաքական փորձառութիւնն ու դիւանագիտութիւնը՝ հանդերձ բարբարոսութեամբ, եւ կ՚ունենանք շատ երկիւղալի ոյժ մը մեր դիմաց։ Երբ Համիտ 300,000 Հայեր ջարդեց ու ցրեց աշխարհի հեռաւոր անկիւնները, ահագին դիւանագիտական յաղթութիւն մը տարած եղաւ ամբողջ Եւրոպիոյ վրայ, որ դաշնագրական պաշտպան էր Հայաստանի, և հարկ է խոստովանիլ թէ յոյժ անսովոր ճարտարամտութեան շնորհիւ միայն կարող եղաւ անիկա արհամարհել կամ անզօրութեան մատնել վեց մեծ Պետութիւնները որոց իւրաքանչիւրը՝ առանձին առած՝ հզօրագոյն է քան զԹուրքիա։

Համիտի այս ճարտարութիւնը դիպուածական չէ, Թրքաց բնորոշ որպիսութիւններէն է։ Օսմանցիք չէին կրնար կայսրութիւն մը հիմնել ու պահպանել այսքան երկար եթէ չունենային ինչ ինչ կարողութիւններ բարձր աստիճանաւ։ Ռօլինսըն, պարզելէ յետոյ այն նկատողութիւններն որք կը ցուցնեն թէ Պարթեւք Դուրանեան ցեղէն էին եւ Հոնաց, Քալմունքներուն, Թաթարաց եւ Թրքաց ցեղակից, կը յաւելու.

«Միջին դարուց և շատով մը նոյն իսկ արդի Թրքաց պէս, Պարթեւք մեծ չափով ունէին կառավարական կամ վարչական կարողութիւն...։ Թրքաց նման, անոնք մեծ զինուորական քաջութեան հետ ունէին ասիացւոց մէջ շատ սովորական չեղող ընդունակութիւն մը կազմակերպու-

թեան եւ կառավարութեան։ Օսմանցւոց պէս, անոնք ալ որպէս բարբարոս Ասիացին, թէպէտ քաղաքակրթութեան և նրբութեան արտաքին երեւոյթն զգեցան։ Օսմանցւոց նման՝ անոնք եւս հպատակ ժողովրդոց հետ շատ չձուլուեցան, այլ դարերով Ասիային իբրև տարամերժօրէն տիրող ցեղ մը, իրենց ոտնակոխ ըրած երկիրներուն մէջ բանակ դրած.»

Մեր յեղափոխական պետերն հոգ կը տանին չյայտնել իրենց հետեւողաց ուրիշ կարեւոր իրողութիւն մ՚ալ երբ անցեալ յեղափոխութեանց վրայ կը խօսին։ Արդի, մանաւանդ մերօրեայ կառավարութիւններն զինուորական գործողութիւններն այնպէս մեքենաւորած են և զէնքերն այնքան հզօր են որ ժողովուրդները, նոյն իսկ հօծ և միասեռ հասարակութիւններ, կը վախեն զինու զօրութեամբ իրենց կառավարութեան դէմ ելլել։ Դժգոհ ժողովուրդներն ստիպուած են, ի ներկայութեան չափազանց հզօր եւ խոշոր զինուորական ուժերու, սպասել պարագայից ամենապատեհ զուգադիպութեան մը որպէս զի յեղափոխական միջոցներու դիմեն յաջողութեան բանաւոր յուսով։ Նոյն իսկ Ռուս ազգը իր անհուն բայց անկազմակերպ ուժերով չի համարձակիր ոտքի ելլել և այսօր հազիւ կը սկսի խլըրտիլ երբ կառավարութիւնը իր զինուորական զօրութեան կարեւոր մէկ մասը հեռուն Ճափոնի դէմ տարած և բազմակրկնակ պարտութիւններ կրած է։

Եթէ մենք անբաղդատելիօրէն աւելի նպաստաւոր պայմաններու տակ գտնուող ժողովուրդներ անգամ ստիպուած են այնքան մուռ ընել ու սպասել դէպքերու յաջող թաւալումին իրենց

իրաւունքներն ձեռք բերելու համար, մենք ի՞նչ կ'ուզենք Հայ ժողովուրդէն. կ'ուզե՞նք որ անոնք գերբնական օգնութեան մը սպասէին ինչպէս ըրին մոլեգնեալ Հրեայք. կ'ուզե՞նք որ հայ ժողովուրդը, Եւրոպայէն հեռու, առանց ծովեզերեայ ոևէ դիւրութեան և հաղորդակցութեան, իր դաշտերուն ու ձորերուն մէջ զինեալ բարբարոսներէ շրջապատուած, ցրուած, ուժասպառ եւ գրեթէ սրտաբեկ, ելլէ անկազմակերպեալ և անզէն ապստամբութեամբ մը կանգնի խաժամուժին եւ կանոնաւոր այնպիսի բանակներու դէմ որք տակաւին պատկառելի են մեծ Տէրութեանց առջեւ անգամ....։ Ո՛չ, հայ յեղափոխականներ, ո՛չ, ատիկա ազգային անձնասպանութիւն կ'ըլլար։ Եւ մտածեցէք ու դողացէք, եթէ Հայաստան թմրած վիճակի մէջ կրցած է դարերով իր գոյութիւնը պահել, կրնայ անիկա, եթէ այս խօլ ուղղութիւնը շարունակուի, հինգ կամ տասը տարիէն, նորէն ու նորէն արիւնլուայ ու աւերակ՝ ըլլալ Հայուն համար առ յաւէտ ինչ որ Պաղեստին է Հրէից համար։

# ՀԱՅ ՅԵՂԱՓՈԽԱԿԱՆ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆՆԵՐՆ ԵՒ ՀԱՅ ԺՈՂՈՎՈՒՐԴԸ

## ԳԼՈՒԽ Զ·

Հայ յեղափոխական ճիգը իբրև մեր ուժերէն բոլորովին վեր բռնազբօսիկ հետապնդում մը, ինչպէս ապացուցուեցաւ Նախորդ Գլխուն մէջ, մանաւանդ 1896էն ի վեր՝ վիթխարի տխմարութիւն մ'է· և որովհետև այդ հետապնդումը Հայաստանի ներկայ կացութիւնը աւելի դժոխըմբեր ընելու և ապագայն աՀաւորապէս վտանգելու կը ծառայէ, անձնասպանական է։

Յեղափոխական ընկերութիւններն պէտք է դատենք ուրիշ տեսակէտէ մ'ալ։ Անոնց գործունէութեան ՄԵԹՈՏՆԵՐՆ մեր ժողովրդին վրայ ի՞նչ կարևոր ազդեցութիւններ կը գործեն, անոր բարքերը, խորհելակերպը, Նկարագիրը, ոգին ի՞նչպէս կ'եղանակաւորեն։ Հարկ է քննել թէ այդ փոփոխութիւնը Նպաստաւո՞ր է թէ վնասակար, ազգը կը զօրանա՞յ թէ կը տկարանայ իր ներքին ուժերուն մէջ։

Հասկնալի է որ ժողովուրդ մը ամեն կրօնական, տնտեսական, կրթական խնդիրներու վրայ համաձայն չըլլայ, բայց ազգային ճգնաժամի մը ատեն հարկ է որ մահու և կենաց խնդրոյն լուծման եղանակին վրայ համաձայն ըլլայ և կարենայ

համախումբ գործունէութեամբ իր ճիգերը թափել։ Մեր ազգին համար անհրաժեշտ է որոշել վճռականօրէն թէ յեղափոխութեա՞մբ պիտի հասնի իր նպատակին թէ խաղաղ զարգացման միջոցներով։ Այս մասին ընդհանուր համաձայնութիւնը կատարուած տեսնելու համար անձկանօք կը սպասենք մեր յեղափոխական ընկերութիւններուն դարձին յազգային ուղղութիւն։ Մեր այս բարեկամները պարտին ընդունիլ թէ 1896էն ի վեր իրենց բոլոր քարոզութիւնը անօգուտ եղած է հայ ժողովուրդը յապստամբութիւն միտեցնելու։ Վայրագ իրականութեան ահագին ճնշումը չի թողուր մերայնոց յանձնուիլ այլ եւս երեւակայական ծրագիրներու որոց ունայնութիւնն ու մահացութիւնը այնքան ահեղօրէն ապացուցուած է։ Եւ ի՞նչպէս կրնան մեր յեղափոխականներն յամառիլ իրենք իրենց տկար ուժերովը եւ աւելի տկար փաստերովը մնալ վտանգաւոր եւ անել ճամբու մը մէջ, ուր ազգին ուժերը կը ստորաբաժանեն ու կը վատնեն եւ շատերու շփոթութեան և անվճռականութեան պատճառ ըլլալով կը թուլցնեն ազգային ճիգը։

Ոչ նուազ ցաւալի է նաև որ մինչ յեղափոխականներն անսպառ եռանդով կը քարոզեն իրենց գաղափարներն, միւս կողմէն հայ ժողովրդի մտաւորական և ազգային ներկայացուցիչներն յօրինուածական ջանք մը չեն ըներ յեղափոխականներն դարձի բերելու լուրջ և հզօր ապացուցութեանց պայքարով մը։ Ոմանք այս ներքին կնճիռը անլուծելի կը համարին եւ յուսահատ են. այլք կարեւորութենէ զուրկ կը նկատեն յեղափոխական ընկերութեանց գոյութիւնը։ Սակայն

երկու կարծիքներն ալ սխալ են։ Յեղափոխականք թէեւ բազմաթիւ չեն, անոնց գոյութիւնն եւ արարքները հաշիւի կ՚առնուին թէ մեր բարեկամներէն թէ մեր թշնամիներէն։ Եւ աւելորդ է կրկնել թէ փոքր խումբ մը կարող է իր խօլ ուղղութեամբ անհուն չարիք բերել ազգի մը գլխուն։ Երբ Կաթողիկոս, Պատրիարք, ազգային մտաւորական առաջնորդներ անզօր կ՚երեւնան այս սպառնալից կացութեան առջեւ եւ թող կուտան որ խումբ մը երիտասարդներ, օտարամիտ կամ խակ գաղափարներով տոգորուած եւ հակահայկական ոգւով եւ տրամադրութիւններով ելլեն ազգային ճիգը ղեկավարել, ազգային անիշխանութեան վիճակ մը խոստովանած կ՚ըլլան ու ծանր պատասխանատուութեան ներքեւ կը մնան պատմութեան առջեւ։

Ամենեւին ճշմարիտ չէ կարծել թէ յեղափոխականներն համոզել անկարելի է. անոնք բանական են և թէև մոլորեալ, չեն կրնար փակած ըլլալ իրենց բանի դռները ապացուցութեան դէմ։ Ես անձնապէս կը հաւատամ թէ անոնք կրնան դարձի բերուիլ և այնքան աւելի որքան կը մտածեմ թէ արդէն չափով մը, գոնէ Հնչակեան հատուածը, միտած է ազգային ուղղութեան։ Փորձառութեամբ գիտեմ թէ լուրջ փաստերը կրնան անոնց մէջ անկեղծ եւ ընդունակ հողի հանդիպիլ եւ արգասաւորիլ։ Յեղափոխութեան ամենէն տաք և ժողովրդական շրջանին մէջ իսկ, 15 տարի առաջ, ես սկսայ այս փորձն ընել, այն ատեն ծայրագոյն յանդգնութեան փորձ մը, 1891ին հիմնելով «Հայք» թերթը, եւ, առանց սընապարծութեան կ՚ըսեմ, չափով մը արդիւնաւոր

եղան ջանքերս, թէպէտ ոչ անմիջական։ Այդ շրջանին ես ալ կը հաւատայի դիւանագիտական բնոյթ ունեցող ապստամբութեան մը, եթէ (1) այդ շարժումը ըլլար լուրջ ազգային ղեկավարութեամբ և ոչ թէ այս կամ այն խմբի խելքին համեմատ.-(2) եթէ մեծ պետութիւններէն գոնէ մին մեր դատին պաշտպանութիւնը յանձն առնէր․ սակայն համոզուած էի թէ «մեր երկիր և մեր ժողովուրդ չեն կրնար փրկուիլ այս կերպով։ Հայկական խնդրոյ լուծումն յանհունս աւելի դժուարին է քան բազումք կը թուին կարծել...» եւ կը պնդէի թէ՝ հարկ էր փորձառու և կարող Հայերէ բաղկացած Կեդրոնական Յանձնախումբ կամ Ազգային Վարչութիւն մը կազմաւորել ազատ հողի վրայ որուն պաշտօնն ըլլայ «միութեան կապ հաստատել մայր Հայրենիքին, գաղթականութեանց, Հայասիրական ընկերակցութեանց և ազգային գործիչներու մէջ, եւ կազմակերպել ու վարել ազգային շարժումն հայրենասիրական։» (ՀԱՅՔ, 15 Յունուար, 1891)։ Կը բողոքէի նաև յեղափոխականաց ընկերվարական գոյնին, չափազանցեալ պահանջներուն, անարդար մեթոտներուն, և բռնազբօսիկ խլրտումներուն դէմ։ «Ծայրայեղներն կը գահավիժին իրենց մոլար գնացից մէջ, և իրենց անբարոյական միջոցներով կը պղծեն այն մեծ գործ զոր սուրբ կը կոչեն։.-Դուք, ծա՛յրայեղներ, ընկե՛րվարականներ, ա՛նիշխանականներ, ինչ ալ որ կոչէք դուք զձեզ, մենք զձեզ ապստամբներ և անխոհեմներ կը հռչակենք։ Դուք չափազանց յեղափոխական էք եւ հազիւ բանական Հայ։» (ՀԱՅՔ, 1 Մայիս, 1892)։

Երկու հիմնական կէտի վրայ ուշադրութիւն կը հրաւիրէի անդադար, նախ թէ կազմակերպըուած և կեդրոնական ազգային ղեկավարութեան տակ գործող ուժերով միայն կարելի է մեր ժողովրդին անպատրաստութիւնը դարմանել, և երկրորդ, թէ պէտք է մեր պահանջը չափաւոր ըլլար։ "Ողջմտութիւնը կ'արգիլէ զմեզ յուսալէ թէ Հայաստան բոլորովին անկախ երկիր մը կրնայ լինիլ, երբ մեր խնդիրն ընդունելութիւն գտնէ ունէ միջոցով։ Սաչափն յայտնի կ'երևի թէ Հայկական Գաւառներն նախ բարեկարգութեան շըրջանն պիտի մտնեն, երբ մտնեն։" (Հ. Փետր. 15, 1893)։ "Եթէ մեր նպատակն է բարեկարգութիւն, կարօտ ենք բարեկարգիչներու, եթէ արդարութիւն կը խնդրենք, պէտք են մեզ արդարասէրներ...։ Ոչ տգէտ բարեպաշտութիւն և ոչ գիտուն սատանայութիւն է մեզ փրկաւէտ, պէտք է ուղիղ սիրտ եւ մշակուած միտք։ Գուցէ ոմանք կարծեն թէ այսպէս խօսիլ՝ օդը ծեծել է։ Բայց պէտք է լաւ համոզուիլ թէ ազգին ներկայ ձըգտումներն չարաչար յուսախաբութեան պիտի յանգին եթէ առաջնորդք վրիպին ազգային փըրկութեան բուն հիմերն դնելէ։" (Հ. Մարտ 15, 1893)։

Յեղափոխականներուն կողմէ բարկութեան մեծ փոթորիկը շղթայազերծ արշաւեց "ՀԱՅՔ"ի դէմ՝ երկար եւ աւելի խիստ քննադատականի մը առթիւ որոյ հիմնական կէտերն միայն կը ներկայացուին հետեւեալ ամփոփման մէջ.— .

"Երբեք մտածե՞ր էք թէ ազգ մը կարող է իրեն աւելի թշնամի լինիլ քան զիւր յոռեգոյն թշնամիներն։ Սոսկալի է ըսել, բայց

պիտի ըսեմ թէ ահա մենք այդպիսի ժողովուրդ մ'ենք։... Դաշնակցականք և Հնչակեանք թէպէտ թուով փոքրիկ, հանեցին աղմուկ մեծ, եւ Թրքաց կասկածոտ եւ Հայոց յուսալից ուշադրութիւնը գրաւեցին։... Գալատն որ արդէն վարչական ինքնօրինութիւն խնդրող Հայերուն անգամ խեթիւ կը նայի, միթէ զարմանալի՞ է որ մոլեգին զայրացմամբ վարուի անոնց հետ որք ինքնօրինութեամբ գոհ չլինելով անկախութիւն կը պահանջեն եւ հայկական գաւառաց բարւոք վարչութեան խնդրէն դուրս օսմանեան երկրին և գահուն վերաբերեալ ընդհանուր խնդրոց միջամուխ ըլլալու երեւոյթն ունին, այսինքն ամեն կարգի վէճ, յուզում, հակառակութիւն քաջալերելու յոժար խռովայոյզներ կ'երեւին։ ...Արաբկերի, Մարզուանի եւ Կեսարիոյ կողմերն մի քանի գործեր, յայտարարութիւններ փակցունել, հրոսախմբային յարձակումներ, սպանութիւններ տեղի ունեցած են։ Արդիւնքը շատ ողբալի է. ամբողջ գաւառներ սարսեցան սարսափեցան, հարիւրաւոր Հայեր բանտարկուեցան, մեծ մասը բոլորովին անմեղ, հազարաւոր ոսկիներու կորուստ եղաւ Հայու քսակին, մի քանիք կախաղան հանուեցան և աւելի շատեր ալ յանդարձ մահաբոյր աքսոր յղուեցան։ Շատ կը խաբուինք եթէ ենթադրենք թէ սոյդ տառապանաց, այդ չափազանց ճնշման տակ ժողովուրդն բարոյական օգուտ քաղած լինի, սիրտ առած լինի եւ քաջալերուած։ ... Հայոց ապստամբական բոցն ամեն անգամ չնչին, դիւրաշէջ բոց մ'է եղած՝ նման տղայական հրավառութեան, բայց կառավարութեան պատիժն անհամեմատ խիստ եւ սարսափելի եղած է Հայոց վրայ։ Որպէս թէ քիչ կր հարստահարուէր մեր ժողովուրդը, պէտք է տղայական ցոյցերու համար ալ կրկնապատկուէին իր տա-

ռապանքը։ ... Եւրոպացւո՞ց վրայ ինչ տպաւորութիւն կը գործեն մեր այս տխմար ընթացք։ Նոքա մեծ մասամբ այն համոզումն ունին թէ Հայք ցրուած եւ անզէն լինելով չեն կարող ապստամբիլ։ Երբ կը լսեն թէ Հայոց մէջ պնդողներ կան ապստամբութեան հարկին եւ հնարաւորութեանը վրայ, սկեպտիկօրէն կը դիտեն եւ երբ կը տեսնեն թէ որպիսի ձախող շարժումներ կը լինին մեր մէջ, բնական է որ այն եզրակացութեան հասնին թէ Հայքս ոչ միայն տկար ենք այլ և տխմար, ոչ միայն ցրուած այլ եւ ցնորած, եւ կը նմանցունեն մեզ աւանակի որ գռալով կր մազէ գայլին առջեւ եւ կը փարատուի։" (ՀԱՑՔ, 1 Նոյ. 1893)

Վերի գկծեցուցիչ դիտողութիւնները շատ անիրաւ երևցան այն ատեն Հնչակեանց որոնք իրենց ամենէն խանդավառ շրջանին մէջ էին եւ "ՀԱՑՔ"ը անասելի նախատինքներու նշաւակ եղաւ, սակայն ջարդերէն վերջը սկսան եղանակաւորել իրենց համոզումներն, և օր մը իրենց պետերէն մին, Գ. Ջ. ինծի կ'ըսէր. "Հիմա մենք ընդգրկած ենք այն համոզումներն զորս դուք կը հռչակ'էիք հինգ-վեց տարի առաջ։"

Իրօք ջարդերէն յետոյ Հնչակեանք հերձուած մ'ունեցան իրենց մէջ։ Տաճկահայ անդամներն գահընկէց ըրին իրենց Կովկասահայ պետերը, իրենց ծրագրէն արտաքսեցին ընկերվարականութիւնը, ցոյցեր ընելու շրջանը վերջացած հռչակեցին։ Քանի մը հոգի յարած մնացին հին պետին եւ դրութեան, սակայն մեծամասնութիւնը կը ճանչցուի անկէ ի վեր "վերակազմեալ" Հնչակեան անունով։ Ասոնց վրայ է իմ ընելիք դիտողութիւններն, զի ասոնցմէ կը սպասեմ առաջին

շարժումը դէպ ի նոր ուղին։ Եւ յուսալով թէ խղճամիտ և լուրջ ուշադրութեան կ'առնեն, իրենց առջև կը դնեմ նախ և առաջ սա հիմնական դիտողութիւնը․—

Վերակազմեալներուն այժմու քաղաքական դաւանանքն ու քարոզն հիմնապէս սխալ են ու վնասակար։ Անոնք ամենայն խստութեամբ կը քննադատեն Դաշնակցականաց ցոյցի, յեղափոխական խլրտումներու քաղաքականութիւնը իբրեւ ազգասպանութիւն, բայց կը վրիպին տեսնելէ թէ իրենք եւս նոյն աշխարհավարութեան կը հետեւին, թէպէտ քիչ մը տարբեր երեւութի տակ։ Բացատրենք այս կէտը։

Հնչակեանք կը քարոզեն բեմերէն եւ իրենց թերթերովը թէ մեծ ու տոկուն ապստամբութեամբ մը պիտի փրկուի Հայաստան, եւ թէ իրենք այդպիսի ընդվզում մը պատրաստելու գործովը զբաղած են եւ կամ զբաղիլ կ'ուզեն։ Այս ընթացքն ալ Դաշնակցականին համաշունչ է ոգւով։ Դաշնակցականք երբեմն երբեմն խլրտում մը կը սարքեն զոր Թուրք կառավարութիւնը ջախջախելու առթիւ իր բարբարոսութիւններն ընդարձակօրէն ի գործ կը դնէ։ Հնչակեանք շընորհքով ապստամբութիւն մը կ'ուզեն պատրաստել զոր Թուրքը կարող չըլլայ դիւրաւ զսպել և որոյ գոռին Եւրոպա չկրնայ խուլ ձեւանալ։ Ասիկա ուրիշ բան չէ բայց եթէ սպառնալ Թրքին․ "Թո՛ւրք, դուն կեցիր որ տեսնես մենք ինչ պիտի ընենք․ ո՛չ Դաշնակցականներուն պէս, այլ յաջողութիւն խոստացող տոկուն ապստամբութիւն մը պիտի հանենք քեզի դէմ։" Եւ թշնամին ցամնալիր ու գրգռեալ՝ իր գործնական պատաս-

խմբը կուտայ Հնչակեանց. «Պարո՛ններ, ես անդադար հոգ պիտի տանիմ որ ձեր ժողովուրդը չկազդուրուի, զէնք չունենայ, չհարստանայ, չշատնայ, լուիկ բնաջնջումի քաղաքականութիւնը ընդարձակօրէն և անդուլ յառաջ պիտի մղեմ եւ ձեր ժողովուրդին համար տոկուն ապստամբութիւնը ցմիշտ անկարելի պիտի ըլլայ»:

Ուրեմն մինչ Դաշնակցական խլրտում մը անմիջական կոտորածի կամ չարչարանքի առիթ կ'ըլլայ այս կամ այն գաւառի մէջ, Հնչակեանց դիրքն ալ ընդհանուր հալածանքի և յուշիկ բնաջնջումի քաղաքականութեան ույժ կուտայ եւ հայատեցութեան կրակը կ'արծարծէ:

Եթէ հայկական յաջող յեղափոխութիւն մը հնարաւորութեան սահմանէն դուրս չըլլար իսկ և Հնչակեանք զայն պատրաստելու լրջօրէն զբաղած ըլլային, իրենց պարզ պարտաւորութիւնը պիտի լինէր, հետեւելով Կամպէդդայի խրատին առ ջախջախեալն Ֆրանսա, "N'en parler jamais, y penser toujours." (Անոր վրայ ոչ երբեք խօսիլ, հանապազ անոր վրայ մտածել:) Այս խրատը այն ազգին տրուած է որ Աւստրիոյ եւ Ռուսիոյ կայսրներուն միացեալ բանակը ջախջախած, Պէռլին ու Վիէննա յաղթանակով մտած, բովանդակ Եւրոպան իր գերակշիռ զօրութեան առջեւ խոնարհեցուցած էր, և կրնար, առանց ծաղրելի երեւնալու, վրէժի ու յաղթութեան վրայ խօսիլ: Մենք ուրեմն ո՛րքան տխմար եղած կ'ըլլանք շարունակ խօսելով ապստամբութեան մը վրայ զոր ի գլուխ հանելու կարողութենէն այսքան յայտնապէս զուրկ ենք: Ի՞նչ անուն տալու է այս բանին: Անգլիերէն լեզուն՝ որոշ բացատրութիւն մը

տունի, bluff, այսինքն հակառակորդը վախցնելու համար զօրութեան և միջոցներու ինքնավստահ եւ ուռուցիկ արտայայտութիւն մը, յոխորտանք։ Երբ Քուրոբադգին տարի մ'առաջ յայտարարեց թէ Թօքիյօի մէջ պիտի հրամայէր խաղաղութեան պայմաններն; ռուս կայսրութեան վիթխարի զօրութիւններն ունէր իրեն կռնակ, և սակայն յոխորտանքի տպաւորութիւն ըրաւ անոնց վրայ որք քիչ մը կը ճանչնային ծաբօնի զօրութիւնը։ Մեր յեղափոխականներուն յոխորտ յայտարարութիւններն ամեն նկատմամբ վնասակար են ու արտառոց, զի զօրութիւն չունին իրենց ետև և յոխորտանքը կը ծառայէ լոկ իբրեւ մորակ մը թուրք կատաղութեան։

Ցիմարական յոխորտանքի ամենէն ահռելի օրինակները Դաշնակցականաց բերաններէն արձակուած են։ Անոնց առաջնորդներէն մին, 1901ին խօսելով զէնքի պէտքին և պատրաստութեանց վրայ Սասունի մէջ, ջանք կ'ընէ ընթերցողներուն ցոյց տալ Դաշնակցութեան մեծ դերն այն կռիւներուն որուն կը վարանին եղեր ոմանք հաւատալ. «Յեղափոխական ծրագիրներուն չհաւտացիք» կը գոչէ, "անո՛ր համար է որ չտուիք, չզոհեցիք— այսպէս կ'արդարանայիք ու դեռ կը փորձէք արդարանալ...։ Արտասահմանի հայութիւնը չգիտցաւ գնահատել այդ ճիգերը, ուրացաւ իսկ, և միայն օտար մը գտնուեցաւ, գերմանացի մը,... որ հարկադրուեցաւ ճշմարտութիւնը խոստովանելու։ Սերոբն ու իր զինակիրները ՀԱԶԱՐԱՒՈՐ ՀՐԱՑԱՆՆԵՐ ու ՀԱՐԻՒՐ ՀԱԶԱՐԱՒՈՐ ՓԱՄՓՈՒՇՏՆԵՐ փոխադրած են, կ'ըսէ Վ. Պէյք, թիւրք և քիւրտ աղբիւրներէ քաղելով։" Եւ քիչ

մը աւելի պարզելով «յեղափոխական այն խոստմնալից խլրտումը որուն թատրը եղաւ Տարօնը,” կը վերջացնէ յօդուածը սա կարեւոր յայտնութեամբ «այս անգամուան կռիւը վերջինը պիտի ըլլայ... գործի՛ ուրեմն... եկած է օրը։” (ՀԱՅՐԵՆԻՔ, 5 Հոկտ. 1901։) Եւ Դեկտ. 21 ի թուով, նոյն նիւթին վրայ խօսելով կը ծանուցանէ թէ “Երկրին մէջ Յեղափոխական շարժումը ոչ միայն կանգ առած չէ, այլ օր աւուր զարգանալու վրայ»։

Հնչակեաններն իրենց մասը Տարօնի, Սասունի կամ այլ գաւառի վրայ չեն դներ եղած յառաջդիմութիւններ ցոյց տալու համար, բայց և այնպէս ընդհանուր կերպով մինչեւ այսօր կը խօսին Յեղափոխութեան խոստմնալի՛ր ընթացքին վրայ, “ի՛նչ խորարմատ աճում, ի՛նչ հզօր ծաւալ եւ ի՛նչ արգաւանդ ընթացք ստացած է այլ եւս ճշմարտապէս ԱԶԳԱՅԻՆ յեղափոխական Գործը”։ (ՁԱՅՆ ՀԱՅՐԵՆԵԱՑ, փետր. 1, 1905։)

Շատ խորունկ մտածելու պէտք չկայ թափանցելու համար այս յայտարարութեանց “ռէքլամ”ական բնոյթին՝ որ տնտեսական ու կուսակցական ճաշիներէ կը ներշնչուի եւ որուն հաւատ ընծայողներ բացառիկ են նոյն իսկ արտասահմանի հայութեան մէջ։ Սակայն “ռէքլամ”ը, Թուրքեւհայ պայքարին տեսակէտէն, bluff ի եւ յոխորտանքի բնոյթ ունի որուն ազգաւեր ազդեցութիւնը արդէն չափազանց պարզ էր, զոր Սասնոյ վերջին եղերերգութիւնն եկաւ աւելորդ անգամ մը եւս պարզելու։ 1901էն սկսեալ Դաշնակցականք հրապարակաւ պարծեցան թէ բազում հրացան եւ մեծաքանակ փամփուշտ փոխադրած են եւ յեղափոխական խոստմնալից խլրտումի մը աւետիսը

հուշակեցին։ Ի՞նչ եղաւ արդիւնքը.— Թուրք կառավարութիւնը հսկեց եւ պատեհ վայրկենին իր բանակներով պաշարեց Սասունը որ՝ չկրնալով քանի մը օր գոնէ դիմադրել՝ սպառապուռ աւերուեցաւ եւ իր հազարաւոր քաջերն ու մանկտին խողխողուեցան։ Բնական է որ Թուրք բանակին հրամանատարն զարմացած ըլլայ տեսնելով թէ Սասնոյ զօրութիւնը որքան անհամապատասխան էր մեր թերթերուն տուած չափազանցեալ տեղեկութիւններուն։ 1894ի ջարդէն ի վեր տասը տարի միայն անցած էր եւ չէր ակնկալուեր որ Սասուն ի վիճակի ըլլար նոր եւ աւելի տոկուն յարոյթ մը փորձելու, դեռ սերունդ մը անցնելու էր որ գաւառը վերստանար իր նախկին ոյժը. բայց յեղափոխականներն կը յայտարարէին թէ իրենք Սասունին հայթայթած էին հարկաւոր միջոցները, բան մը որուն Թուրքը աւելի հաւատաց քան թէ Հայը։ Անգլիական փոխ-հիւպատոսի տեղեկագրին քանի մը տողերը կը բաւեն 1904ի յարոյթը որակել, իբրեւ բռնազբօսիկ եւ ինքնասպանական խըլըրտում, յոր բնաւ չպիտի գային Սասունցիք եթէ իրենց ողջմտութեանը թողուած ըլլային։ Ահա ինչ կը հաւաստէ յիշեալ տեղեկագիրը. "Այս տարուան դէպքերը բնաւ առիթ չընծայեցին այնպիսի միջնորդութեան մը որպիսի տեղի ունեցաւ ի Զէյթուն, քանզի ընդվզեալներն կռուին սկիզբէն ետ մղուեցան եւ ի վիճակի չգտնուեցան կարեւոր ամրոց մը յանձնելու կամ ոեւէ այնպիսի զիջողութիւններ ընելու որ խարիսխն ըլլալու են արդիւնաւոր բանակցութեան։"

Անգաղտնապահութիւնը, անդիւանագիտութիւնը, ցուցադրական տխմար մեթոտը սկիզբէն

խմբեր բնորոշած են մեր յեղափոխական ընկերութիւններուն մեթոտները եւ մեծապէս օգնած թշնամւոյն յաջողութեան։ 1895-96 ի ընդհանուր ջարդերուն առեն եւս Կառավարութիւնը, մեր թերթերուն յախորտանքէն այնպէս կասկածելով թէ Հայերը շատ զէնք եւ պատրաստութիւն ունէին կռուելու, ծայրագոյն եւ բազմակողմանի զգուշութիւններ ձեռք առաւ, Հայոցմէ զէնքերը պահանջեց, բազում ուրեք Քրդերը իր կանոնաւոր զօրաց յաջակցութիւն հրաւիրեց, եւ մահմետական հասարակութիւնը զինեց։ Անո՛ր համար ջարդերը սպասուածէն աւելի ահաւոր եղան։ Պոէրները որ մտադիր էին Մեծն Բրիտանիոյ հետ չափուիլ, իրենց զինուորական պատրաստութիւնները գաղտնի պահեցին, ջանացին իրենց եղածէն նուազ զօրաւոր երեւիլ որպէսզի թշնամին յանկարծակիի բերէին։ Մեր յեղափոխականներն, ընդհակառակն, ոչ միայն լուրջ պատրաստութիւններ չեն ըներ, այլ եւ կը գրախօսեն իրենց չունեցած ուժերուն եւ պատրաստութիւններուն վրայ, կը գոռգռան թէ եւ չանթ տեղալու զօրութիւն չունին, որպէսզի թշնամին զիրենք իրենց եղածէն [illegible] կարծէ եւ այնպիսի մծ զօրութեամբ իրենց վրայ՝ այսինքն Հայ գաւառներուն վրայ՝ վազէ որ մերայնոց ջախջախումը արագ եւ անվրէպ ըլլայ։ Այս գործելակերպով իրենք իրենց մատնիչներ եւ ազգին թշնամիները կը հանդիսանան։

Սակայն եւ այնպէս Մեր Պարոնները մինչեւ այսօր կը շարունակեն ապշեցուցիչ յաւակնոտութեամբ խօսիլ իրենց մեծ դերին ու ազդեցութեան վրայ։ ‘‘Հնչակեանութիւնը,’’ ըստ իրենց

յայտարարութեան, ‘‘1904ին աւելի քան երբեք զգաց՝ թէ ցեղին տանջանքները, յոյսերն ու հաւատքը կը մարմնաւորէ ինք, եւ թէ ազգային հոգին իրեն կ'ապաւինի, իրեն կը կառչի, իրեն հետ կը բաբախէ։ ’’(ՁԱՅՆ ՀԱՅՐԵՆԵԱՑ, փետր. 1, 1905)։

Օ՜, օ՜, օ՜։

Քիչ օրեր յետոյ, ողբալով դառնակսկիծ մահը ընկերի մը, թերթը կ'ըսէ թէ անիկա ‘‘անոնցմէ էր՝ որոնք Հնչակեանութենէ դուրս կեանք չունին ու չեն կրնար չունչ իսկ առնել... Հնչակեան կուսակցութիւնն եղաւ անոր մտածումն ու էութիւնը լեցնող միակ հոգը, տենչանքը, հաւատքն ու պաշտամունքը։’’ Որ Հնչակեան մը այս աստիճան փարած ըլլայ իր կուսակցութեան եւ պաշտած ըլլայ զայն, այդ կարելի է, սակայն, նայելով տրուած նկարագրութեան, ոչ ամեն Հնչակեանի համար կրնայ այդ բանը ըսուիլ, իսկ երթալ մինչեւ յայտարարել թէ ազգային հոգին Հնչակեանութեան փարած, անոր ապաւինած է, այդ բնականօրէն բացագանչել կուտայ—Օ՜, օ՜, օ։

Եթէ իրաւ Հնչակեանութիւնը կը հաւատայ թէ «ազգային հոգին իրեն կ'ապաւինի, իրեն կը կառչի,» անիկա բաւական բացատրութիւն մը կրնայ համարուիլ այն միւս յաւակնութեան որով Հնչակեանք իրենք զիրենք ազգին ամենէն անձնուէր պաշտպաններն ու հարազատագոյն զաւակները կը հռչակեն, և պետերը համարձակ կ'ըսեն թէ ազգին ամենէն անկեղծ և ազնիւ եւ անձնուէր տարրերը իրենց շարքերուն մէջ խմբուած են, իբր թէ բարձր տեսակէ հայ ցեղ մը կազմած են։

Ինքնահաւանութեան այդ զգլխիչ բարձրութենէն նայելով՝ բնական է որ իրենց շարքերէն դուրս մնացած Հայերը շատ պզտիկ տեսնեն, եւ թանիմացութենէ ու քաջութենէ զուրկ։ Դաշնակցականներն "սեւացրէք"ի մեթոտն յաճախ կը կիրարկեն իրենց հակառակորդներն հարուածելու համար երբ դանակի դիմելու ատրճան բարկացած չըլլան. իսկ Հնչակեաններն այդքան յառաջ չերթալով՝ կը շատանան վէս վարմունք մը ցոյց տալ յապացոյց իրենց գերազանցութեան, թէպէտ պատահած է որ ոմանք հրապարակային ժողովի մէջ իրենց դիմախօսներուն գլուխը կոտրելով իրենց ազգանուէր կորովն ու յեղափոխականի քաջութիւնը աւելի պայծառօրէն ի հանդէս բերել ուզեն։

Ուրիշ ոչ նուազ ողբալի կողմ մ'ալ ունի մեր յեղափոխական ընկերակցութեանց խնդիրը։ Երբ ազգի մը անհուն մեծամասնութիւնը անկարելի կը նկատէ յեղափոխութիւնը եւ միայն մէկ կամ երկու խումբեր կան ապստամբութիւն դարբնելու մոգական արուեստովն զբաղած, ի հարկէ տնտեսական դժուարութիւններու կը հանդիպին։ Իտալական յեղափոխութեան ատեն, 1859ին, ժողովուրդի դրամը հեղեղի պէս վազեց Կարիպալտիի զինուորական արկղը, Լոմպարտայի ափկիններու օղերուն, ոսկի ապարանջաններուն հետ, այնպէս որ ԵՐԿՈՒ ԱՒՈՒՐ մէջ հաւաքուած գումարը ԵՐԿՈՒ ՄԻԼԻՈՆ ՖՐԱՆՔԻ հասաւ։ Զօրաւոր պատճառներ կան հաւատալու թէ հայ ժողովուրդըն, հայ կինն ալ ընդունակ են այդ բանը ընելու եթէ հաւատան յաջող յեղափոխութեան, եթէ տեսնեն իմաստուն ծաւուրներ ու անձնուէր

Կարխպալտիներ գործին գլուխը։ Բայց Հայերը ողջմտութիւնն ունին անձերը և պայմանները զանազանելու։ Հայ մեծատուն մը, Եւրոպաբնակ, որմէ յեղափոխական Հայեր գումար մը ուզած էին, սա կորովի բանաձևով պատասխանած էր. "Ես իմ դրամովս ազգիս դահիճ ըլլալ չեմ ուզեր։" Անշուշտ նոյն համոզումն ունէր նաև դրամատէր Ժամհարեանը զոր Դաշնակցականք ըսպաննեցին ի Մոսկուա։ Ժամհարեան հայ որբանոցի մը պէտքերը կը հոգար, բայց որբերու թիւը իր դրամովը շատցնելու փափաք չունէր։ Նմանօրինակ պատճառներով սպաննուած է Հարուստ Գալեօզեանը ի Զմիւռնիա։ Աւելի թարմ օրինակ մ'ունինք յանձին ռուսահայ Գախալեանի որ կոմիտէի սպառնալից նամակներուն դրամական պահանջման գոհացում չէր տուած և զոր անցեալ Նոյեմբերի 10ին Նովօրոսսիսկ քաղաքին փողոցներուն մէջ խողխողեցին։ Այսպիսի բռնութեան, կեղեքմանց եւ ոճիրներու շատ երկար պատմութիւն մը կարելի է գրել Դաշնակցութեան հաշուին։

Երբ իրենց այս ընթացքին դէմ բողոքէ մէկը, թէպէտ ըլլայ իրենց անդամներէ'ն մէկը, շատ եպերելի կը նկատուի եւ երբեմն մահապարտ։ Սկիզբէն ի վեր այս բռնապետական ոգին բնորոշած է զիրենք։ Գում-Գաբուի ցոյցէն ետեւ երբ Կովկասի Հայք եռ ելած էին, Դաշնակցականներն բաւական խոշոր գումար մը ունեցան իրենց տրամադրութեան տակ, եւ իրենց բոյնը դնելով Դավրէժի եւ Թրքական սահմանագլխին միջեւ, շամբանիայի գինիով զուարթ՝ մեծարանեցին, և Հայ գիւղերու բեռ եղան ի սէր ազատութեան։

Երբ իրենց ընկերներէն մէկը մտադրեց վերադառնալ ի Տփղիս և գեղծումներն ծանօթացնել, երկու ընկերներ ուղեկից եղան անոր և գիշերը յանկարծ սպաննեցին զինքը: Նոյն բռնապետական խաւարամիտ սկզբունքին ծառայողներն էին որ զԹօխմախեան վարդապետն Հայաստանի մէկ քաղաքէն խաբնօք դուրս տարին և յօշ յօշ պատառեցին, զի իրենց գործունէութեան մեթոտներուն չհաւնելու քաջութիւնն ունեցած էր: Հայրենասէր Կէրէկցեանը որ Կարնոյ մէջ սպաննուեցաւ եւ որ առաջինն եղաւ այն զոհերէն որոց սուրբ արեամբ այնքան արատաւորեցաւ. հայ յեղափոխութեան դրօշը, Դաշնակցութեան անդամ էր, բայց քննադատած էր անոնց վաղաժամ եւ յախուռն շարժումներն:

Այս բոլոր խայտառակութիւններուն և գեղծումներուն եւ եղբայրասպանութիւններուն համար հայ ժողովուրդը շատ կ'ամչնայ, կը ցաւի և կը զայրանայ, իսկ յեղափոխականները իրենք զիրենք կը շողոքորթեն թէ ազգին հարազատ զաւակներն իրե՛նք են, և թէ ազգային հոգին իրե՛նց կ'ապաւինի, իրե՜նց կը կառչի....

Այս քննադատականը բովանդակենք: Թէպէտ Դաշնակցականներն շատ աւելի ծայրահեղ և խօլ ընթացքի մը կը հետեւին քան Հնչակեանք, երկու ընկերութիւններն ալ վիթխարի մոլորութեան մը կը ծառայեն՝ ճգնելով ազգին հարկադրել յեղափոխութիւն մը որ անոր ներկայ պայմաններուն մէջ անկարելի է: Իրենց այս բռնազբօսիկ յամառ ճիգքին աղետալի արդիւնքն են.—

Նախ, յեղափոխական թմբկահարութիւն եւ յօխորտանք, որ. հայ գործաւորաց քրտանց պտու-

ղըն եղող դրամները յեղափոխական ընկերութեանց արկղները քաշելու համար կ'ըլլան, սակայն Թուրք Կառավարութեան հսկողութիւնն եւ հարուածները սաստկացնելու կը ծառայեն Հայաստանի մէջ։

Երկրորդ — Ինքնահաւանութեան ոգին որով յեղափոխական տղաքը իրենք զիրենք ազգին ամենէն բանիմաց եւ անձնուէր զաւակները եւ փրկիչները կը կարծեն։

Երրորդ — Կուսակցական պայքարներ, ընկերութեանց փոխադարձ ատելութիւն և նախանձ, որով եղբայր եղբօր դէմ անգամ կը զինուի։

Չորրորդ — Յեղափոխականաց բռնաւորական վարմունքը հայ ժողովրդին հետ, ունեւորներէն բռնի դրամ կորզել եւ չունեւորաց բեռ ըլլալ, որով ազգը բարոյապէս կը վատթարի և կը յուսահատի ներքին բռնութեան երեսէն։

Հինգերորդ — Հակառակորդները դաւով ըսպաննելու մաքիավելական սկզբունքը որով հայ տկար յեղափոխութեան ուժերուն կուտան ոճրագործական գոյն և կ'արատաւորեն հայ անունը։

Վեցերորդ — Արտասահմանի հայ երիտասարդութեան ուշադրութիւնը ցնորական հետապնդումի մը վրայ սեւեռած կը պահեն տարամերժօրէն և չեն թողուր որ ուժերը փրկաւէտ ուղղութեամբ մը նուիրուին ազգային վերածնութեան մեծ գործին։

Եւ զարմանալու չենք այս ողբալի արդիւնքներուն վրայ։ Երբ ժողովուրդ մը նախապատրաստութեան շրջաններէն անցած և հասունցած ըլլայ յեղափոխութեան մը համար, եւ համոզուած ու խանդավառ խոյանքով մը հետեւելով

իմաստուն և անձնուէր առաջնորդներու՝ նետուիլ յեղափոխական ասպարէզը, անկէ այդ մեծ ճիգին մէջ կը նորոգէ իր կենսական ուժերը, դիւցազնական ոգւով մը կ'ոգեւորի։ Սակայն երբ, ընդհակառակն, ազգ մը հասուն չէ այդ ճիգին համար, և քանի մը տասնեակ անհատներ, աննըշան փոքրամասնութիւն մը, օտարախոհ և խակամիտ գլուխներ, յետ աղետալի փորձառութեանց և զարհուրելի ջարդերու, կը յամառին ազգին անհուն մեծամասնութեան հարկադրել ապստամբական շարժումներ, ինքնագով ռէքլամներով կամ դաւակցական դաշոյնը շողշողացնելով դրամ կը կորզեն, բռնազբօսիկ բոլոր այս ճիգերը-շըթունքի թէ բազկի-կը ծառայեն ախտաւոր ուռուցիկութիւն մը տալու իրենց նկարագրին և իմաստակային դարձուած մը իրենց խորհելակերպին։ Իմաստակք և բռնաւորք կը զեղծանին ինքեանք և կը զեղծանեն ու կը տկարացնեն զոհ եղող հասարակութիւնը։

Ազգային այս ներքին չարիքը, խորունկ եւ սպառնալից վէրքերը մատնանիշ ընել ինծի դըժպհի էր, սակայն խղճի պարտք մը կատարեցի։ Բնական է որ այս տողերուն ընթերցումը ի սկըզբան դառնացնէ մեր յեղափոխականները, սակայն կը յուսամ թէ, երբ խղճմտօրէն մտմտան ու կշռեն ամեն ինչ, պիտի զգան թէ խայթոցը ճըշմարտութեան փրկաւէտ խայթոցն է։ Հնչակեաններուն կողմէն աւելի արագ դարձի մը յոյսն ունիմ, սակայն և Դաշնակցականներէն չեմ յուսահատ։ Չեմ կրնար ենթադրել թէ այս ողբալի իրողութիւնները կրնան անոնց բոլորին ալ ուշադրութենէն վրիպած ըլլալ։ Աւելի պատրաստ եմ

հաւատալ թէ արդէն սկսած են ոմանք լրջօրէն անդրադառնալ վերջին քսան տարուան մէջ ազգին կրածներուն վրայ որոնք մեծ մասամբ մեր տխմար, անբանաւոր և ցուցադրական քաղաքականութեան արդիւնք են։

Թէ Դաշնակցականք չեն կրնար յաւիտեան կոյր ձեւանալ դէպքերուն ազգաւեր ընթացքին՝ յայտնի է, օրինակի համար, այն տողերէն զորս իրենց առաջնորդներէն մին, Վարդօ, Սասնոյ 1904ի դէպքերուն վրայ հրատարակած է վերջերս Շարժումի մէջ (Դեկտ. 15, 1904).—«Տարօնը,» կ'ըսէ Վ., ''Նոյն այդ շարժումների հետեւանքով դարձաւ դժոխք. ստեղծուեց մի անտանելի կացութիւն, ոչնչացան մեր կուռ, դիմադրող ուժերը... Նոյն շարժումների հետեւանքով, այսօր Վասպուրականում էլ դժոխային կացութիւն է տիրում։''

Այս խօսքերը բարեգուշակ են։ Ոչ ամեն դաշնակցականի այդքան բացուած են աչքերը՝ տեսնելու համար դժոխըմբեր կացութիւնը ի Տարօն։ Կան որ, ապուշութիւնը խելագարութեան սահմանին հասուցած են և կրնան տակաւին սապէս գրել. ''Տարօնի, Վասպուրականի և Կովկասի 1904ի խիզախ կռիւներն ու արիւնոտ դէպքերը, Հայութեան յեղափոխական լայնածաւալ կազմակերպումը երեւան բերելով աշխարհի առջեւ, Հայկական խնդրին տուին միջազգային ցարդ չտեսնուած ոյժ մը։'' (Հայրենիք, 22 Յունվ. 1905)։
O shame! where is thy blush?

Երկու Դաշնակցական առաջնորդներու և խմբագիրներու այս անհամաձայնութիւնը բարեգուշակ է։ Լաւ է ուշ քան ոչ երբեք։ Յանհունս կը

ցաւինք որ մեր եղբայրները այսքան երկար յա-
մեցան հին ու անել ճամբուն մէջ. բայց ան-
կարելի է որ հոն մնան ցմիշտ։ Իրականութիւնը
անողոք կերպով կը տրամաբանէ իրենց հետ։

Ուրիշ ժողովուրդներ ալ անցած են մեր
ճամբէն, թէև մեր յեղափոխականներուն գնաց-
քը անբաղդատելի կերպով յոռեգոյն և տխմարա-
գոյն եղած է։ Իտալացիք ալ ունեցած են նախ
բանաստեղծական գործունէութիւն, յետոյ եղեռ-
նական ճիգեր, և վերջապէս լուրջ եւ առողջ
դիւանագիտութիւն եւ աշխատութիւններ։ Ահա-
ւասիկ թէ հեղինակ մը ինչ կ՚ըսէ իտալական
հայրենասիրութեան զանազան փուլերուն վրայ։

“Քաւուրի հետ իտալական հայրենասիրութիւ-
նը նոր փուլի մէջ կը մտնէ, անիկա իր ետեւը
կը թողու դաւակցութեանց ստուերը, ուր այն-
քան անձնուիրութիւն եւ դիւցազնութիւն վատ-
նըուեր էին բոլորովին վայրապար. անիկա յեղա-
փոխական գործունէութիւնները կը մերժէ որպէս
զի ցոյց տայ թէ Իտալիոյ անկախութիւնը Եւրո-
պական կարգաւորութեան խնդիր մ՚է, և այս-
պէս հանրային կարծիքը իր կողմը կը շահի։ Քա-
ւուր չէր մին այն խօլ մարդուկներէն որ պիտի
ուզէին Եւրոպան հրակի տալ իրենք զիրենք դժ-
ուարութենէ մը ազատելու համար։ Նա ունէր
համբերութիւնը անյողդողդ եւ հաստատակամ
մարդու մը որ իր դասին արդարութեանը վրայ
վստահ՝ պատճառ չունի դիպուածներ եւ բարե-
բաղդ պատահմունք ստեղծել իր կամաց կամաց
հասունցող ծրագիրն ի գլուխ հանելու համար։
Եթէ բաղդը մեզ մեր քնոյն մէջ չի փնտռեր,
անիկա նոյնպէս յաւիտեան խոյս կուտայ այն ան-

խոհեմ և քմահաճ ժողովուրդէն որ կ՚ուզէ զայն ձեռք ձգել յանկարծական յարձակմամբ, չկրնալով սպասել մինչև որ պարագայից ույժը իրեն փառաւորութեան առարկայն ընձեռէ իրեն։"

Վերի հատուածը կուռ է նշանակութեամբ, և մեզի համար քաղաքական ամբողջ հանգանակ մը կը պարունակէ. կ՚արժէ որ մէկէ աւելի անգամ սերտենք զայն և ուշի ուշով ստորագըծենք անոր իւրաքանչիւր տողը։ Այս կերպով կըրնանք զգալ թէ մեր դիւանագիտական ու յեղափոխական գործունէութիւնները արկածախնդիր բնաւորութիւն մ՚ունեցած են սկիզբէն ի վեր, և շատ մը դիւցազնութիւն եւ անձնուիրութիւն յանօգուտ վատնուած են։ Մենք չափազանց աճապարած ենք ու կ՚աճապարենք դեռ, և աղմըկասէր՝ կ՚ուզենք կացինով զարնել բանալ բաղդի դռները փոխանակ իմաստութեամբ դարբնելու եւ յուշիկ կիրարկելու անշչուկ բանալին։

"Յաւուր ունէր ՀԱՄԲԵՐՈՒԹԻՒՆԸ անյողդողդ և հաստատակամ մարդու մը։" Համբերութի՛ւն, ո՛ հայ հայրենասէրներ։ Ու մտածել թէ ստիպուած ենք զայս քարոզել հայ ժողովրդին որուն համբերութիւնը առասպելական դարձած է։ Սակայն հարկ է զանազանել։ Կայ տկար եւ անխոստմնալիր համբերութիւնը ստրուկին որ անտըրտունջ կը կրէ լուծը և այլևս չի հառաչեր ազատութեան կարօտով։ Մեր հայրերը այդ կերպով հնարեցին "տեւել" և անցնիլ բռնութեան դարերու մէջէն։ Գրաստական տոկունութեան շրջանը աւարտած է սակայն, և դարագլուխը բացուած է նոր ձգտումներու, յորս յաջողելու համար պէտք ունինք բարձրագոյն կարգի համ-

բերութեան մը։ Մեր երիտասարդներն չափազանց նախապաշարուած են Համբերութեան դէմ որ իրենց համար տկարութեան համանիշ է։ Անոնք թիւր ըմբռնած են Քամառ—Քաթիպայի իմաստը, "Բաւ է, Գութա՛ն, մեր տանջանքը, համբերութիւն վերջ ունի։" Ասիկա գրաստական համբերութեան կ'ակնարկէ, և ոչ այն Համբերութեան որմէ գլխաւորապէս կը կազմուի ամեն մարդկային զօրութիւն, որպէս կ'ըսէ Պալզաք․

"Tout pouvoir humain est un composé de patience et de temps." (Ամեն մարդկային զօրութիւն համբերութենէ և ժամանակէ կը բաղկանայ։)

Մարդային սեռին պատմութիւնը, իր դիւցազնութիւններուն և կայսրութիւններուն, իր աշխատող ինչպէս իր կռուող բանակներուն, իր գիւտերուն ինչպէս իր աշխարհակալութիւններուն, իր գիտական, գրական և գեղարուեստական բոլոր մեծ ու փառաւոր ստեղծագործութեանց զարմանազան նկարագրութիւններն համբերութեան հրաշագործութեանց պատմութիւնն է։

Ի՞նչ է Համբերութիւն․—Ինքզինք չրջավայրին պահանջմանց պատշաճեցնելու, առաջադրեալ նպատակին հասնելու համար ամենայարմար միջոցները ձեռք առնելու, զներկայն ապագային համար ապրելու, երկարատեւ յամառ աշխատութեամբ ուժերու լիառատ պաշար համբարելով զայն յարմար պահուն ի գործադրութիւն ծրագրուած նպատակին կիրառութեան բերելու կարողութիւնն է Համբերութիւն։

Երբեք մարդ մը կամ ժողովուրդ մը մեծ եղած չէ առանց Համբերութեան։

Պատմութիւնը կը ցուցնէ թէ այն ժողովուրդները որ յաջողած են, համբերութեամբ եւ իրենք զիրենք զսպել գիտնալով յաջողած են. կենսական պայքարի մը մէջ իրենց ոյժերն սպառած ըլլալէ յետոյ՝ ամենէն քաջամարտիկ ու արի ժողովուրդներն իսկ մնացած են 20—30 տարիներ առերեւոյթ հանդարտութեան մէջ, երբեմն նաեւ դար մը կամ աւելի սպասած են պատեհ վայրկեանին, նորէն իրենց նպատակին իրագործման համար շարժելու: Բայց մի՞թէ վատնած են այդ համբերութեան տարիները. բնաւ: Գործը ենթահոսանքներու ձեւին տակ շարունակ յառաջ մղուած է մինչեւ որ յարմար ժամուն մակերեսի վրայ ցոյց տուած է իր յաղթահարիչ զօրութիւնը:

Այս բոլոր խորհրդածութիւններէն անխուսափելի եզրակացութիւն մը կ'ելլէ, թէ հետեւելով բանին յստակ ու բարձրագոչ հրամանին՝ ՀԱՐԿ Է ՅԵՂԱՓՈԽԱԿԱՆ ԽԼՐՏՈՒՄՆԵՐՆ ՈՒ ՅԵՂԱՓՈԽԱԿԱՆ ՔԱՐՈԶՉՈՒԹԻՒՆՆԵՐՆ ՎԵՐՋԱՑՆԵԼ:

Բայց այն ատեն ալ ի՞նչ գործ կը մնայ ընելու: Ի՞նչ գործ—բուն գործը կը մնայ, հիմնականը, կենսականը: Գործ մը որուն առջեւ չկան այն ներքին ու արտաքին ահագին արգելքներն որք անհնարին կ'ընեն յեղափոխութիւնը. գործ մը բոլոր մեր ուժերուն արժանի, զոր մենք ամենքս միասին, հարուստ եւ աղքատ, Տաճկահայ եւ Ռուսահայ եւ Պարսկահայ, ձեռն ի ձեռն պիտի կատարենք:

Այս գործին վրայ երկարօրէն պիտի ճառեմ գրքիս մնացած մասին մէջ, սակայն յաջորդ երկու գլուխները պէտք է նուիրեմ մեր ազգային

դատը միջազգային տեսակէտէ քննելու եւ ցոյց տալու թէ Եւրոպա ի՞նչու չպաշտպանեց մեզ եւ թէ քաղաքակիրթ մարդկութենէն ինչքան եւ որպիսի օժանդակութիւն կրնանք խնդրել եւ ըսպասել մեր գործին յաջողութեանն համար։

## ԵՒՐՈՊԱ ԵՒ ՀԱՅԿԱԿԱՆ ՇԱՐԺՈՒՄԸ

### ԳԼՈՒԽ Է.

Հայոց վերջին թագաւորը, Լեւոն, իր ջախջախուած գահը վերականգնելու համար՝ Եւրոպայի քրիստոնեայ Տէրութեանց զինեալ աջակցութիւնը ձեռք բերելու դիւանագիտական ապարդիւն ջանքերուն մէջ յուսահատ մեռաւ և թաղուեցաւ ի Փարիզ։ Անկէ ի վեր Հայք հինգ հարիւր տարի մահմետական տիրապետութեան լուծին տակ կորացած՝ հազիւ կը յիշէին իրենց երբեմնի ազատութիւնը, մինչև որ ԺԹ դարու երկրորդ կիսուն՝ ճնշումը մեղմացաւ եւ կարող եղան իրենց գլուխը վեր առնել եւ յուսալից ակնարկ մը արձակել դէպի Արեւմուտք և դիտել չարունակ ընդարձակուող հնարաւորութեանց հորիզոնը։ Եւրոպան ու Արեւելքը տակաւ կը մօտենային իրարու եւ գաղափարներու յարաճուն հոսանք մը կուգար ոռոգել հայ իմացականութեան արգաւանդ դաշտը։ Գաղափարներու յեղաշրջումը ըսկըսաւ ձգտիլ ինքզինք արտայայտել ի գործնականին և Հայք ճարտարութիւնն ունեցան, 1863ին,

ձեռք բերել Սուլթանին արտօնութիւնը իրենց
ներքին՝ եկեղեցական ու դպրոցական գործերը՝
Սահմանադրութեան մը համաձայն, ժողովրդէն
ընտրեալ երեսփոխանութեան մը միջոցաւ վարե-
լու։

Այս յաջող և շնորհաւորելի քայլն առնելէ
յետոյ միայն տասնեւհինգ տարի անցած էր երբ
յանկարծ հայկական փառասիրութեան առջեւ խո-
յանքի ասպարէզն լայնօրէն բացուեցաւ, 1878ին,
Օսմանցւոց վրայ յաղթական եղող քրիստոնեայ
պետութեան մը, Ռուսիոյ շնորհիւ։ Ռուսիա թէ՛
Եւրոպիոյ եւ թէ Ասիոյ կողմէն իր հզօր բազուկ-
ներն բարձրացուցած էր Օսմանցւոց դէմ՝ յօգուտ
հարստահարեալ քրիստոնէից, եւ մինչ անտի
զՊուլկարիա կը փրկէր, աստի ալ զՀայաստան
կ'ուզէր ձերբազատութեան առաջնորդել իր
պաշտպանութեանը ներքեւ։ Բազում դարերէ
իվեր ոեւէ քրիստոնեայ պետութիւն մը պաշտ-
պանի դիրք առած չըլլալով հանդէպ մեր ցեղին՝
Ռուսիոյ այս առ երեւոյթս շատ վեհանձն կամա-
ւորութիւնը անակնկալ էր ու կրնար Ներսէս
Պատրիարքին թուիլ իբրեւ Նախախնամութեան
զարմանալի մէկ տնօրինութիւնը։ Ինչ որ Ռու-
սիոյ նախաձեռնութեամբ ստեղծուեցաւ Սան-
Ստեֆանոյի մէջ, իբրեւ Հայկական խնդիր վա-
ւերացումն ստացաւ Պէռլինի Դաշնագրին 61րդ
Յօդուածովն, Եւրոպիոյ վեց մեծ Պետութիւննե-
րէն ստորագրուած։ Հայք իրենց աչքը դէպ Եւրո-
պա դարձուցին՝ սիրտ ի տրոփ սպասելով անյա-
պաղ ողջունել իրենց քաղաքական ինքնօրինու-
թեան նշանակը ի ձեռն եւրոպական պաշտպանու-
թեան վերահաստատուած, իբրեւ Լեւոնի վերջնոյ

այլակերպեալ յարութիւնը եւ փառաւոր վերադարձը Եւրոպայէն ի Հայաստան։

Մեր Հայրերը դարերէ ի վեր, հեթանոս ազգերէ շրջապատուած ու չարչարուած, կ'երգէին հաւատով ու կ'աղօթէին ''Գիտացէք, հեթանոսք,·· զի ԱՍՏՈՒԱԾ ԸՆԴ ՄԵԶ է։'' Սակայն 1878 էն յետոյ մեր երիտասարդութիւնը, Պէռլինի Դաշնագիրն ի ձեռին, կարծեց կարող ըլլալ պարծանօք ըսել ''Գիտացէ'ք, Օսմա'նցիք եւ երկերո'ւք, զի ԵՒՐՈՊԱ ընդ Մեզ է։''

Դաշնագրին յարուցած յոյսերը առատ սնունդ ստացան ուրիշ աղբիւրէ մը։ Եւրոպական Մամուլը սկսաւ զբաղիլ մեր խնդրով։ Համակրական ուշադրութեան առարկայ եղաւ մեր ցեղը։ Մեր արժանիքներուն եւ մեր աղէտներուն վրայ շատ գրեցին։ Հայկական խնդրոյն վրայ վէճեր եղան խորհրդարանաց մէջ եւ պաշտօնական ըստուար տեղեկագիրներ հրատարակեցին Կառավարութիւններն։ Յետոյ առանձին հատորներ լոյս տեսան անգլիերէն, ֆրանսերէն և գերմաներէն լեզուներով։ Ասոնք և պարբերական Մամլոյ մէջ երևցած անհամար յօդուածներուն լաւագոյնները կրնան հազար խոշոր հատորներ լեցնել։ Հոս պիտի շատանամ ես յիշելով այս կարևոր հրատարակութեանց ամենէն կարևորն, գրեթէ ամենէն առաջինը, որ մեր ցեղին և երկրին ծանօթ պատմագէտ և քաղաքագէտ անձնաւորութեան մը գրչէն, լոյս տեսաւ Սան-Սթէֆանոյի դաշնագրէն քիչ յետոյ, եւ ուրիշ գրողներու իբրև առաջնորդ և ներշնչող ծառայեց։ Խօսքս Ճէյմս Պրայսի մասին է, որ ամենէն հինն ու նշանաւորն է մեր օտարազգի բարեկամաց մէջ և անկեղծ ու

իմաստուն բարեկամ մը։ Իր մեծ յօդուածը եւրեւցաւ Fortnightly Reviewին մէջ, 1878ին։ Անիկա մեզի համար պատմական կարեւորութիւն ունի և կ'արժէ որ հոս անոր ամենէն հիմնական հատուածներուն թարգմանութիւնը դնեմ ընթերցողացս առջեւ։

Պրայսի յօդուածին նիւթն է "Ասիական Թուրքիոյ ապագայն"։ Ի տես Օսմանեանց նոր պարտութեանն ու դէպ անկում ընթացքին, հարց կը ծագի թէ ինչ հնարաւոր վիճակներ կրնան երեւակայուիլ այդ երկրին համար։ Արդեօք նոր Մահմետական պետութիւն կամ հպատակութիւն մը պիտի ելլէ՞ նուաղեալին տեղը գրաւելու։ Պրայս իր պատճառները կուտայ ցուցնելու այդ պատահականութեան անհաւանականութիւնը։ Արդեօք պէ՞տք է որ երկիրը Եւրոպական մէկ կամ աւելի տէրութեանց բաժին ըլլայ. զայդ ալ դժուար ու անբաղձալի լուծում մը կը համարի։ "Ռուսիա ինքն ալ," կ'ըսէ Պրայս, "բաւական քաղաքակրթեալ կամ մտաբաց չէ ուրիշ ցեղեր կրթելու համար։ Ջանալով իր կարգի անկատար մշակութեան տիպը հարկադրել, իր դիւանակալութիւնը պիտի խղդէր ունէ ուրիշ ազգային կեանքի տիպար։"

Երրորդ հնարաւոր լուծում մը կրնայ ըլլալ այս կնճռոտ խնդրոյն—Երկրին քրիստոնեայ ցեղերէն մէկուն զօրանալով՝ քրիստոնեայ պետութեան մը կազմաւորումը։ Ահա այդպիսի ցեղ մը կայ, միակը, որ կրնայ այս դերը կատարել թերեւս, այսինքն Հայը։ Եւ Պրայս կը խօսի Հայաստանի սահմաններուն, Հայոց թուոյն և իմացական եւ բարոյական ընդունակութիւններուն վրայ։

Հայաստանի մէջ Հայոց թիւը երկու միլիոն կը դնէ։

"Գուցէ Մահմէտականաց թիւը նոյն սահմաններուն մէջ աւելի ըլլայ," կ'ըսէ, "սակայն որովհետեւ անոնք տարբեր ցեղերու կը վերաբերին, այլեւայլ են անոնց լեզուները, եւ գրեթէ անոնց կէսը թափառական բարբարոսներ են, Հայերը ամենէն կարեւոր տարրը կը կազմեն բնակչութեան։ Անոնք աւելի շատուոր են քան ոեւէ մէկ հատուածը Մահմետական բնակչաց, եւ են յանձնուս գերիվերոյ մահմետական զանգուածին՝ իրենց ճարտարագործութեամբն եւ ուշիմութեամբը...։ Օտար երկիրներներու մէջ ուր անոնցմէ շատեր գաղթած են, անոնք, ինչպէս ամեն ոք գիտէ, իբրեւ վաճառական ի հանդէս կը բերեն եզական եւ յաջող նախաձեռնութիւն, սրամտութիւն եւ յարատեւութիւն ոչ սաւրին քան զՍկովտիացւոյն եւ զՃանքիներուն...։ Ռուսական բանակին մէջ իբր երեսուն Հայ զօրավարներ կան կ'ըսուի, որոնց մէջ են Լորիս Մելիքոֆ, Տէր-Ղուկասոֆ եւ Լազարէֆ։ Նուպար փաշա, ամենէն կարող մարդն յԵգիպտոս, Հայ քրիստոնեայ մ'է։ (Կ'արժէ յիշել թէ Հայերը մեծ դեր կատարեցին իբրեւ զօրավարներ եւ կառավարիչներ Արեւելեան Հռովմէական Կայսրութեան մէջ վեցերորդ դարէն սկսեալ)...։ Հայերուն տառապանքը աւելի եղած են քան զԲուլկարացւոց կամ զԲոսնիացւոց, եւ անոնց պարագային մէջ ապստամբութեան փորձ իսկ չկայ իբրեւ անճարակ արդարացում։ Անկարելի է երեւ-

ռակայել աւելի զօրաւոր դատ մը Եւրոպական պետութեանց եւ մասնաւորապէս Անգլիոյ բարեացակամ միջամտութեան արժանի քան զՀայոցն։ Զի ի՞նչ է անգլիական քաղաքականութեան յայտարարեալ նպատակը։ Հպատակ ցեղերուն վիճակը բարւոքել, եւ պատնէշ մը կանգնել Ռուսիոյ յարձակմանց եւ ազդեցութեանց ընդդէմ։ Պէ՞տք է որ Հայերը մոռցուին մինչ Յոյներուն դատը յառաջ կը մղուի, լոկ այն պատճառով որ Հայերը ասիացի են եւ քիչ մը աւելի հեռուն կը բնակին։ Անոնք աներկբայ ոչ նուազ արժանաւոր են քան Յոյները, եւ ոչ նուազ է հաւանականութիւնը որ անոնք օգուտ քաղեն եւ ընծայեն շնորհիւ ջանքերուն որք կըրնան ի նպաստ իրենց ըլլալ։ Թէ ինչ կերպով անոնց օգնելու է՝ այն աւելի դժուար հարց մ'է։ Մահմետականաց հետ խառն կը բնակին Հայերը, եւ թէպէտ իրենց ամբողջական թիւը ի Թուրքիա չորս միլիոն է, բաւական զօրաւոր չեն բուն Հայաստանի մէջ որպէսզի անկախ իշխանապետութիւն մը ըլլան։ Սակայն կրնայ սա թելադրութիւնն յառաջ բերուիլ թէ գաւառներն որք Քրդաց խժդժութիւններուն նշաւակ են՝ Օսմանեան Հայաստանի մէջ են ընդհանրապէս եւ բացարիկ դարմանի մը կը կարօտին քանի որ բացարիկ չարիքէ մը կը տառապին։ Անոնք կրնան նոր մեծ նահանգի մը վերածուիլ որ Սեւ Ծովուն դպչի Տրապիզոնով եւ Կիրասոնով, եւ այսպէս մատչելի ըլլայ Անգլիական ազդեցութեան ինչպէս ռուսականին։ Այսպիսի նա-

հանդ մը կրնայ դրուիլ կառավարչի մը ներքեւ, որ կարգուի եւրոպական տէրութեանց հաւանութեամբը, եւ, եթէ կարելի է, Եւրոպացի մը ըլլայ:... Անգամ մը որ խաղաղութիւնըն ու անդորրութիւնը ապահովուին երկրագործին եւ արհեստաւորին, քրիստոնեայ բընակչութիւնը արագ պիտի շատնայ, գաղթային վերադարձ հոսանք մը պիտի շարժի դէպի Հայաստան Թուրքիոյ ուրիշ մասերէն եւ անիշխանական Պարսկաստանէն, եւ Հայ ժողովուրդը վերջապէս պիտի կրնայ հասուն գտնուիլ ամբողջական ինքնավարութեան մը եւ ընդարձակագոյն քաղաքական կեանքի մը համար: Հարկաւ դիւրին բան չէ այսպիսի ծրագիր մը ի գործ դնել: Ոչ ոք կրնայ հաստատել իսկ թէ կարելի է: Սակայն սանկ բան մը բաւական յաջող կերպով եղած է Լիբանանի համար.... Եթէ կ'ուզենք Ռուսիոյ յառաջխաղացութիւնն յԱսիա կասեցնել, Հայ ազգայնութեան զարգացումը անբաղդատելի կերպով ամենալաւ, թերեւս միակ տեւական, միջոցը կ'ընծայէ.... Հայերը շատ չեն վըստահիր Ռուսիոյ: Անոնք կը կասկածին թէ նէ կ'ուզէ իր մէջ ընկղմել այն պատկառելի Եկեղեցին որ պահապանն եղած է իրենց հայրենասիրական յիշատակաց, և մարել գործածութիւնը իրենց հին և մշակեալ լեզուին, լեզու մը որ գրականութիւն մը ունէր Ռուսիա իր այբբենը ընդունելէն դարեր յառաջագոյն: Անոնց ազգային նկարագիրը սլաւականին աննման է, և թէպէտ անոնք նշանաւոր կը հանդիսանան ռուսական ծառայութեան

մէջ, երկու ցեղերը ձուլման նշան չեն ցուցներ։ Ուրեմն Հայք, եթէ փրկուին իրենց ներկայ չուառութենէն և Անգլիոյ համակրութեամբը քաջալերուին, ամեն չարժառութ-ունին իրենց ամուր լերանց վրայ պահպան կանգնելու ընդդէմ անդրագոյն յառաջխաղացութեանը սլաւական զօրութեան և արեւելեան օրթոտոքս եկեղեցւոյն։ Անոնց ազդեցութիւնը, որ արդէն հզօր է բոլոր Փոքր Ասիոյ մէջ, պիտի ըլլայ հակառուս ազդեցութիւն մը, և անոնց գոհացումը ռուսական միջամտութեան պատրուակները պիտի ջնջէ։

‘‘...Կը վերադառնամ կէտին ուրկէ այս քննութիւնը սկսայ և նորէն կը հարցնեմ թէ ո՛ւր է Թուրքիոյ ասիական գաւառաց ապագային ամենալաւ յոյսը, և կը պատասխանեմ թէ անիկա կը կայանայ յառաջդիմական քրիստոնեայ ժողովրդի մը զարգացմանը մէջ, որ վերջապէս անկախ քրիստոնեայ պետութեան մը վերածուի։ Արևմտեան Ասիոյ բոլոր ցեղերուն մէջ Հայք միայն ունին այն ձիրքերը որոնք կարող կ'ընեն զիրենք այս դերին ձգտիլ։ Անոնք ուշիմ, կորովի, աշխատասէր, ուսումնասէր են, և արագապէս կը իւրացնեն արևմտեան գաղափարներ։ ... Իրենց մահմետական դրացեաց դէմ ատելութիւն չունին եւ հաշտ կ'ապրին ամենուն հետ բացի Քրդերէն։ Այսպիսի ազգ մը որ յանձին կը բերէ զօրաւոր անհատականութեան եւ համերաշխ ոգւոյ հետ մտաւորական նշանաւոր ճկունութիւն եւ ինքզինքը փոփոխուող պայմաններու պատշաճեցնե-

րու կարողութիւն, կը թուի մասնաւոր յարմարութիւն ունենալ թափանցելու և քաղաքակրթելու չըմբռնեալ ասիական զաւակները, որոց Մահմետական բնակիչներն կորուսած են այն բոլոր նախաձեռնական ոգին զոր կըրնան երբեմն ունեցած ըլլալ: Ինչ որ Հայոց պէտք է՝ կեդրոն մըն է, երկիր մը զոր իրենցը կարենան կոչել, եւ զոր կարենան ժամանակին, երբ անոր հարստութիւնն ու թուական ուժը աւելնայ, պետութեան մը վերածել:"

Ճէյմս Պրայսի այս յօդուածը, որ Սան-Սթէֆանոյի Դաշնագրէն քիչ մը յետոյ հրատարակուեցաւ, մեր ներկայ ճգնաժամի պատմութեան ամենակարեւոր վաւերագրոց կարգէն է: Թէպէտ յօդուածը Անգլիական Կառավարութեան տեսութիւնը չէր ներկայացներ պաշտօնապէս, սակայն Անգլիոյ քաղաքագէտներուն ընդհանուր միտումներն կը պարզէր: Յայտնի էր որ եթէ կարելի ըլլար, Անգլիա պիտի ուզէր Պրայսի ցոյց տուած գծին համեմատ՝ Հայաստանը եւրոպական կառավարչի մը ներքեւ դնել, ընդ վեհապետութեամբ Սուլթանին, և հայ ցեղը բարոյական եւ թուական բարգաւաճման ճամբուն մէջ հաստատելով՝ պատրաստել Արարատը իբրև թումբ մը Ռուսական զօրութեան և ազդեցութեան անդրկագոյն ողողումներուն դէմ: Յօդուածը անշուշտ այնքան զայրոյթ առաջացուց Ռուսիոյ որքան յոյս ներշնչեց Հայոց: Հայք այդ միջոցին ալ ռուսասէր չէին, զի ընդդէմ մեր եկեղեցւոյն և լեզուին՝ ապագայ Մոսկոֆին յարձակումներն կ'ընդնըշմարէին իբրև ի ծիլ հնաւոր դիմաւորութեան: Պրայսի յօդուածը Բրիտանական և Հայ-

կական չահերու համերաշխութիւն մը ցոյց տալով ընդդէմ Ռուսականին, Հայոց յուսափայլ աչքերը դէպ Անգլիա դարձնել տուաւ։ Ցօդուածը մեզի կը բացատրէ նաև, առանց բոլորովին արդարացնելու, այն համարձակութիւնը որով Ներսէս իր բարեկարգութեան ծրագրին տուաւ այն յաւակնոտ՝ գծերը։ Վերջապէս այն յօդուածի մէջ կը գտնենք նաև բացատրութիւնը, ոչ բնաւ արդարացումը, այն մահաբոյր ոխակալութեանն ու բարբարոս ատելութեանը որով Ռուս Կառավարութիւնը այնքան աշխատեցաւ տկարացնել մեր ցեղը, աջակցելով Համիտին, և հալածանքի ու ընդհանուր ջարդերու միջոցաւ ճմլել տըուաւ զմեզ որպէս զի անկարելի ըլլայ մեզի իրագործել այն խաղաղ և արագ զարգացումը զոր Պրայս իրաւամբ կը հռչակէր անհրաժեշտ պայմանը Հայաստանի մօտալուտ վերականգնման համար իբրև քաղաքակրթիչ պետութիւն մը յԱրեւելս և պանէշ մը ընդդէմ ռուսական յառաջխաղացման։

Ճշմարիտ կ՚ըլլայ ուրեմն ըսել թէ Հայկական շարժման ձգտումը յինքնավարութիւն իր ըսկիզբն և մղումներն Եւրոպական Թելադրութենէ առած է, նախ Ռուսիոյ կողմէն և անմիջապէս յետոյ Անգլիայէն, վերջնոյս համակրութիւնը երևնալով աւելի անկեղծ և Հայոց ազգային իտէականին աւելի համակերպ։ Կը տեսնենք նաեւ թէ Եւրոպական Թելադրութենէ ծագած այս Հայկական Խնդիրը միջազգային հանգամանք ունեցած է ի սկզբանէ անտի, եւ Ռուսական ու Բրիտանական կայսրութեանց միջեւ մասնաւոր հակառակութեան եւ ջերմ դիւանագիտական պայքարի նիւթ եղած է, եւ տակաւին է։

*Այժմ կը [illegible] հսկայից այս պայքարին գլխաւոր շրջաններն յետհայեաց ակնարկով մը վերլուծել և այն անաչառութեամբ որով նշանակեցինք մեր դիւանագիտական և յեղափոխական գործունէութեան թերութիւններն, ցոյց տալ եւրոպական դիւանագիտութեան թերութիւններն, թուլութիւններն եւ ոճիրներն ։*

*Պայքարի առաջին շրջանը կրնայ կոչուիլ պարզ ՓՐՈՓԱԿԱՆՏԻ ՇՐՋԱՆ ։ Մամուլին, որ մեր ժամանակներն հզօր է, բիւր բերաններովն հռչակուեցան Հայոց կրած հարստահարութիւնք, քրդային խժդժութիւնք, հարկերու հաւաքման անարդար և անողորմ մեթոտներն, կրթական հաստատութեանց դէմ յարուցուած խոչընդոտներն, յօրինուածական ընդհանուր հալածանքը եւ սպաննութիւնք ։ Ժամանակ մը Անգլիական մամուլն էր այս փրոփականտով գլխաւորապէս զբաղողը, մանաւանդ Ազատական Կուսակցութեան բերանն եղող DAILY NEWSը, ուր Մեծ Ծերունիին, Կըլատսթոնի անգամ, թղթակցութիւնն երեւցաւ ։ Այդ շրջանին վրայ աւելորդ է ծանրանալ հոս, զի անոր միջոցին երեւցած ամենէն կարեւոր և նըշանակիչ հրատարակութիւնը, – Ճէյմս Պրայսի յօդուածը– վերը տեսանք իբրև գերազանց նըմոյշ մը ։*

*Սասնոյ 1894ի կոտորածին առթիւ սկսաւ երկրորդ, այսինքն ԺՈՂՈՎՐԴԱՑԻՆ ՑՈՒՑՄԱՆ շրջանը ։ Մինչև այդ թուականը խնդիրը դիւանագէտներու եւ միջազգային անցքերու հետաքրքրութիւնն ունեցող սակաւաթիւ անձանց միայն ծանօթ էր· սակայն Սասունի ջարդով ելաւ անիկա տիեզերական թատերաբեմը իբրև ահաւոր եղե-*

ընդգրութիւն մը։ Ալ ամէ՛ն թերթ սկսաւ գրել Հայոց մասին համակրանօք եւ բողոքել թուրք բարբարոսութեան դէմ ամեհօրէն։ Թերթերէն յուզմունքը ծաւալեցաւ հրապարակախօսութեան և եկեղեցեաց բեմերը։ Անգլիոյ եւ Ամերիկայի մէջ ՀԱՋԱՐԱՒՈՐ ԺՈՂՈՎՆԵՐ սարքուեցան բողոքի եւ համակրութեան հրապարակային արտայայտութեան համար։ Մէյնէն ցՔալիֆորնիա գայրոյթի անհուն աղաղակ մը բարձրացուց Ամերիկեան ժողովուրդը։ Ընկերութիւն մը, քլիւպ մը, եկեղեցի մը չմնաց որ ձայնը չխառնէր այս տխեգերական գոչման։ Օրուան մեծ խնդիրն եղաւ Հայկական Խնդիրը, և կարելի է ըսել թէ չափահաս անձ մը չմնաց որ չճանչնար Հայաստան անունը։ Քաղաքակիրթ աշխարհի մէջ այս մարդասիրական յուզմունքին նմանը հազիւ՝ եթէ երբեք՝ տեսնուած էր օտար եւ հեռաւոր ժողովուրդի մը համար։ Երեւոյթը վերջին աստիճան մխիթարական էր։

Նշանաւոր թերթերու այն միջոցին անհամար յօդուածներէն քանի մը հատընտիր պիտի ծառայէ ընթերցողաց գաղափար մը տալ Մամլոյն յարուցած աչագին դռոյթի մասին—

(Նիւ Եորքի) ԹՐԻՊՈՒՆ (Tribune)– «Բաւական ստոյգ է թէ խժդժական կոտորածներու եւ փաշայական բռնապետութեան աճաւորագոյն դրլուխներէն մին աւելցած է Թրքաց ապստամբեցուցիչ իշխանութեան պատմութեանը վրայ։»

ՍԸՆ(Sun)—«Անգլիոյ պաշտպանեալն, անասելի Անասունն ի Կ. Պոլիս, նորէն իւր բնութեան համեմատ գործած է, և վաղածանօթ նախճիրներն նորոգած է իր քրիստոնեայ հպատակաց մէջ

որոնց վրայ Անգլիա երկիցս պահպաններ է Գաղանին իշխանութիւնը։» «Ուրիշ դարման չկայ Թուրք կառավարութեան համար բայց եթէ ջնջում։»

«ԹԱՅՄԶ»(Times)–«Բովանդակ քաղաքակիրթ աշխարհն դէտ կայ Անգլիոյ ընթացքին...։ Եթէ Անգլիա աչք գոցէ այս արհաւրաց, զայրութի այնպիսի արտագեղում մը պիտի ժայթքի որուն առջեւ կենալ դժուար պիտի ըլլայ իրեն։»

ՈՒԸՐԼՏ(World)-«Անասելի Թուրքը մեծ պատիւ կ'ընէ Ուըրլտին եւ ուրիշ ամերիկեան լրագիրներու՝ արտաքսելով զանոնք իր երկրէն։ Սակայն եթէ չարունակէ այսպէս քաջալերել Հայոց խողխողումը, շատ հաւանական է որ ստիպուի իր սահմանագլուխները պաշտպանել աւելի երկիւղալի բանի մը դէմ քան զլրագրական արշաւանքը։»

Որքան ալ խիստ էր մամլոյ լեզուն և երբեմն ուշագրաւօրէն վեհ, աւելի դղրդեցուցիչ էին հրապարակային ժողովներն կամ mass-meeting-ներն։ Ազատ երկրաց մէջ հանրային կարծիքը հըրապարակելու ազդեցիկ և սիրելի եղանակ մ'ալ այս է։ Նիւ Եորքի մէջ բազմաթիւ ժողովներ եղան այս կարգէն։ Առաջին մեծ հաւաքոյթը տեղի ունեցաւ Չիքըրինկ Հօլի մէջ, ուր նշանաւոր մարդիկ շատ լուրջ կերպով խօսեցան։ Հրաւիրեալներէն անոնք որ ներկայ ըլլալ կարող չէին, համակրական նամակներ յղած էին։ Ահաւասիկ օրինակը նամակին զոր Փոթըր Եպիսկոպոսը ղըրկած էր եւ որ կարդացուեցաւ ժողովին մէջ.—

“Մեծ ցաւ է ինձ որ անխուսափելի յանձնառութիւն մը անկարելի պիտի ընէ ինծի ներկայ ըլլալ յօգուտ Հայ ժողովրդեան տեղի ունենալու

միթինկին։ Երբ ի Կ. Պոլիս էի, ճիշդ տարի մ'առաջ, անոնց առաջնորդաց շատերուն հետ հաղորդակցութիւն ունեցայ եւ սորվեցայ անոնց անձնական նկարագրին եւ բարձր ձգտմանց համար խորին յարգանք տածել։

Մենք այնքան հեռու ենք որ չենք կրնար այժմէն գիտցած ըլլալ հայաւեր խժդժութեանց ամբողջ պատմութիւնը, սակայն թէ խժդժութիւններ գործուած են ի բռնաբարումն քաղաքակրթութեան առաջին օրինաց, և թէ անոնք մասն են կառավարական դրութեան մը որուն աւանդութիւններն շարունակ վայրագ և անագորոյն են եղած՝ անոր տարակոյս չկայ։ Առ ի՞նչ կը ծառայէ որ աշխարհի բոլոր մասերը եւ ժողովուրդք իրարու հետ այսքան սերտ յարաբերութեան բերուած են, եթէ հեթանոս իմաստասէր Տէրանսի «մարդ եմ ես եւ ո՛չ ինչ որ մարդկային է՝ օտար է ինձ» սկզբունքէն անգամ ստորին մնալ պիտի ղիջանինք։ Ազդարարութիւնը կրնայ իմաստնօրէն խորշիլ անդէպ չափազանցութենէ, սակայն կը յուսամ թէ յանդիմանութիւնը բաւական խիստ կ'ըլլայ հասկցնելու համար թէ Նիւ Եորքի ժողովուրդը միութիւն մ'է ամեն բողոքի մէջ ընդդէմ այն անիրաւութեանց որք բարբարոս դարուց եւ վայրենի ցեղերու կը վայլեն։”

Ժողովներուն մէջ եղած ուղերձներն առ հասարակ ականաւոր անձանց շրթունքէն կ'արձակուէին, մերթ իմաստալից եւ պերճախօս, մերթ բուռն եւ յուզիչ, եւ ունկնդիրք մեծադղորդ ծափահարութիւններով կը շեշտէին ըսուածներն։ Ամենէն նշանաւոր ատենախօսութիւններէն մին հոս կը դնեմ իբրեւ նմոյշ մը։ Դեկտ. 30, 1904ին,

արտասանուեցաւ այն Ս. Պարթօլօմիւ եկեղեցւոյն մէջ ի ներկայութեան 1,500 հոգւոյ։ Ատենախօսն էր Չէնսի Տիփիւ, մին Ամերիկայի ամենէն հռչակաւոր քաղաքագէտներէն ու հռետորներէն, որ նախորդ օրը, յԱնգլիա, ծննդեան 85դ տարեդարձին առթիւ Կլատսթոնի ըրած հայկական ուղերձին արժանապէս արձագանգ կուտար։

Ահաւասիկ ուղերձը, քիչ մը ամփոփուած.-

‘‘...Տասնեւիններորդ դարու պարծանաց դէմ երգիծաբանութիւն մ'է այն որ առիթ կ'ըլլայ այս ժողովին, սակայն միանգամայն պատիւ մը դարուս ոգւոյն որ այսպիսի հաւաքոյթ մը կրնայ տեղի ունենալ։ Կրօնական հալածանք եւ պատերազմունք, արիւնահեղ վրիժառութիւններ ամեն դարու մէջ պատահած են, սակայն ԺԲ էն մինչեւ ԺԹ դար անոնք դոյզն ուշադրութիւն գրաւեցին արտաքոյ այն երկիրներուն ուր տեղի ունեցան։ ԺԹ դարու իրական փառքն է միջազգային կարծիքի ստեղծումը, որ կը դատապարտէ ազգային նշանակութիւն ունեցող ամեն ոճիր։

‘‘Հայաստան վերջին աստիճան համակրելի է մեզի։ Չորս միլիոն ժողովուրդ, առաքելական հարազատ յաջորդութիւն ունեցող եկեղեցիով, տոկացած ու տեւած է անվհատ ու քաջահաւատ այնքան աղէտներու մէջ որք լքուցիչ են յուսոյ և հաւատոյ։ Թուրք տէրութիւնը տարբեր է ամեն տէրութենէ։ Անիկա նուիրապետութիւն մ'է իր կրօնն տարածելու համար, իշխանութիւնն կրօնական է, եւ բանակը կրօնական նպատակներու պարտի ծառայել։ Այսպիսի հիմնարկութեան մը բնական եղող վայրագութիւններն էին որ

արթնցուցին զԵւրոպա եւ Յունաստանի, Ռումանիոյ, Սերպիոյ եւ Պուլկարիոյ տուին գտնել ազատութիւն։ Պէռլինի Դաշնագիրն ճանչցաւ այդ նորակազմ պետութեանց ինքնավարութիւնը եւ պարտք դրաւ Եւրոպիոյ քրիստոնեայ ազգերուն վրայ՝ պաշտպանել այն քրիստոնեայ ժողովուրդները որք դեռ եւս Թուրք տիրապետութեան ներքեւ կը մնան։ Ու այդ յանձնառութենէն յետոյ է որ Հայաստանի գլխուն կուգան այսքան աղէտներ։ Օ՜, դիւանագիտութի՜ւն, դիւանագիտութի՜ւն, ո՜րքան ոճիրներ կը գործուին յանուն քո։ Զօրութեանց հաւասարակշռութեան վարդապետութիւնը ի՜նչ գազանութիւններ կը թոյլատրէ։ Խաղաղութիւնը ի՜նչքան սուղի կը նստի Եւրոպիոյ։ Ահա ինքը Թուրքը կը խռովէ Եւրոպիոյ թանկագին խաղաղութիւնը։ Թուրքն ունի ի՜ւր արդարութիւնը, Ղուրանի օրէնքը։ Չկա՛յ դատաւոր, չկա՛յ օրէնք, չկա՛յ արդարութիւն, չի՛ք ազատութիւն։ Հայաստանի քրիստոնեայք բարբարոսի քմահաճոյքին են մատնուած։ Եւ այդ բարբարոսի արարքներն յիրաւի՛ ապստամբեցուցիչ են Հայոց որք Արեւելից Նիւ-Ինկլէնտցիներն են, ուշիմ՝ աշխատասէր և անտես։ Կրկին ու կրկին բողոքած են անոնք առ Եւրոպա, սակայն անլսելի են մնացած։ Նախախնամութիւնը կը գործէ՛ սակայն։ Սասնոյ դռոյթն արթնցուց զԵւրոպա եւ ստիպեց դաշնիճներն կատարել իրենց պարտաւորութիւն։

''Աշխարհ բաւական ուշիւ չսեւեռեց աչքն այն գերազանց ողբերգութեան վրայ որ Սասնոյ առման պահուն տեղի ունեցած է՝ դիւցազնուհւոյ մը գահավիժմամբն սարէն ի վար։ Մի քանի տա-

րի վերջը վիպագիր մը պիտի անմահանայ զայն իր վիպասանութեան կեդրոնն ընելով։ Մի քանի տարիէն բանաստեղծ մը նիւթ պիտի առնէ զայն և իր գրուածն Քէմփպէլի, Մաքօլէյի եւ Թէննիսընի դիւցազներգութեանց առընթեր պիտի դըրուի։ Աստենաբան մը այդ պատմութեան և անոր դասին պիտի տայ յօրինուածութիւն և ներշնչում այնպիսի որ դպրոցաց և ուսումնարաններու բեմերէն տղոց ու աղջկանց շրթունքէն արտասանուի և դարէ ի դար կրկնուի յաղթանակն հայրենասիրութեան և հաւատոյ։

"Երէկ աշխարհահռչակ մարդ մը, հզօ՛ր մարդ մը իր 85դ տարեդարձը տօնեց։ Անիկա վարիչն եղած է Բրիտանական կայսրութեան, և այսօր սոսկական քաղաքացի մ'է։ Ամենուստ իրեն ուղղուած շնորհաւորութեանց ի պատասխան՝ իւր գլխաւոր խօսքն եղաւ բողոք մը ընդդէմ այն խժդժութեանց որոց ենթարկուած են հայ քրիստոնեայք, եւ կոչ մը առ քրիստոնեայ ազգս ու ազինս աշխարհի ստիպել իրենց կառավարութիւններն ի սարձահարել զԳազանն։

"Ի շրթանց Կլատսթոնի արձակուած այս հըռաւէր և սաստ փայլատակեց ցամաքէ ցամաք և ընդծովեայ հեռագրերով, ու թափանցեց դահլիճները, որոտաց յունկն վեհապետաց, և ազգաց սրտի թելերն հնչեցուց։

"Վաղն, ո՛չ, ա՛յսօր իսկ, Ռոզպէրի կը խորհրդակցի Ֆռանսայի նախարարապետին հետ, եւ Ֆռանսա ու Անգլիա կը խօսին Գերմանիոյ կայսեր, Երխասարդ Զարին, Իտալիոյ Թագաւորին և Աւստրիոյ կայսեր՝ միասնական գործողութեան նկատմամբ որ զԹուրքն ի գութ պիտի ածէ ա-

ռանց խանգարելու Եւրոպիոյ Հաւասարակշռու-
թիւնը։

«Մենք հոս յԱմերիկա ունինք ապաստանարանն ամեն ցեղերու. ամեն ազն ունի աստ իր ներկայացուցիչը։ Մենք ի խնդիր չենք օտար զինակցութեանց, և ոչ միջազգային կնճիռներու, սակայն ունինք ամերիկեան ազատութեան զօրութիւնը և կը ճանչնանք համաշխարհային եղբայրութիւն։ Կրնայ Ուօշինկթըն լսել, այլ 68 միլիոն հոգիներ կարող են խօսիլ լեզու մը ա՛յնպիսի որ լսելի ըլլայ ամեն տեղ, և թէպէտ ոչ սակաւ ըլլան լեզուք, ըլլայ մէկ ձայն, ազատութեա՛ն ձայնը, և հռչակէ ու պահանջէ խղճի ազատութիւն իւր եղբարց համար ի հեռաւոր Արևելս։ 1894ի ելից սեմին վրայ այս է պատգամն ազատ Ամերիկայի։»

Հզօր ու պերճախօս է, սակայն դիւանագէտի զգուշաւոր եւ զսպեալ ոճն ունի այս ուղերձ։ Բողոքական զանազան եկեղեցեաց մեծանուն հովիւներն ու եպիսկոպոսներ աւելի համարձակ ու յարձակողական շեշտ մը դրին իրենց արտայայտութեանց մէջ։ Ահաւասիկ օրինակն այն հակիրճ ուղերձին զոր Նիւ Եորքի ամենէն երևելի հովիւներէն մին, Պատ. Ճ. Հօլ ըրաւ Դեկտ. 18ի հաւաքոյթին մէջ.—

«Ամենախորին համակրանք կը տածեմ Արարատի ժողովրդին համար եւ ամենախորին զըզուանք ունիմ այն անիծեալ Տէրութեան դէմ որ եղեռնագործութիւնն իրեն գործ է ըրած միշտ, յանցելումն ինչպէս ի ներկայիս։ Տուն մը չէ որ նեղութեան մատնուած է, այլ երկու եւ կէս միլիոն ժողովուրդ։ Եւ ի՞նչպիսի խաղաղասէր,

աշխատասէր, ընտանեսէր, ճարտար և ուշիմ ժողովուրդ։ Այս սրահի խռնումը բաւական կ'ապացուցանէ թէ հանրային զգացումը արթնցած է Հայոց նկատմամբ (ԾԱՓԱՀԱՐՈՒԹԻՒՆ)։ Ոմանք դուցէ կ'երկմտին թէ մեր երկիրն իրաւունք չունի Թուրքիոյ ներքին գործերուն խառնուելու։ Ինչո՞ւ։ Դիցուք թէ փողոցին մէջ կը հանդիպիս կռուի տեսարանի մը,—ուժեղ եւ յաղթանդամ մարդ մը չարաչար կը գանակոծէ դեռատի պատանեակ մը. կը մօտենաս եւ ուժով մարդուն կը հարցնես. ինչո՞ւ կը ծեծես աս տղան։ Եւ չարագործը քեզի կը նայի իբր թէ ապշած եւ կը պատասխանէ. ես քեզ չեմ ճանչնար. մենք երբեք մեր այցաքարտերը փոխանակած չունինք։ Ի՞նչ դարձ պատասխանի կը պատշաճի այս առարկութեան.–Ես մարդկային էակ մ'եմ, դո՛ւն ալ մարդկային էակ մըն ես, թէպէտ այս պահուս գազանօրէն կը վարուիս (ԾԱՓ.). եւ ես յիրաւի կուգամ իմ ընկերս փրկել քու վայրագ ձեռքերէն (ԾԱՓ.)։ Կը տեսնեմ Տիկնայք և Տեարք, թէ միտքս լաւ կ'ըմբռնէք։ Շատ կարեւորութիւն չտանք միջազգային ձեւակերպութեան, ու բարձրացնենք մեր ձեռքերն ու ձայներն (ԲՈՒՌՆ ԾԱՓ.)։"

Ցաւարտ ուղերձին մեծանուն հովիւը կարդաց հաւաքոյթի քուէին ներկայացուող առաջարկութիւններն զորս հոս կը դնեմ իբրեւ օրինակ մը նոյնպիսի հազարաւորներու որոնք այս մեծ երկրին ժողովներուն մէջ քուէարկուեցան։

"Որովհետեւ ամենավստահելի աղբիւրներէ բխող տեղեկութիւններէ յայտ է թէ 25 գիւղեր ի Հայաստան քարուքանդ եղած են ի ձեռն Թուրք

զօրաց, եւ հազարաւոր անմեղ արք, կանայք եւ մանկունք անգթօրէն խողխողուած են ի Սասուն, ուրեմն կ՚որոշենք․—

‘‘Թէ մենք, Նիւ Եորք քաղաքամայրի եւ շրջակայից քաղաքացիքս, հաւաքուած ի մասնմիթինկ, մեր ջերմագին համակրութեան հաւաստիքը կը մատուցանենք Հայաստանի ժողովրդեան։

‘‘Եւ որովհետեւ այսպիսի մեծաքանակ ջարդեր բազում անգամ տեղի ունեցած են Թուրք կառավարութեան գիտութեամբն ու հաւանութեամբ, եւ հակառակ դաշնագրական յանձնառութեանց, կ՚որոշենք—

‘‘Թէ Պէռլինի Դաշնագիրն ստորագրող Տէրութեանց կոչում կ՚ընենք անյապաղ գործադրել 61դ Յօդուածի տրամադրութիւնն, եւ մասնաւորապէս կոչում կ՚ուղղենք Անգլիոյ Կառավարութեան կատարել իր պարտաւորութիւնը զոր յատկապէս յանձն առած է Կիպրոսի դաշնագրով։

‘‘Եւ ի բոլոր սրտէ կոչում կ՚ընենք մե՛ր ալ Կառավարութեան, որ ձեռք առնէ յանուն մարդկութեան ամեն միջոց որ հակառակ չէ մեր արտաքին քաղաքականութեան, վերջ տալու այն հալածանաց որուն համար Թուրք Կառավարութիւնը պատասխանատու է, եւ մեր այս որոշման անմիջական եւ ազդու նկատառութիւնը կը թախանձենք։

‘‘Կ՚որոշենք որ այս որոշմանց վաւերացեալ օրինակը յղուի Միացեալ Նահանգաց Նախագահին, խնդրելով միանգամայն որ պետական քարտուղարութեան միջոցով նոյնը հաղորդուի նաեւ Մեծ Տէրութեանց ներկայացուցիչներուն։”

*Այս ժողովներն երկար ատեն շարունակեցին ողողակել յանուն մարդկային խղճի թէ հարկ էր այնպիսի կարգադրութիւն մ՚ընել որ այլեւս անկարելի ըլլար Թուրք Կառավարութեան նորոգել իր խժդժութիւններն Հայաստանի մէջ։ Ցուզմունքը կը սաստկանար և շատեր անչափեալ բացատրութիւններով կը դատապարտէին Դուռը եւ որոշապէս կը պահանջէին որ զինուորական ուժով օգնութիւն հասցուէր Հայոց։ Սիրաքուս քաղաքին մէջ չորս եկեղեցական յարանուանութիւններ ի մի եկեղեցի ժողովեցան. հաւաքոյթն այնքան խուռնամբոխ էր որ հարիւրաւոր անձինք չըկրնալով մուտ գտնել՝ ետ դարձան։ Հայու մը համար սխրալի էր տեսարանը։ ''Հայք''ի խմբագրէն յետոյ Սիրաքուսի Համալսարանի Նախագահը խօսեցաւ, եւ ուրիշ ատենախօս մը, նշանաւոր երէց, յընթացս իւր ուղերձին յայտարարեց թէ ''պէտք է մէկ միլիոն մարդիկ այս երկրէն ելլեն պատերազմելու Թրքին դէմ։''*

*Պոսթոնի մէջ կատարուած հանրային հաւաքոյթի մը մէջ ուր մեր ամենալաւ բարեկամներըն, Տիկին Հաու,* (Mrs. Julia Ward Howe) *հռչակաւոր բանաստեղծուհին և Օր. Պլէքուէլ* (Miss Alice Stone Blackwell), *խմբագրապետ, երեւցան, Պատ. Կորտըն գոչեց թէ ''հիմա ամենէն աղէկ միսիոնարներն մարտանաւերը պէտք է ըլլան Թուրքիոյ համար։'' Պատ. Լէնսինկ եւս ըսաւ. ''Ես չեմ հասկնար թէ մեր զրահաւորները ինչ բանի կուգան եթէ անոնցմէ երկուքը Պոսֆորի ջրերն չեն ուղարկուիր այս միջոցիս։'' Սէվէճ, անուանի երեց ի Պոսթոն, իր մէկ քարոզին մէջ յայտարարեց թէ եթէ ինքը Ամերիկայի տիգդադոր ըլլար, կը փութար ռմբակոծել զԿ. Պոլիս։*

Անգլիոյ մէջ եղած ժողովներուն եւ հրատարակութեանց վրայ գաղափար մը տուած կ'ըլլամ եթէ ըսեմ թէ անոնք ալ ճիշդ նման էին Ամերիկայի մէջ կատարուածներուն։ Օրինակի համար կը բաւէ յիշել այն շատ նշանաւոր հաւաքոյթը որ տեղի ունեցաւ ի Լոնտոն, Մայիս 7 ին, (1895), ընդ նախագահութեամբ Արկայլի և Ուէսթմինիսթրի դքսերուն։ Մեծ Ծերունին, Կլատսթոն ոյժ տուաւ ցոյցին համակրական նամակով մը յորում կ'ըսէր. "Իմ զօրաւոր համակրանքս կ'ուզեմ յայտնել և յոյսս թէ բարոյական միջոցներով, եթէ կարելի է, եթէ ոչ՝ ուրիշ միջոցներով լիուլի երաշխիք պիտի առնուի որպէսզի Սուլթանն ու իր խորհրդականք ապագային մէջ չդիմեն այլ ևս այնպիսի ամօթալի արարքներու։" Արկայլի դքսին նախագահական ուղերձն բարձրօրէն շահեկան էր ու անաչառ. անիկա ըսաւ. "Մեր պատասխանատուութիւնը շատ մեծ է, քանզի Թրքական խոստմանց իրականացումն հարկադրած չըլլալով՝ մենք իրաց վիճակն աւելի վատթարացուցած ենք—Նախ այնու որ քրիստոնեայք մեր յանձնառութեան վրայ յոյս դնելով ա՛յնպէս խօսիլ եւ վարուիլ սկսան որ Թուրքը դրգռուեցաւ, եւ երկրորդ այնու զի Թրքերուն ներշնչած եղանք մահաբոյր ատելութիւն դէպ ի քրիստոնեաներն, որոց նկատմամբ Օսմանցւոյն ցասմնալիր ընթացքը կրնայ սա կերպով թարգմանուիլ—Դուք օտար տէրութեանց կը դիմէք. ա՛, պիտի ցուցնեմ Ձեզի թէ անոնք չեն կարող միջամտել։"

Այդ մեծ հաւաքոյթին մէջ հետևեալ որոշումը քուէարկուեցաւ.—"Այս ժողովս, յանուն նա-

խոստեալ մարդկութեան, կոչում կ՚ընէ Նորին Վեհափառութեան (Թագուհւոյն) կառավարութեան, համաձայն դաշնագրական պատասխանատուութեանց, անմիջական միջոցներ ձեռք առնել վերջ տալու համար այն բարբարոս և զեղծ կառավարական դրութեան՝ որ 17 տարիէ իվեր կը տիրէ ի Հայաստան, և պնդելու որոշ, բաւական և տեւական բարեկարգմանց իրագործմանը վրայ ընդ ազդու և մշտական հսկողութեամբ և հովանեաւ Եւրոպիոյ:"

Վեց ամիս շարունակ, 1894 Դեկտեմբերէն մինչև Մայիս 1895, ժողովրդային յուզումը Անգլիոյ և Ամերիկայի մէջ սաստկացաւ և անբաւ էր բողոքի և արդար զայրոյթի գոռն որ կը լեցնէր աշխարհը և որուն ստիպուած էին Կառավարութիւնք ուշ դնել, մանաւորապէս Օսմանեանն, Անգլիականն ու Ռուսականը:

Մայիս 11 ի Բարեկարգութեան Ծրագրով, որ Անգլիոյ, Ռուսիոյ և Ֆռանսայի կողմանէ առաջարկուեցաւ Սուլթանին, խնդիրը կրնայ նկատուիլ իր երրորդ փուլին մէջ մտած, այն է ԿԱՌԱՎԱՐԱԿԱՆ ՑՈՒՋՄԱՆ ՇՐՋԱՆԸ: Ծրագիրը կարգ մը բարեկարգութիւններ կը տրամադրէր հայկական գաւառաց համար, և սակայն կենսական կէտը այն էր որ ԵՒՐՈՊԱԿԱՆ ՀՍԿՈՂՈՒԹԵԱՆ ՏԱԿ պէտք է գործադրուէին բարեկարգութիւններն: Այս կէտը երկար վիճաբանութեան նիւթ եղաւ հինգ երկար ամիսներ Սուլթանին և երեք Տէրութեանց միջեւ: Համիտ պատրաստ էր ամեն բան խոստանալ, շատ բաներու տակ դնել իր ստորագրութիւնը, սակայն եւրոպական հսկողութիւնը կը մերժէր, այսինքն այն պայմանը որով

միայն Ծրագիրը արժէք պիտի ունենար։ Դուռը կ'ըսէր թէ ատիկա պիտի ըլլար մահացու հարուած մը Սուլթանին վեհապետութեան և օսմանեան կայսրութեան անկախութեանը։

Անգլիական կառավարութեան տագնապն տենդի աստիճանին հասաւ։ Ամերիկա կ'աղաղակէր թէ Անգլիա էր պատասխանատու Հայոց համար, և Անգլիացիք ալ նոյնը կ'ըսէին։ Սուլթանին դիմադրութեանը յաղթելու համար սկսան սպառնալ թէ յամառութեան հետևանքը շատ ծանր պիտի ըլլար Օսմանեան կայսրութեան համար։ Սթանտարտի Թղթակիցը Պոլէն կը հեռագրէր թէ Տէրութիւնք պայմանաժամ մը պիտի նշանակեն յորում պէտք է ստանան անպայման ընդգրկումը իրենց Ծրագրին, և Standard այդ առթիւ կ'ըսէր. ‘‘Սուլթանը պարտի Տէրութեանց յանձնարարութիւններն ընդունիլ, եթէ ոչ, ի՛նչ ալ որ ըլլան հետեւութիւնք, Հայաստան պիտի բաժնուի Օսմանեան Կայսրութենէն։” Ի՞նչպէս պիտի իրագործուէր այս բաժանումը. միթէ Անգլիա պիտի իւրացնէ՞ր զՀայաստան. ո՛չ. այլ թոյլ պիտի տար որ Ռուսիա ընէր այդ բանը։ CONTEMPORARY REVIEW ի մէջ հրատարակուած յօդուած մը այդ միջոցին (Մայիս) կ'ըսէր որոշապէս—‘‘Անգլիա, Անգլեւթրքական Դաշնագրի ուժով, պարտաւոր է նախաձեռնութիւնն ստանձնել առաջարկելու որ Թրքաց գործադրական իշխանութիւնը մարի այն գաւառաց մէջ ուր այնպիսի ահաւոր զեղծումներ գործած է։ Այսինքն, Անգլիա, 17 տարի տուած ըլլալով Թրքին որ ըզՀայաստան բարեկարգէ, պարտի պնդել անհրաժեշտ պայմանի մը վրայ, այն է արտաքսումն.

Թուրք գործադիր իշխանութեան, Թուրք զօրաց և Թուրք պաշտօնէից բովանդակ վոհմակին։... Անգլիա պարտի առաջարկել զայս։ Սակայն ՌՈՒՍԻԱ՝ միայն կարող է գործադրել զայն։ Ինքնակայիս Ռուսիա բնականապէս շատ տրամադրութիւն չի ցուցներ ի սէր Հայոց կամ ի սէր եւրոպական ներդաշնակութեան կրակէն հանել շագանակները։ Բայց եթէ Անգլիոյ նախաձեռնութեամբ Ռուսիա ստանայ եւրոպական յանձնարարութիւն մը որուն զօրավիգ ըլլան բրիտանական զրահաւորները ի Պէսիքա ծոցին, որով արտօնութիւն տրուի Ռուսիոյ գրաւել և վարել Օսմանեան Հայաստանը ինչպէս Աւստրիա գրաւած կը վարէ զՊոսնիա և զՀէրսէկովինա, անոր ցրտութիւնը կը փարատի։ Ասանկ կարգադրութիւն մը կարելի կ'ըլլար եթէ Անգլիա եւ Ռուսիա ձեռն ի ձեռն կանոնաւորապէս աշխատէին։ Եթէ ոչ խեղճ Հայերը կրնան ի զուր կանչել իրենց փրկութեան օրը։"

Նոյն լուծումը կ'առաջարկէր նաև Manchester Guardian թերթը, յասելն. "Մենք Հայաստանի ռուսական գրաւման դէմ յարուցուած առարկութիւններուն լիովին տեղեակ ենք, այսու ամենայնիւ այն վիճակին մէջ ուր իրերը հիմա հասած են, գուցէ անկէ զատ ուրիշ գործնական լուծում չկայ։... Ռուսիա՛ է միակ Տէրութիւնը կարող ի միջամտել, եւ այժմ մեր պետական մարդոց կը մնայ հասկցնել թէ՛ Ռուսիոյ և թէ՛ Թուրքիոյ որ երբ Ռուսիա անցնի սահմանագլուխը եւ զԿարին ու Վան աւելցնէ Կարսի ու Երեւանի, այս երկիրն ոչ մի զինուոր պիտի յղէ եւ ոչ մի գնդակ արձակէ զանիկա արգիլելու համար։

Մինչ այս մինչ այն, ընտրական պայքարը աւարտելով յԱնգլիա, պահպանողական կուսակցութիւնը պետութեան ղեկը ձեռքն առաւ, Լորտ Սալզպըրիի վարչապետութեամբ։ Ժամանակ էր որ Կլատսթոն լսելի ընէր իր ձայնը, եւ ահա Օգոստոս 6 ին՝ վեհն արդարութեան սիրով բոցավառ ճարտասանութեամբ մը առեննախօսեց մեծ հաւաքոյթի մը, ընդ նախագահութեամբ Ուէսթմինսթըրի դքսին, Սալզպըրիի մտերմին։ Պահպանողական և Ազատամիտ ազդեցութիւններն այսպէս միացած՝ կը խրախուսէին զԿառավարութիւնն կատարել իր պարտաւորութիւնը։ Ըստ Կըլատսթոնի այդ պարտաւորութիւնը կը կայանար երկու բանի մէջ. Նախ, բնաւ յարգ չընծայել Թրքին խոստումներուն, և երկրորդ՝ չվախնալ "բռնադատել" զԹուրքն։ Եւ միջազգային օրէնքներու համեմատ ցոյց կուտար թէ ինչպէս կարելի էր երաշխիք տալ Եւրոպիոյ թէ Անգլիա ուժով պիտի ռնադատէր զԹուրքը, առանց աշխարհակալական ոեւէ շահ ունենալու, եւ միայն ու միայն մարդասիրական ու դաշնագրական պարտք մը կատարելու նպատակով։

Եւ իրօք Սալզպըրի Խորհրդարանին բացման նիստին մէջ, խօսելով Հայկական խնդրոյն վրայ, գործածեց այնպիսի ուժգին լեզու որպիսի, ըսին բրիտանական թերթերն, ոչ երբեք գործածած ունի անգլիական նախարարապետ մը նըկատմամբ ոեւէ օտար տէրութեան։ Լորտը պարզապէս յայտարարեց թէ "Սուլթանը ծանր եւ աղետաբեր սխալ մը գործած պիտի ըլլայ եթէ, լոկ ձեւական անկախութիւն մը պահպանելու եւ իր անուանական իրաւանց դէմ հնարաւոր ոտըն-




ԵՒՐՈՊԱ ԿԸ ՅԱՆԴԻՄԱՆԷ ԶԹՈՒՐՔԻԱ

ձգութեան մը տեղի չտալու փափաքով, մերժէ եւրոպական տէրութեանց օգնութիւնն ու խրատը՝ բնաբարձ ընելու համար իր տէրութենէն այն անիշխանութիւնն ու ապիկարութիւնը որ, հակառակ բոլոր դաշնագրերու և համակրանաց, անշուշտ պիտի կործանէ վերջապէս զկայսրութիւնն որուն կը տիրէ անիկա:”

Նախարարապետին այս ընդոստուցիչ յայտարարութիւնը ցոյց կու տար թէ ոչ ևս գոհ պիտի ըլլար Անգլիա լոկ Ռուսիոյ յանձնարարելով Հայաստանի գրաւումը, այլ ի մտի ունէր ի հարկին, բռնաբարել զՏարատանել և Սուլթանի համակերպութիւնը բռնի ձեռք բերել: Սակայն խնդիր էր թէ Սալզպըրի ո՞ր աստիճան լուրջ էր, արդեօք ոյժ կիրարկել կ'ուզէ՞ր իրօք թէ վտանգի տարտամ սպառնալեօք կը փորձէր ահաբեկել զՀամիտ: Լորտը շատ ամուր վստահութիւն չէր ներշնչեր: Անգլիական ամենէն ազդեցիկ շաբաթաթերթը, Spectator ազնուաբար և իմաստնօրէն կ'ըսէր. “Ցամենայն դէպս կը յուսանք թէ Լորտ Սալզպըրի ոչ միայն հաստատամտութիւն ի հանդէս պիտի բերէ այլ և առաջնորդութիւն: Ի՛նչ ալ որ պատահի, պէտք է չլքանել Հայերը: Անջնջելի անպատուութիւն պիտի գայ Անգլիոյ եթէ, իր կողմանէ թուլութեան պատճառաւ, Փոքըր Ասիոյ քրիստոնեայ ժողովուրդք նորէն մատնուին Թուրքին անասելի խժդժութեանց:”

Կ. Պոլսոյ ազդեցիկ շրջանակաց համոզումն, և ապահովապէս կրնանք ըսել՝ Անգլիական դեսպան ազնիւ Սըր Ֆիլիփ Քըրիինն ևս՝ էր թէ պէտք է բռնաբարել զՏարտանել առանց տատամսելու, եթէ ոչ Բրիտանական ազդեցութիւնը ծանրապէս կը վտանգուէր յԱրեւելս:

Ի վերջկոյս Օգոստոսի և յընթացս Սեպտեմբերի խռովքը ընդհանուր էր և որոտմունք Անգլիոյ կողմէն մերթ ընդ մերթ այնքան ահեղագոռ կը լսուէին որ Սուլթանը յանկարծական չանթահարումէ մը կը կասկածէր։ Անիկա իր ճիգերը կը բազմապատկէր սակայն արգիլելու համար Անգլիական հարուածը։ Հնդկաստանի մահմետական իշխաններուն կը բողոքէր Անգլիոյ դէմ, դառնապէս կը փանգատէր Ֆռանսայի եւ Ռուսիոյ թէ Անգլիոյ կացքն ու ընթացքը կը վընասէր իր վեհապետական ազդեցութեանը։ Գերմանիոյ կայսր Կիյյոմէն, ապա Ֆռանսայի Նախագահ Ֆօռէն, ինչպէս նաև Ս. Պապէն կը խնդրէր միջամտել որպէսզի Մեծն Բրիտանիա չափաւորէր իր խիստ եւ վիրաւորիչ վարմունքը։ Այսպիսի մտերմական դիմումներով Համիտ կը զընէր կառավարութեանց տրամադրութիւններն հանդէպ Անգլիոյ, կը ճշդէր իրեն թեր ու դէմ խառնուածներուն վիճակը, կ'որոշէր չէզոքներն, անտարբերներն, համակիրներն ու հակառակորդները եւ կ'րղլար ճշդամերձ հաշիւներով կանխագուշակել թէ Անգլիական զայրոյթը ինչ հաւանական վերջաւորութեան պիտի յանգէր։

Ամենէն կարեւորը Ռուսիոյ դիրքն էր հանդէպ հայկական այս երկարատեւ յուզմանց։ Թուրք, Անգլիացի, Հայ գործիչներ կը ջանային անոր ներքին միտումներուն ծափանցել։ Ֆռանսա հետամուտ էր Ռուսիոյ բարեկամութեան եւ ուստի Ֆռանսական մամլոյ արտայայտութիւններէն կարելի էր շատ բան կռահել Ռուսիոյ քաղաքականութեան վրայ։ Revue des Deux Mondes ի կարեւոր մէկ յօդուածը ուշադրու-

թիւն գրաւելու բնոյթ ունէր այդ միջոցին. ահաւասիկ անոր ամենէն նշանակիչ հատուածը.—

"Հայաստանի կարեւորութիւնը բոլորովին իր աշխարհագրական դիրքին մէջ է։ Երկիրն աղքատիկ է, սակայն ա՛յն առաւելութիւնն ունի որ չուկէտն է երկու բնական ուղիներու, որոց մին կը տանի դէպի Պարսից Ծոցը, միւսը՝ դէպ Իսկէնտէրունի Ծոցը։ Հայ ազգայնութիւնը, դարերէ ի վեր կքած ըլլալով տաժանակիր տիրապետութեան մը ներքեւ, ոչ եւս գոյ է իրօք, սակայն իր ցանուցիր անդամները հետամուտ են հաւաքուելու, եւ տէրութիւնք ոմանք կրնան փորձուիլ օգնել անոնց առ այս, այն նոյն շարժառիթներով որոնք երբեմն բերին զՌուսիա ի ստեղծել պալքանեան իշխանապետութիւններն կամ թագաւորութիւններն, եւ զԱւստրիա, կամ զԱնգլիա՝ ի յափշտակել Ռուսիոյ տեղը, գերակշիռ ազդեցութիւն ի գործ դնելու համար այդ ժողովուրդներուն եւ անոնց կառավարութեանցը վրայ։ Այս քաղաքականութիւնը բաւական յաջող չեղաւ Ռուսիոյ մասին՝ որպէս զի անիկա զնոյնն ի գործ դնել ուզէր ուրիշ կէտերու վրայ ալ։ Այս միջոցին յաւէտ Անգլիա կը թուի ունենալ, կամ կարծել ունենալ, շահ՝ իր հովանաւորութեան ներքեւ Հայ ազգայնութիւն մը վերակազմելու։ Սակայն Ռուսիա չի կրնար անտարբեր մնալ քաղաքական գործի մը որ ընդդէմ իրեն պիտի կատարուէր եթէ առանց իրեն կատարուէր, եւ իրեն մեծապէս կարեւոր է, եթէ օր մը հայ ազգութիւնը վերակազմուէր իր ասիական սահմանագլխուն վրայ, օտար գտնուած չըլլալ այդ վերականգնումին։"

Այդ յօդուածի պարզ իմաստն այն էր թէ Ռուսիա, յամենայն դէպս, չէր ուզեր հայ ազգութեան վերակազմութիւնը տեսնել իր սահմա-

կան սահմանագլխուն վրայ, և նուազ եւս՝ տեսնել զայն Անգլիական ազդեցութեան շնորհիւ կատարուած ։

Սակայն ‘‘Նօվօէ Վրէմիա” ռուս թերթը աւելի որոշ կը խօսէր, մանաւանդ այն յօդուածին մէջ որ ‘‘Քրդաստա՞ն թէ Հայաստան’’ խորագիրը կը կրէր, եւ կը փաստէր թէ Հայաստան գոյութիւն չունէր ։ Այս թերթը վճռականօրէն կ՚ըսէր · ‘‘Մեզի կը թուի թէ Անգլիացի քաղաքագէտները շատ խախուտ ենթադրութիւն մը կ՚ընեն հաւտացնելով որ եթէ Ռուսիա եւ Ֆրանսա չեն մասնակցիր Մեծն Բրիտանիոյ յարձակողական գործողութեանց (ընդդէմ Թուրքիոյ), գոնէ արգելք ալ չեն յարուցաներ ։ ...Անգլիացւոց նպատակն է նոր նուաճումներ ընել, սակայն անոնք կը հանդիպին Ռուսիոյ և Ֆրանսայի վճռական դիմադրութեան ։”

Զարախոհ ու հայատեաց Լօպանօֆն էր Ռուսիոյ ղեկավարն, և Հանօթօ՝ Ֆրանսայի արտաքին գործոց նախարարն՝ երկուքն ալ ‘‘փաշա” կոչուելու արժանի արարածներ, որոնք Համիտին համամիտ գտնուեցան և իրենց ազդեցութիւնն ի սպաս դրին ամենանուաստ միջազգային անարդարութեան մը ։ Իսկ Հայքս աննկարագրելի յուզմանց մէջ կը ծփայինք, չականջելով մերթ անգլիական չռնդալից յայտարարութեանց, եւ մերթ հակառակորդ զօրութիւններու անհամակիր կամ թըշնամական բաչքաղանաց, ու սիրտ ի թունդ կը տատանէինք երկիւղի եւ յուսոյ միջև երկար տարի մը ։ Մեր յոյսը հազիւ երբեմն վստահութեան կը մօտենար, բայց աւելի ձմլիչ ու մահացու հարուածի մը մօտալուտ պատահականութեան

երկիւղը աւելի յաճախ կը սարսէր մեր ամբողջ էութիւնը։ Ռուսիոյ դիւրազգայութիւնները չվիրաւորելու անհուն զգուշութեամբ կը խօսէինք, գիտնալով թէ անոր ձեռքն էր ամբողջ պայքարն ի դերեւ հանելու կարողութիւնը։ Ժողովրդային համաժողովի յուզմանց և լրագրական աղաղակներու առաջին շրջանին մէջ կը ծանուցանէի թէ ''Եթէ եւրոպական թեւարկութիւն չհասնի Թըրքահայոց և ներկայ յոյզք և խոյզք ապարդիւն վերջանան, Թուրք Կառավարութիւնը մինչեւ ցարդ եղածէն տարբեր փութով եւ կատաղութեամբ պիտի ջախջախէ և մահացնէ մեր ազգութիւնը։ Գործելու տարի է այս տարի։ Պէտք է ՀԱՐԻՒՐԱՊԱՏԻԿՆ ընել սովորական ժամանակաց մէջ գործուածին։ Ուսեալն և անուս, ընչեղն և անինչ, յեղափոխականն եւ ոչն, այս տարի չքմեղանք չունին ձեռնպահ կամ բաժանեալ մնալու։ Օ՜ն, ի գործ միաբան։'' (''ՀԱՑՔ'', 15 Յունուար 1895։)

Ամենայն Հայոց Վեհ. Հայրապետը, ՄԿՐՏԻՉ Ա., անձամբ դիմեց առ Զարն Ռուսիոյ, Յունիս 12ին։ Ընդունելութիւնը յոյժ քաղաքավար էր։ Բէդէրհօֆի կայարանէն յարքունիս ուղեւորութիւնն եղաւ պետական կառքերով, Ս. Կաթողիկոսն բազմած առանձին կառքի մը մէջ զոր կը քաշէին վեց ձիեր։ Խորհրդական ԵԶԵԱՆ, հայազգին, թարգման եղաւ Հայրապետին։ Նորին Կայսերական Վեհափառութիւնն ընդունեց Հայ եկեղեցւոյ պետին ուղերձը որ կարդացուեցաւ, եւ մեծ քաղցրութեամբ պատասխանեց թէ ինքը կը համակրէր անոր կրօնակցաց եւ պիտի ընէր անոնց համար ամեն ինչ որ հնար էր։

Միւս կողմէն՝ Կ. Պոլսոյ Հայոց Պատրիարքն, Ս. ԻԶՄԻՐԼԵԱՆ անդադար ու անխոնջ գործունէութիւն մը ի հանդէս կը բերէր։ Սրբազանը անսովոր ժողովրդականութիւն մը կը վայելէր, որ չէր սահմանափակուեր հայ հասարակութեան մէջ։ Բարեգործութիւններովն համբաւաւոր յոյնի մը, Զարիֆիի, յուղարկաւորութեան հանդիսին ղրկեց իր փոխանորդը, այցաքարտով մը։ Երբ Զարիֆիի ընտանիքը այցաքարտն առին, ակնածանօք համբուրելով ճակատնուն դրին։ Պատրիարքը այցաքարտ միայն չէր յղեր, այլ և օրհնութեան կոնդակներ։ Մէկ շաբթու մէջ չորս կոնդակ ղրկեց Լոնտոն մեծանուն անձնաւորութեանց։ Կոնդակներն Ֆռանսերէն թարգմանութեամբ դրուեցան արծաթէ տուփերու մէջ, իւրաքանչիւր տուփի վրայ ընդունողին անունը արձանագրուած։ Պատրիարքը նաև դիտողագիր մ'ուղղեց Բ. Դրան յորում հայ ժողովրդեան յուզումը պարզելով՝ կը խնդրէր որ բարենորոգութիւններուն գործադրումը փութացուէր, եւ կը յաւելուր թէ, հակառակ պարագային, պատասխանատու չէ ժողովրդեան։ Այս դիտողագիրը խռովեց զԴուռը և Սուլթանը զայրացուց։

Արտասահմանի մէջ ալ հայ գործիչները, հին թէ նորեկ, կը կրկնապատկէին իրենց ջանքերը։ ՉԵՐԱԶ, ԹՈՒՄԱՅԵԱՆ, ԻՍԿԷՆՏԷՐ, ԱՇՈՏ ԵՐԿԱԹ, ի միջի այլոց, կը գրէին, կը բանախօսէին, ժողովներ կը կազմէին, և դիմումներ կ'ընէին կառավարութեանց։ Սասունէն փախստական եղող Հայերու խումբ մը, պարունակելով զՊետրոս, դիւցազն մը, զՊետրոսի կինը եւ զՎարդան Տիլօյեան, ճշմարիտ, պարզ եւ ուշիմ հայ մը,

շատ մը հանրային հաւաքոյթներու մէջ երեւցաւ յԱնգլիա, եւ Վարդան եկաւ ու երկար ամիսներ նոյնպէս ծառայեց յԱմերիկա։ Այս երկրին մէջ ՀԱՅՈՑ ՀԱՅՐԵՆԱՍԻՐԱԿԱՆ ԴԱՇՆԱԿՑՈՒԹԻՒՆԸ, եւ ՏԻԳՐԱՆ ՍԻՒՆԻ գրչանուան տակ ծպտեալ ուսումնական հայ մը, ինչպէս եւ ուրիշներ, անխոնջ պայքար մը մղեցին, մեր օրաթերթերու մէջ անգլիերէն յօդուածներ, հերքողականներ, լուսաբանութիւններ հրատարակեցին Հայաստանի վիճակին և հայկական շարժումին վրայ, եւ կաշառուած թերթերու ու անձերու ստայօդ ու չարախօս յայտարարութիւններն խայտառակեցին։

Երբ կառավարական յուզմանց շրջանին մէջ Անգլիոյ կողմէ սպառնալից յոխորտանքը անհետեւանք մնալու կասկած ներշնչել սկսաւ, մեր ալ վախերը սաստկացան, եւ գուշակեցինք թէ Հայք կրնային Կ. Պոլսոյ մէջ յուսահատական խլրտումներ ընել, եւ կ'ըսէինք թէ "Գաւառաց մէջ կացութիւնը տարբեր է, հոն Թուրք խաժամուժը կրնայ, Եւրոպայէն աներկիւղ, ամեն ծայրայեղութիւն գործել, կին, մանկտի խողխողել, կանոնաւոր զօրքն ալ իրեն օգնական ունենալով։ Խժդժութեանց լուրն շատ ուշ կը հասնի Եւրոպա եւ ոեւէ անմիջական օգնութիւն անկարելի կը լինի հասցնել քրիստոնէից։ Ուրեմն գաւառի Հայք կը զինուին, կը պատրաստուին այժմ, կը կարծենք, որքան կատարելապէս որ կրնան, որպէս զի Թուրքք իրենցմէ պատկառին, եւ զի, երբ մահմետականք զիրենք ջարդելու ելլեն, կարող ըլլան Հայք անձնապաշտպան լինել կամ չափով իւիք զսպել իսլամաց կատաղութիւնը։ Զիարդ եւ իցէ, շատ Հայեր պիտի

ջարդուին այդ ժխորմանց մէջ, եւ ոչ սակաւ Տաճիկներ։" ("ՀԱՑՔ", Սեպտ. 1, 1895)։ Դըժբաղդաբար այս նախագուշակութիւնս շատ շուտով, քանի մը շաբաթէն, ճշմարտուիլ սկսաւ։

Իրաց ընթացքը դէպի անյաջող վերջաւորութիւն մը որոշապէս միտիլ սկսաւ հուսկ ուրեմն։ Անգլիա կը թուլնար. Ռուսիա կեղծեաց դիմակը կը նետէր, Թուրքիա ժանիք ցոյց կուտար, ու Հայք կը դողային։

Դուռը ինչ ինչ նշաններէ կը գուշակէր թէ Հայք Կ. Պոլսոյ մէջ ժխորում մը յարուցանելու պիտի փորձուէին։ Փրկչի Հիւանդանոցին (Սահմանադրութեան) տօնին առեն շատ յանդուգն երեւցած էր հայ երիտասարդութիւնը, եւ այդ առթիւ 120ի չափ անձինք բանտարկուած էին։ Նոյնպէս Ս. Սահակայ և Մեսրոպի տօնին առթիւ երբ բազմութիւն լեցուած էր Հիւանդանոցին պարտէզն, երիտասարդք ազատ երգեր հնչեցուցած էին և երկու լրտեսներ չարաչար ծեծած։ Երիտասարդք՝ շարունակելով իրենց խանդավառ երգեցողութիւնը մինչեւ Սամաթիա, պահականոցին առջեւ "Կեցցէ Հայաստան" գոչեր էին։ Այս ցոյցն ևս բանտարկութիւններու առիթ էր եղած։ Թուրք երիտասարդութիւնն ալ, տատամսոտ և անվստահելի յեղափոխաններու բաժինը, կ'աշխատէր Հայերն համոզել որ 50,000 հոգիէ բաղկացած ամբոխ մը կազմելով ցոյց մը ընէին Եըլտըզի Պալատին առջեւ, խոստանալով իրենց աւելի քան երկրայական աջակցութիւնը։ Եկաւ սակայն դժբաղդ վայրկեանը երբ Պոլսոյ հայ երիտասարդութիւնը յուսահատ սրտմտութեան արտայայտութիւն մը ընել հարկ համա-

ընելով, Սեպտեմբեր 30ին ցոյցն ըրաւ, յուսալով թէ այս կերպով թերեւս եւրոպական միջամտութեան հարկ ծագէր։

Ահաւասիկ այդ կարեւոր ցոյցին հանգամանքը։ Սեպտեմբեր 28ին մայրաքաղաքին հայ երիտասարդութիւնը գրով ծանոյց Բ. Դրան, Ոստիկանութեան եւ Արդարութեան Նախարարներուն թէ հանդերձեալ էր ընել ցոյց մը՝ եւրոպական ժողովրդոց մէջ սովորական եղող տեսակէն, եւ աղերսագրով մը Հայկական բարենորոգումներու գործադրութիւնը պիտի հայցէր։ Յաջորդ օրը ոստիկանաց խումբեր եւ հեծեալ ժանտառմաներ կը հսկէին Գում-Գափուի, Կէտիկ Փաշայի և Եէնի Գափուի թաղերը։ Սեպտ. 30ին հայկական տարազներով գաւառացի օրիորդներ կը ներկայանան առաւօտուն Ս. Իզմիրլեան Հօր ի Պատրիարքարան, մին ուղերձ մը կը կարդայ, նկարագիրը Հայուն անհանդուրժելի կացութեանը, և կը խնդրեն որ ազգին պետը առաջնորդէ հայ աղերսարկուներուն դիմել ի Բ. Դուռն։ Ս. Պատրիարքը կը մերժէ համակերպիլ եւ կը ջանայ հանդարտել խռնեալ ամբոխը։ Բազմութիւնը իբր 2,000 հոգիէ բաղկացած, երգելով կը մեկնի եւ կ'ուղղուի դէպի Բ. Դուռն։ Ամբոխը երթալով կը ստուարանայ եւ Բ. Դռան առջեւ 5,000ի կը բարձրանայ։ Աղերսագիր ի ձեռին յառաջացող մի քանին 'յետս կը մղուին։ Երիտասարդք կը պատասխանեն թէ իրենք անզէն են եւ կ'ուզեն անզէն ըլլալնին ապացուցանելէ վերջ ներս ընդունուիլ Եպարքոսին մատուցանելու իրենց աղերսագիրը։ Պաշտօնեայք սպառնալեօք կը հրամայեն Հայոց ցրուիլ, եւ կը հրեն։ Ասոր վրայ

երիտասարդներէն մի քանիներն կրակ կ՚ընեն, պահուած ոստիկանաց խումբեր երեւան կ՚ելլեն ու կը սկսին վայրագօրէն զարնելով ու սպաննելով ցրուել հայ բազմութիւնը։ Փախստականներէն իբր 2,000 հոգի կ՚ապաստանին Մայր եկեղեցին, որոց մէկ մասն հոն կը մնան օրերով։ Սոֆթաներ եւ սոֆթայի տարազով Թուրքեր ամեն կողմ սարսափ կը սփռեն, թոպամահ կ՚ընեն կամ խժդժօրէն կ՚անդամատեն խաղաղ ու անմեղ անցորդներ, Քրդեր խաներու վրայ կը խուժեն ի Ջուգուր-Պոստան, ի Գասըմ-Փաշա, Գարա-Կէօմրիւկ, Էթմէյտանի, Տօլմա-պաղճէ եւ այլն, եւ շատեր կը վիրաւորեն ու կը սպաննեն։ Ժողովուրդը զարհուրած՝ աւելի կը խռնուի եկեղեցիներն եւ շատ դժուար կ՚ըլլայ համոզել զանոնք վերջապէս դուրս ելլել այդ նուիրական ապաստանարաններէն։

Կ. Պոլսոյ դեսպանատունք նորէն խռովեցան ի տես այս բարբարոսութեանց։ Եւրոպացիք պատեհութիւնը ունեցան Թուրք կառավարութեան խժդժական գործելակերպը Հայոց մասին դիտելու։ Դուռը կը հնարէր այնպէս ցոյց տալ Եւրոպիոյ իբր թէ մահմետական հասարակութիւնը կրօնական նախանձաւորութենէ անդիմադրելիօրէն մղուած՝ Հայոց դէմ կ՚ելլէր եւ իր Փատիշահին ցոյց տրուած եւրոպական կամ անգլիական վիրաւորիչ վարմունքին վրէժը կը լուծէր։ Եւ իրօք ի ձերբակալելն զՀայերն՝ ժանտարմաներն կ՚ըսէին հեգնօրէն. «Կանչեցէ՛ք Անգլիային որ ազատէ զձեզ։»

Կը վախցուէր թէ այս ծրագրեալ խժդժութիւններն ի գաւառս ես պիտի ի գործ դրուէին.

մանաւանդ որ արդէն Քէմալի կողմը փորձն եղած էր բաւական ընդարձակօրէն։ Անգլիական կառավարութիւնը գօտեպնդած՝ պիտի ելլէ՞ր իր պարտքը կատարելու. բաւական զօրացած ըլլալէ յետոյ՝ պիտի տեղա՞ր կապարէ կարկուտը։ Մէկ կողմէն կը ծանուցուէր թէ Սըր Ֆիլիփ Քըրի, իր վերջին տեսակցութեան ատեն Մեծ Եպարքոսին հետ, պնդած էր թէ Ծրագրին ընդգրկման մասին որոշ պատասխան կ՚ուզէր մինչեւ հինգշաբթի օրն։ Եթէ գոհացուցիչ չըլլար պատասխանը, Բրիտանական Նաւատորմիղ մը երկաթ պիտի նետէր Կ. Պոլսոյ առջեւ և Պոսֆորի մէջ պիտի մնար մինչև որ խնդիրը կարգադրուէր։ Իսկ միւս կողմէն՝ Լոնտոնեան հեռագիր մը կ՚ըսէր թէ Պահպանողական հետեւողներու շատերուն կողմէն խնդիր մատուցուած էր Լորտ Սալզպըրիի հետեւիլ զԹուրքիա պաշտպանելու աւանդական քաղաքականութեան, և թէ հաւանօրէն Նախարարապետը պիտի մեղմացնէր իր պահանջներու խստութիւնը։ Միանգամայն կը ծանուցուէր թէ Տարտանէլի նեղուցին մէջ կը գտնուէին Թորփիտոներ, և ռազմամթերք կը ղրկուէին ամրութիւններուն իբրև պատրաստութիւն պաշտպանելու զՏարտանել նաւային ցոյցի մը փորձին դէմ։

Մանաւանդ յիշատակի արժանի է Հոկտ. 8ին առ Standard յղուած պոլսական հեռագիրն որ կը գուժէր թէ "Ռուսիա վստահացուցած է զԴուռն թէ ինքն թէպէտ միացեալ Տէրութեանց հետ անոնց պահանջներուն մասին, մտադիր չէ ծայրայեղ միջոցներ ձեռք առնելու։" Եւ նոյն ատեն Պէռլինէն հեռագիր մը կը հաղորդէր պալ-

սական Թարմ լուրը թէ Հայկական խնդիրն կամաց կամաց Մեծին Բրիտանիոյ և Ռուսիոյ միջեւ պայքարի մը չուկէտը կ'ըլլար Պոսֆորի մէջ գերակշիռ ազդեցութեան համար։

Նոյն Հոկտեմբեր 8ին է որ Տրապիզոնի եւ շրջակայ քանի մը գիւղերու մէջ կը կրկնուի Պոլսոյ մէջ եղած ջարդի փորձը, նոյնպէս յաջողութեամբ։ Մայրաքաղաքին մէջ սպաննուած կամ աներեւոյթ եղած Հայերուն թիւը 700 կը հաշուէին, Տրապիզոնի զոհերունը՝ 400։ Շաքիր Փաշա, որ հայկական բարեկարգութեանց համար կայսերական յանձնակատար կարգուած էր, իր վեհապետին հրահանգներն ու բաղձանքները խորապէս ի միտ առած՝ հապճեպով ճանապարհ ինկած էր Օգոստոսի վերջերը, և Տրապիզոնէն անցած էր, ու անոր ուղեգծին ուղղութեամբ ջարդի ալիքը սկսած էր անհեղասահ խաղալով Հայութիւնը թաւալգլոր վարել, տանել դէպի խորխորատ։ Ալ ամեն ինչ պարզուած էր։ Ռուսիոյ սեւ ծովու Նաւատորմիղը, փոխանակ իր ձմեռանոցն երթալու ի Սեվաստաբօլ, ինչպէս ուրիշ տարիներ, աճապարանօք պարէնաւորուած էր յՕտէսա և դէպի հարաւ յղուած էր Վոսփորի բերնին մօտ անծանօթ վայր մը։ Բրիտանական նաւատորմիղն Լէմնոսի մօտ կը կենար։ Եւ այս երկու նաւատորմիղներն կը նկատուէին յաւէտ դէմ առ դէմ կեցած իբրև հակառակորդներ, քան թէ Սուլթանին դէմ։ Հեռագիրը կը ծանուցանէր թէ Անգլիա և Ռուսիա վերջ տուած էին համաձայն գործելու կեղծիքին և վերջապէս կեցած էին ազատ ի դիտել Թրքական խառնաշփոթութիւնն ու անիշխանութիւնը՝ իւրաքանչիւրը իր հաշուոյն համար։

Երկարատեւ կատակերգութիւնը այսպէս տեղի տուած էր ամենաքստմնելի եղերերգութեան մը։ Ամերիկայի և Անգլիոյ ժողովրդոց սրտաբուղխ բողոքի բարձրագոչ աղաղակները, Բրիտանական Առիւծին ահեղ մռնչիւնները, երեք Տէրութեանց, վերջապէս նաև վեց մեծ Տէրութեանց բոլոր երկունքն ու դիւանագիտական երկարատեւ պայքարը յանգած էին բացարձակ անզօրութեան խայտառակ վիճակի մը։ Թուրքը-Սասնոյ արեամբ արիւնաթաթաւ դաշոյնը պատեանէն քաշած՝ դրած էր Հայու կրծոցը, Հայ ազգը՝ անճարեկ ու զարհուրած՝ պլլուած էր Եւրոպիոյ ոտքերուն և կողկողագին կը հայցէր պաշտպանութիւն, իսկ Եւրոպա մէկդի կը հրէր զայն և կը ձգէր Գազանի'ն առջեւ զոր տարի մը շարունակ իր սպառնալեօք և յոխորտանքներով կատղեցուցած էր։ Ահա սեւ, սե՛ւ պատկերը զոր պէտք է նկարիչը յօրինէ ու արձանագրէ— "ԵՒՐՈՊԱ, ՀԱՅԸ և ԹՈՒՐՔԸ։"

Ինչո՞ւ Եւրոպա չպաշտպանեց, չփրկեց ըզՀայս։ Ի՞նչ կրնանք սպասել կամ ուզել Եւրոպայէն։ Ասոնք վերջին աստիճան կարեւոր խնդիրներ են մեզի համար. քննենք զանոնք։

# ՀԱՅԿԱԿԱՆ ԴԱՏԸ

## ՔԱՂԱՔԱԿԻՐԹ ԱՇԽԱՐՀԻ ԱՌՋԵՒ

### ԳԼՈՒԽ Ը

Դիտմամբ քիչ մը մանրապատում նկարագրեցի յուզմունքի այն բազմափուլ հոլովոյթը զոր համաշխարհական կարծիքը մեր դատին վերաբերութեամբ կրած է վերջին քառորդ դարու ընթացքին։ Հայաստանի մէջ քիչերը երբեք իմացած են թէ քաղաքակիրթ աշխարհի 1895ի հակաթուրք գրգռումն ո՛րքան ընդհանուր էր եւ ո՛րքան անզուսպ իր արտայայտութեանցը մէջ՝ ցորչափ այդ արտայայտութիւնք Մամուլի բերաններէն, բեմերէն ու Խորհրդարաններէն կ՚արձակուէին։ Սակայն չկար մեզի համար բան մը այնքան բացէ ի բաց ակներեւ որքան այն իրողութիւնը թէ բարոյական կարգի բոլոր այդ ճնշումները բնաւ չպիտի զօրէին ի հաւանութիւն ածել զՍուլթանն որ հայկական բարեկարգութեանց գործադրութիւնը եւրոպական վերահսկողութեան ենթարկէր։ Զինեա՛լ ուժի, թնդանօթներո՛ւ կուրծքէն արձակուած արտայայտութիւններու առջեւ միայն պիտի գիջանէր Ապտիւլ Համիտ։ Ուստի անիկա բոլոր սպառնալից որոտումներուն սիրտ ի թունդ ունկնդրեց՝ միշտ յուսալով թէ փոթորիկը պիտի անցնէր առանց իր բռնակալական մենաշնորհներէն նշանախեց մը կորզելու։

Ուրիշ՝ և աւելի ահաւոր՝ իրողութիւն մը յայտնի էր սկիզբէն. այն թէ, Արեւմուտքի այս-բարոյական ու դիւանագիտական յարձակումներն ոչ միայն պիտի վրիպէին իրենց նպատակէն այլ և ամենազարհուրելի վիճակ մը պիտի ստեղծէին Արեւելքի մէջ եթէ զինուորական ուժով յուղղութիւն չբերուէր Համիտ: Այնքան յոխորտանքի և արհամարհոտ քննադատութիւններու անսպառ հոսանքը կուլ տուած ըլլալէ վերջը, Սուլթանը իր զսպեալ սրտմտութեան բոլոր թոյնը պիտի ժայթքէր Եւրոպայի երեսին՝ չղթայազերծ կատաղութեամբ ճմլելով հայ ժողովուրդը:

Նախագահ Ռուզվէլթ ի խօսելն անցեալ օր միջազգային արդարութեան վրայ՝ կ՚ըսէր. ‘‘Եթէ մարդ մը բան մ՚ըսէ ուրիշ մարդու մը, որքան աւելի զօրաւոր ըլլայ այս ուրիշ մարդը, այնքան նուազ հարկ պիտի համարի պատասխանել: Անիկա չուզեր խօսիլ մինչեւ որ գործելու ժամանակը գայ, և այն ատեն անիկա կը գործէ անյողդողդ որոշմամբ: Ամենէն արհամարհելի դիրքը որ կրնայ երեւակայուիլ՝ այն մարդո՛ւնն է որ բարձրաձայն խօսած ըլլալէ յետոյ՝ տատամսոտ ընթացք մը կը բռնէ: Ու ճիշդ նոյն բանը պիտի ըսեմ ազգերու վարմունքին համար:’’

Եւ մենք ճիշդ այդ բանը ըսինք Անգլիո՛յ ընթացքին համար: Հասարակութիւնը, կղերական հեղինակութիւնները, ազնուականք, նոյն ինքն Նախարարապետ Սալզպըրի փրփրած բերանով յանդիմանեցին ու երկար զկծեցուցին Սուլթանը, կործանո՛ւմը գուշակեցին անոր կայսրութեան, և յետոյ... տեղերնին նստան, առնելով ‘‘ամենէն արհամարհելի դիրքը որ կրնայ երեւակայուիլ:’’

Սակայն ‘‘արհամարհելի’’ մակդիրը չորակեր այդ դիրքը։ Անգլիա, ի պատիժ իր արհամարհելի ընթացքին ծանրապէս տուժեց իր վարկէն, սակայն որովհետեւ նեղութեան գերագոյն վայրկեանին որոշեց լքանել կատղած Թրքին ձեռքը այն հայ ժողովուրդը որուն պաշտպանութիւնը դաշնագրերով յանձն առած էր, ՈՃԻՐ · մը գործած եղաւ։

Սակայն Անգլիոյ ոճիրը ունի իր մեղմացուցիչ պարագաները և թեթև կ'երևնայ առընթեր ռուսականին։ Անգլիա տրամադիր էր զինուորական գործողութեան դիմելու եթէ իրեն դէմ չի գտնէր զՌուսիա։ Մեծագոյն ոճրագործը Ռուսիո՛յ կառավարութիւնն էր, քրիստոնեայ ցեղերու պաշտպա՛նը յԱրեւելս...

Հոս չպիտի յամենամ դաշնադրուժ Տէրութեանց իւրաքանչիւրին պատասխանատուութիւնները պարզելու և ոճրին որքանութիւնը չափելու։ Թրքական վայրագութեանց դէմ քաղաքակիրթ ժողովրդոց յուզմունքին երկար նկարագրութիւնը ուրի՛շ նպատակով ըրի։ Ինչպէս դաշնագիրները անանկ ալ հանրային յուզմունքը մեզի շատ սուղի նստած են։ Եւրոպիոյ հանդէպ մեր ազգին դիրքը արմատական սխալի մը վրայ խարսխուած է սկիզբէն ի վեր· այդ սխալէն աղբիւրացած են յուսախաբութիւնք, հիասթափմունք և մեծամեծ աղէտք։ Վերջին քառորդ դարու թանկ փորձառութիւնը պէտք է մեզ բուժէ այդ մոլորութենէն։ Տեսնենք հիմա այս մասին իրողութեանց դասը մեր ազգին համար։

Նախ և առաջ սա կարեւոր իրողութիւնը ուշադրութեան առնելու ենք թէ հանրային զգացումը, վաղանցիկ թէ քիչ շատ տեւական, տարբեր բան է, ու գործադիր Իշխանութիւնը տար-

քե՛ր։ Սահմանադրական ազգերու մէջ կարծիքը ազդեցութիւն ունի, երեսփոխանական մարմինը կրնայ ժողովրդային յուզմունքէն տպաւորութիւններ կրել, սակայն և այնպէս կառավարական մեքենաւորումը բարդ ու կնճռոտ է, հանրային զգացումը գործնական քաղաքականութեան փոխուելու համար խոշոր անջրպետ մը կտրել անցնելու է, և կրնայ շատ մը կէտերու վրայ խոչընդոտնիլ կամ կասիլ։ Ասիկա երկրի մը ներքի՛ն գործերուն համար իսկ ճշմարիտ է, բայց ե՛ս աւելի միջազգային քաղաքականութեան ասպարէզին վրայ ուր այլևայլ ազգաց հաշիւներն ու շահերը իրարու կը բաղխին։

Եւ հոս է որ մեր սխալին ահագնութիւնը երևան կ'ելլէ։ Տէրութիւն մը որքան հզօր եւ ազդեցիկ ալ ըլլայ, չէ կարող իր ժողովրդին ամեն ուզածն ընել, և մանաւորապէս փափուկ խնդիր է Տէրութեանց միջամտութիւնը իրարու գործերուն մէջ։ Հայկական Խնդրոյն բարւոք կարգադրութիւնը այս կամ այն պետութեան կամքէն կախեալ չէ, ընհանուր համաձայնութիւն հարկաւոր է, կամ թէ Պետութեանց մէջէն գերակշիռ զօրութիւն ունեցող խմբակ մը՝ յաղթելով հակառակող Տէրութեանց արգելքներուն՝ իր պատշաճ համարած լուծումը պէտք է տայ անոր։ Փորձերը ցոյց տուած են, և մեր պարագային նորէն ցոյց տուին թէ այդպիսի համամիտ խմբակցութեան մը իրականացումը որպիսի անյաղթելի արգելքներու կը հանդիպի սովորաբար։

Աւելորդ է կրկնել թէ ի նպաստ Հայոց դաշնագրական յանձնառութիւններն իրական համակրու-

թենէ րխած չէին այլ Տէրութեանց ոմանց հակընդդէմ շահերէն ու ուղղութենէն։ Անգլիա որ ամենէն աւելի կը փափաքէր մեր խնդրոյն յաջող կարգադրութեանը, դիւանագիտական ճարտարութեան շնորհիւ յաջողիլ կը նկրտէր, և մըտադիր չէր մեծ զոհողութիւններ յանձն առնել։ Ենթադրենք սակայն Տէրութիւն մը իրօք համակիր մեզի, ի վերայ այսր ամենայնի պատճառ պիտի չունենայինք անոր զինեալ աջակցութեանը ապաւինած՝ մխիլ յանդուգն ու վտանգաւոր ձեռնարկներու։ Պօէրները այնքան ուժով ու երկար ոգորեցան Անգլիական բանակներուն հետ, Գերմանիա, Ֆռանսա և ուրիշ Տէրութիններ համակիր էին տկար բայց արդար կողմին, բայց որովհետև չէին կրնար հաւաքական միջամտութիւն մ՚ընել, ոչ մէկը առանձին յանձն առաւ Անգլիոյ հետ պատերազմի բռնուիլ։

Արդի ժամանակաց ամենէն նշանաւոր օրինակը, այս տեսակէտէն, Յունաստանինն է։ Յոյները մտաւորական և տնտեսական վերածնութեան ջանքերու նուիրած էին իրենց բոլոր ուշադրութիւնը կէս դարէ ի վեր երբ, 1769 ին, իրենց այդ աշխատանքը ողբալի կերպով ընդմիջուեցաւ ապստամբութեան վաղաժամ փորձով մը։ Ռուսիոյ կայսրուհին Կատարինէ պատերազմ ունէր Օսմանցւոց հետ, և Յոյնք, վստահելով կայսրուհւոյն խոստմանց, ոտքի ելան։ Սակայն ռուսական բանակներու և նաւատորմերու տեղ քանի մը նաւեր միայն եկան Յունաց օգնութեան, և քիչ ատենէն լքանելով իրենց Յոյն զինակիցները՝ քաշուեցան Ասիա, իսկ Յոյները չարաչար ջախջախուեցան, ու բազում կոտորած-

ներ տեղի ունեցան։ Երբ 1787ին նորէն Ռուսիա և Թուրքիա ելան ընդհարիլ, Յոյները վերստին փորձեցին իրենց անկախութիւնը ձեռք բերել ու դարձեալ ճմլուեցան։ Ասոր վրայ զգացին իրենց ներքին ոյժերը աճեցնելու պէտքը և մինչեւ 1821 ջանացին իմացական եւ նիւթական զարգացմամբ պատրաստուիլ անկախութեան ճիգին համար։ Եւ այդ թուականին մեծ յեղափոխական պայքարը վերսկսաւ։ Թէպէտ Անգլիացի, Ֆրանսացի, Գերման բանաստեղծներ և զօրապետներ անհատապէս գնացին իրենց ծառայութիւնը մատուցանել յեղափոխական Յունաստանի, ու այսպէս ընելով երախտագիտութեան պարտք մը հատուցանել կ'ուզէին անոր որ այնքան մեծ բանից ու վեհ գործերու երկիրն ու եւրոպական քաղաքակրթութեան դայեակն էր եղած, սակայն և այնպէս Տէրութիւններն ձեռնպահ մնացին ինչպէս մնացած էին կէս դարէ ի վեր ի տես այս անհաւասար պայքարին։ Յունաստանի անձնուէր զաւակները տարիներով կըռիւը շարունակած էին հիանալի քաջութեամբ ու անձնուիրութեամբ, սակայն կրկին ու կրկին գերակշիռ թուրք զօրութենէն ճմլուած յուսահատ էին և ուժասպառ, երբ հուսկ ուրեմն, 1827ին Ֆրանսա, Անգլիա և Ռուսիա օգնութեան եկան և Նավարինօյի վճռական ճակատամարտիւ ջախջախեցին Թուրքեւեգիպտական հզօր նաւատորմիղը։ Անկէ քիչ ժամանակ վերջ՝ դարձեալ հարկ եղաւ որ Ֆրանսա 14,000 զօրքով զօրավիգ ըլլար Յունաստանի։

Պատմութիւնը այսպէս ցոյց տուած էր թէ ազգերու համակրութիւնը, նոյն իսկ երբ շատ անկեղծ ու զօրաւոր, կրնայ տասնեակ տարինե-

րով վարանիլ կառավարական գինեալ արտայայտութեան փոխուելու։ Ուրեմն ո՛ր ժողովուրդ, որ իր անբաւական ուժերով յեղափոխութիւն ընելու կ'ելլէ՝ ակնկալով որ օտարները վաղընդփոյթ իրեն օգնութեան հասնին, ինքզինքը չարաչար յուսախաբութեան և մեծամեծ վտանգներու նշաւակ կ'ընէ, ինչպէս ըրաւ դժբաղդաբար՝ այլոց դառն փորձառութիւններէ անխրատ՝ մեր ազգը։

Մեր ազգին ըրածը անխոհեմութիւն մը չէր սակայն, և ոչ պարզ անփորձութիւն մը, այլ աւելի՛ մեծ յանցանք մը։ Հարկ է բոլոր ճշմարտութիւնը անվերապահօրէն երեւան բերել։ Անկարելի է մեր յեղափոխական շարժումը Յունականին բաղդատել։ Յոյները սխալ հաշիւով եւ անճապարանքով ճամբայ ելան, սակայն և այնպէս ոյժ մ'ունէին, տարիներով կռիւ մղեցին Օսմանեան զօրութեանց դէմ, բաւական պատկառելի նաւատորմներ յարդարեցին և քանիցս յաղթեցին Թրքաց ծովային ուժերուն։ Յունաց ցամաքային զօրութիւնն ալ երբեմն կարեւոր համեմատութիւններ առաւ։ Կոլօքօթրօնիս 10,000է բաղկացած բանակով մը յարձակեցաւ Իպրահիմ Փաշայի վրայ։ Երբ Րէշիտ Փաշա 20,000 զօրքով Մեսսօլօնկի բերդը պաշարել եկաւ, 5,000 քաջ Յոյներէ կազմեալ զօրութիւն մը կար բերդին պահապան։ Այո՛, Յունացը յեղափոխական կռուի կոչուելու արժանի՛ պայքար մ'էր, երկարատեւ և քաջ ոգորում մը իրենցմէ բազմապատիկ աւելի զօրաց դէմ։ Սակայն և այնպէս Եւրոպական Տէրութիւնք երկար տարիներ լուռ հանդիսատես եղան Յունաց ընկճումներուն և վայրագ կոտորածներուն ի ձեռն Օսմանցւոց։

Նոյնպիսի օրինակ մը կ՚ընծայէ Ամերիկացւոց յեղափոխութեան պատմութիւնը։ Ֆրանսա անկեղծօրէն կը փափաքէր, թէ իր շահուն տեսակէտէն և թէ ազատական սկզբանց սիրով, օգնել Ամերիկայի, ասոր անկախութեան պատերազմին ատեն ընդդէմ Անգլիոյ, բայց կը վարանէր, եւ սպասեց մինչեւ այն օր երբ Սարաթօկայի ճակատամարտին մէջ Ամերիկացիք հիանալի քաջութեամբ յաղթեցին Անգլիացւոց եւ Պուրկօնի բանակը անձնատուր ըլլալու հարկադրեցին։ Ցա՛յնժամ, և միա՛յն յայնժամ Ֆրանսա ամեն վարանք ի բաց թօթափելով՝ իր զինեալ աջը կարկառեց Միացեալ-Նահանգաց։ Նոյն Ֆրանսան էր որ, նմանօրինակ շարժառիթներով, թեր ելաւ Իտալացւոց ընդդէմ Աւստրիոյ, բայց Իտալացի կամաւորաց գնդերը՝ Կարիպալտիի առաջնորդութեամբ, ինչպէս նաև Սարտինական զօրքը սխրալի և տոկուն քաջութեան բազում ապա,ոյցներ տուին։

Անոնք որ Հայկական յեղափոխութեան և ապստամբութեան վրայ կը խօսին, եթէ պարզամիտները խաբել չէ դիտումնին, պատմութեան և յեղափոխութիւններու վրայ իրենց տգիտութիւնը ցոյց կուտան։ Ո՞ւր է հայկական յեղափոխութիւն, ո՞ր տեղ յառաջ կ՚երթայ հայկական ապըստամբութիւն. ո՞ւր են մեր զօրավարներն ու զօրքերը, մեր ամրոցներն ու թնդանօթներ...։ Ի՞նչպէս կրնանք ուրիշ ժողովուրդներու բազմամեայ յեղափոխական պատերազմներուն տաընկեր դնել, օրինակ իմն, Սասնոյ 1904ի դէպքը, յորում մեր խաբուած լեռնցի քաջերը չզօրեցին չաբաթ մը գոնէ դիմադրել թշնամիին, ու չարաչար ջարդուեցան։

Եւ ի՞նչպէս կարելի է սպասել որ Եւրոպացիք զինեալ միջամտութեամբ ոյժ տան ''Հայկական յեղափոխութեա՛ն'', որպէս վերջ ի վերջոյ ըրին յունականին։ Սասնոյ վերջին ջարդէն առաջ՝ յեղափոխական առաջնորդ մը ինծի կ՚ըսէր թէ Հայերս պարտինք ապստամբութեամբ ցոյց տալ Եւրոպիոյ մեր ոյժը որպէս զի յարգուինք և հաշուի առնուինք։ Այո՛, պատասխանեցի, բայց եթէ ոյժ չունինք և միայն աղետաբեր խլրտումներ յառաջ բերելու յամառինք, փոխանակ յարգանք և աջակցութիւն առ մեզ հրաւիրելու, աւելի արհամարհելի կը հանդիսանանք ցոյց տալով ոչ միայն ուժի այլ եւ հասարակ ողջմտութեան պակասութիւն։ Եւ իրօք օտարական մը յայնմհետէ իր մէկ հրատարակութեանը մէջ ըրած է սա երգիծական դիտողութիւնը թէ Հայերը տարօրինակ սովորոյթն ունին իրենց դէմ դիտմամբ հրաւիրելու այնպիսի վտանգներ որոց դէմ դնելու միջոցներէն յայտնապէս զուրկ են։

Իբրև սկզբունքի խնդիր՝ հարկ է նաև ընդունիլ թէ ոևէ ժողովուրդ որ յեղափոխութեան կը ձեռնարկէ պարտի ինք իր ուժերուն ապաւինած, իր միջոցներուն յենլով ոտքի ելլել, ոչ թէ օտարներուն զինեալ օգնութեանը վրայ յոյս դնելով կամ բարեդէպ պատահմունքներու բաղդապաշտիկ հաշիւներով։ Անիկա իրաւունք չունի մեղադրելու օտարները եթէ անոնք իրեն օգնութեան չգան։ Անիկա իրաւունք ունի մեղադրելու միայն ա՛յն օտարը որ իրեն զինեալ աջակցութիւն խոստացած ըլլայ ու յետոյ դրժէ։ Ճըշմարիտն ըսելով ոչ մի օտար տէրութիւն, և ոչ իսկ օտար հայասէրներէն ոևէ մէկը երբեք պաշ-

տոնապէս կամ լոկ բարեկամօրէն յեղափոխական շարժումի յորդորած է զմեզ։ Մեր ամենէն հին ու վստահելի բարեկամը, Ճէյմս Պրայս, օրինակ իմն, խրատած է զմեզ չմխիլ մեր ուժերէն վեր ձեռնարկներու։

Ուրեմն եթէ մենք շնորհքով ապստամբութեամբ մը ոտքի ելած ու տարիներով դիմացած իսկ ըլլայինք, իրաւունք պիտի չունենայինք օտար տէրութեանց զինեալ միջամտութիւնը ինպաստ մեր պահանջելու. մե՛նք պարտէինք մեր յաղթութիւնը ի գլուխ հանել ու յաջողութեամբ պսակել։ Անմիջապէս աւելցնենք, սակայն, թէ Հայաստանի ինքնօրինութիւնը կամ անկախութիւնը այնքան սերտ կապակցութիւն ունի Արեւելեան Խնդրոյն և Ռուսական շահերու որ եթէ, Թըրքին յաղթէինք անգամ—ենթադրութեանց ամենէն ենթադրականը կ'ընեմ—կրնար Ռուսը մէջ մտնել, ու իր հետ բերել ուրիշ Տէրութիւն մ'ալ, ինչպէս ըրաւ անգամ մը ծայրագոյն Արեւելքի մէջ ու չթողուց որ յաղթական Ճապոնը իր վարձքը առնէր, և ինչպէս ուրիշ անգամ մը Աւստրիոյ կայսեր թեր ելաւ ընդդէմ յեղափոխական Հունգարիոյ (1849), կրնար, կ'ըսեմ, մեր ալ յաղթութեանց պսակէն զմեզ զրկել կամ զրկելու ջանալ։ Այսչափը ըսել հարկ էր զգացնելու համար թէ տոկուն, հզօր և յաղթական ապստամբութիւն մը անգամ որքան արգելքներու կրնար դեռ հանդիպիլ կատարեալ յաջողութիւն մը ըլլալու ճամբուն մէջ։

Հայերս տոկուն, զօրաւոր, յաղթահարիչ ապստամբութեան տեղ ինչ ենք ցոյց տուած մեծ Տէրութիւններուն։ Ներողա իրազեկ է թէ մեր

բոլոր Թմբկահարութիւնները 50 կամ 100 հոգիէ բաղկացած ողորմելի խմբի մը շուրջը կը կատարուի, խո՛ւմբ մը որ արտասահմանէն այսօր կը սպրդի կը մտնէ Տաճկահայաստան և մտադիր է վաղը փախչիլ Հայաստանէն։ Ինչո՞ւ մտաւ եթէ չպիտի կրնար պատերազմիլ Թշնամի բանակին դէմ, ի՞նչ էր իր հաշիւը, ձգտումը.— իր հաշիւը ինքը գիտէր, ու աշխարհի ալ գաղտնիք մը չէ։ Իր ներկայութիւնը առիթ պիտի տար Թուրք զօրաց խժդժութիւններուն, կոտորածի, քարուքանդի, և ինքը, հայ անմեղ կիներու և մանուկներու դիակոյտները ետեւը թողած փախչելու առեն՝ պիտի աղաղակէր Եւրոպայի որ օգնութեան հասնէր Հայոց։ Ահա Դաշնակցականաց ամենավատ, ամենախայտառակ խաղը զոր կը ժպրհին ապստամբութիւն, յեղափոխութիւն կոչել։

Եղկելիները իրենց աղետաբեր գործելակերպին արդարացումը կը կարկատեն հրէշային տրամաբանութեամբ կցկցելով սա երեք պատահականութիւնները—Խլրտում, Կոտորած, Եւրոպական միջամտութիւն։ Բազմակրկնակ փորձերը ապացուցին այդ խորհելակերպին անտրամաբանականութիւնն եւ անխղճմտութիւնը, զի կոտորածները կրկին ու կրկին եկան, սպասուածէն տասնապատիկ ահեղագոյն, սակայն եւրոպական արդիւնաւէտ միջամտութիւնը երբեք տեղի չունեցաւ։

Այս աղմկայոյզ եւ արտաքսածին խմբերուն ըրածը ոչ միայն հեռի է ճշմարիտ յեղափոխութեան մը բնոյթն ունենալէ, այլ և զուրկ է "ռոմանթիք" ըլլալու յատկութենէն։ Հայաս-

տանի ուէ մէկ կողմը երբ հարստահարեալ մը ինքզինք կամ իրեններն պաշտպանելու հարկին տակ՝ զէնքի կը դիմէ, ինչպէս բրին, օրինակ իմն, Վարդենիսցի հարսնեւորները ի պաշտպանութիւն հարսին (էջ 26), արարքը գովելի եւ ազնիւ է, ի՛նչ եւ ըլլան հետեւանքը։ ԻՆՔՆԱՊԱՇՏՊԱՆՈՒԹԻՒՆԸ ՍՐԲԱԶԱՆ ՊԱՐՏԱՒՈՐՈՒԹԻՒՆ Մ'Է։ Եթէ ցաւալի բան մը կայ, այն ալ այդպիսի վեհանձն ու խիզախ ինքնապաշտպանութեան դէպքերու հազուադէպ կամ բացակայ ըլլալն է Հայաստանի մէջ։ Երբ անբաւականօրէն զինուած՝ սպառազէն թշնամւոյն, կամ քիչուոր խումբը՝ մեծ բազմութեան դէմ կը խիզախէ պատուոյ եւ արդարութեան զգացումներով եռելած, թէպէտ յաղթուի, իր ըրածը առաքինական գործ մ'է եւ եթէ ընդվզում կոչել ուզենք զայն, կրնանք պատշաճօրէն որակել զայն իբրեւ ''ռոմանթիք։''

Հոս Դաշնակցական Պարոնները պիտի կարծեն հակասութեան մը մէջ բռնել զիս։ Եթէ ինքնապաշտպանութիւնը սրբազան պարտաւորութիւն է ուէ ատեն ու տեղ, ո՞չ ապաքէն Հայերը շատ տառապանքի պիտի ենթարկուէին եթէ այդ պարտաւորութիւնը կատարէին։ Իմ պատասխանս պարզ է։ Երբ Թրքերը Նախայարձակ ըլլան, ինչպէս մեծ կոտորածին ատեն եղան, Հայերը մեծ վատութիւն կ'ընեն չդիմադրելով, իրենց դէշ թէ աղէկ, քիչ թէ շատ զէնքերը գերագոյն կատաղութեամբ չգործածելով ինքնապաշտպանութեան համար։ Գալով իրաց սովորական ընթացքին, նոյնպէս կ'ըսեմ թէ Հայ անհատը պարտաւոր է ինքնապաշտպան ըլլալ

երբ Թշնամին իր պատուոյն կամ կեանքին կը սպառնայ։ Իր վեհանձն դիմադրութեանը մէջ կրնայ անիկա ըլլալ, և գուցէ ուրիշներ ալ այդ առթիւ վնասուին կամ սպաննուին, սակայն անիկա իր պարտքը կատարած կ'ըլլայ։ Զմոռնանք թէ այս կարգի դիմադրութիւններն անհատական հանգամանք ունենալով՝ սովորաբար պատճառ չեն ըլլար Կառավարական խստութիւններուն ամբողջ հասարակութեան վրայ տարածմանը։ Տարապայման ու լայնագիրկ խստութիւններն ի գործ կը դրուին այն պարագային երբ անհատական դիմադրութիւնը յեղափոխական ընկերութեան մը գոյութիւնը ենթադրել կուտայ այն հասարակութեան մէջ։ Ի մի բան՝ յեղափոխական տխմար թմբկահարութիւններ են պատճառ Թրքին կատաղի ընթացքին։ Ցոխորտանքը, աղմուկը, անգոյ ուժերու և կազմակերպութիւններու վրայ գրախօսութիւններն են գլխաւոր աղբիւրը աղէտներուն և ջարդերուն։ Իրերը չէին կրնար այս ծայրայեղութեանց հասնիլ Հայերու անհատական և "ռոմանթիք" ինքնապաշտպանութեան արարքներու պատճառաւ։

Հակասութիւն չկայ ուրեմն մեր հաստատումներուն միջև, զի Դաշնակցականաց խաղը յանհունս հեռի է "ռոմանթիք" կամ ինքնաբուխ, անզսպելի ժողովրդական կամ անհատական շարժումներ ներկայացնելէ։ Պարոնները ԲՌՆԻ դրամական հանգանակութիւններ կ'անեն Կովկասի Հայերէն, և Սասունի ու Մշոյ Հայերուն ԲՌՆԻ գնել կուտան իրենց ներմուծած զէնքերը՝ մինչև անգամ այդ խեղճերուն տարրական գոյքերն ու արջառներն երբեմն զոհել տալով այս ա-

կամայ գնումներուն համար, և հեռուէն կը դիտեն թէ ի՛նչքան անօգուտ, ինչքան վնասակա՛ր կ՚ըլլան անոնք մեր հայրենակիցներուն որոնք ոչ միայն զէնքէն այլ և իրենց կեանքէն կը զրկուին բարբարոս բանակի մը խժդժական հարուածներուն տակ։

Պարոնները ուրիշ իմաստակութեան մ՚ալ իբրև վերջին ապաստանարանի կրնան դիմել՝ խուսափելու համար արդարութեան դատավճռէն. անոնք կրնան ճամարտակել թէ կացութիւնը այնքան դժընդակ է որ այլ եւս կարելի չէ հանդարտ մնալ, հարկ է խլրտիլ, թէպէտ ըլլայ ճղճիմ ուժերով, որպէս զի Եւրոպա հասկնայ թէ Հայաստանի վիճակը անհանդուրժելի է եւ անմիջական դարմանի կարօտ։

Այս ալ խաբէութիւն է։ Այո՛, կացութիւնը ահաւոր է. բայց գիտենք նաեւ թէ Հայերը որք առաջ Եւրոպայի վրայ յոյս դնելով դիմադրութեան քիչ մը տրամադիր կ՚երեւէին, ներքնապէս հասուն չէին լուրջ շարժումի մը համար, եւ իրենց վերջին ջախջախումներէն ի վեր իրենց անզօր եւ անոք կացութեանը գիտակից՝ կը հանդուրժեն։ Հայերն ալ ուրիշ մարդկային էակներու պէս են. չափազանց ջախջախուած վիճակի մէջ գտնուողները երբեք չեն ապստամբիր։ Ճնշումը մեղմացած պահո՛ւն է որ հարստահարեալ ժողովուրդները ընդվզման կը միտին։ Թօքըվիլ ապացուցած է թէ Ֆռանսա եղաւ առաջինը յեղափոխելու, ոչ վասն զի ամենէն աւելի, այլ զի բաղդատօրէն ամենէն նուազ հարստահարեալն էր Եւրոպական ժողովրդոց մէջ։ Մեր յեղափոխական Պարոնները իրենց բաղձացած օրը

ա՛յնքան աւելի հեռաւոր կամ անհասանելի ապագայի մը կը դատապարտեն որքան իրենց խուլ խլրտումներով առիթ կ'ընծայեն ճնշումներու սաստկացումին։ Այս պայմանները տուեալ ըլլալով՝ յոռեգոյն քան անօգուտ է հնարիլ դրսէն եկած խմբի մը խլրտումներն զգեստաւորել ինքնաբուխ եւ անզսպելի հանրային յարոյթի մը կեղծ կերպարանքովը և այնպէս ներկայացնել զայն Եւրոպայի։

Զմոռնանք հաստատել թէ այդ կեղծ ընթացքը յոռեգոյն է քան տղայական. պարզապէս ոճիր, ու իբրեւ այնպիսին կը նկատուի իրագեկ օտարներէն։ Օտարները գիտեն թէ Թուրքը իր տիրապետութիւնը Հայոց վրայ պահպանելու համար զանոնք վայրագօրէն կը ճմլէ, եւ անոր խժդժական մեթոտները կը դատապարտեն. սակայն միւս կողմէն աւելի՛ խժդժական կը համարին ընթացքը կեղծ յեղափոխական Հայերուն որք իրենց համազգի կրօնակիցներուն դէմ կը գրգռեն չհամազգեաց և այլակրօնից վայրագութիւնը՝ այն անհիմն ու բաղդապաշտ ակնկալութեամբ թէ այդ անգթութիւններէն թերեւս Հայոց համար շահ մը ելլէ հրաշիւք իմն։

Խի՞ստ են այս խօսքեր, Պարոններ։ Կրնա՞ք ձեռքերնիդ դնելով խղճերնուդ վրայ, եթէ ունիք դեռ խիղճ, ուրանալ այս վճիռներուն ճշմարտութիւնը։

Սակայն արդար ըլլալու համար ըսել պարտիմ, թէ դուք միայն չէք յանցաւոր, ամենքս ալ յանցաւոր ենք վասնզի ամենս ալ փայփայած ենք զանազան չափով այն ցնորքը թէ Եւրոպա պիտի ազատէ զՀայաստան՝, թէ Ա-

րեւմուտքէն պիտի գայ մեզի մեր կորուսած ինքօրինութեան թագը։ Ասիկա մեր ազգային քաղաքական մեծ մոլորանքն է։ Ու այս մոլորանքը այլեւայլ չափով մարդկային ամեն անհատի եւ ամեն ժողովրդի հասարակ է։ Մոլորանքը կը կայանայ հրաշագանին, յանկարծական փրկութեան, հզօրի մը միջնորդութեամբ մեծ բան ձեռք բերելու, պարզեւ ստանալու տխմար հաւատքին մէջ։ Հրէայք կործանեցան այն յամառ ու տխմար ակնկալութեան երեսէն թէ "Մեսիան" պիտի գար ու զՍիոն ընէր տիեզերական մայրաքաղաք։ Մինչեւ այսօր ալ, նոյն իսկ լուսաւորեալ ժողովուրդները իրենց երազներու իրականացումը այս կամ այն հզօր, հրաշալի իմն կարողութեանց տէր անձնաւորութենէն կը սպասեն յաճախ։ Ֆռանսացիք վայրկեան մը այդ խելագար վստահութիւնը ցոյց տուին Զօրավար Պուլանժէի, որ ազգային "վրէժը" լուծելու կոչուած վեհն էր, սակայն շուտով տեսնուեցաւ խայտառակ պարտանքին ահագնութիւնը։

Հայ ազգն ալ իր "Մեսիան" ըրած է զԵւրոպա, եւ վայրկենէ վայրկեան կը սպասէ անոր երեւնալուն, երբ Հայաստան պիտի ազատի։ Այս ակնկալութիւնը, անբանաւոր եւ արտառոց, շատ թուլացուցիչ է մեր ազգային ճիգին, բայց Դաշնակցական պարոններուն շրջանին մէջ է որ իր ամենէն ողբալի արդիւնքները ցոյց կուտայ։ Եւ այդ է պատճառը որ ստիպուած ենք անդադար անոնց վերադառնալ։ Ազգը շատ աւելի ուժգնօրէն անոնց դէմ պիտի ելլէր եթէ ամբողջովին վարակուած չըլլար հզօր օտարներու օգնութեան շնորհիւ ազատութիւնը իրրեւ պարգեւ ստանալու

մոլորանքէն, այն է, կարճ խօսքով, օտարապաստանութեան եւ բաղդապաշտութեան ախտէն։ Դաշնագիրները եւ համակրական հրատարակութիւնները եւրոպական մամլոյն մէջ՝ գայրացուցին մեր այս ախտը ու սպառնալից վատթարացումի մը հասուցին զայն։ Ախտը ա՛յնքան խորապէս վարակած է Դաշնակցականները որ ամբողջ գաւառներ ողջակէզ կը մատուցանեն հրաշագործ Բաղդին կամ յապաղող Մեսիային։

Կ'ըսեն, որ անհաւատալի չէ, թէ Դաշնակցականներուն մէջ ուսեալ անհատներ կը գտնուին, եւ մի քանիներ բարձրագոյն դաստիարակութիւն առած։ Ցաւալի երեւոյթը մեր ժողովրդին յատուկ չէ, եւրոպական ազգաց մէջ ալ կան ուսումնական խաւարամիտներ։ Մենք պիտի ակնկալէինք բնականօրէն որ ուսեալ Դաշնակցականներն անդադար քարոզութեամբ պայքար մղէին մեր հայ ժողովրդին բաղդապաշտ միտումներուն դէմ եւ ջանային արմատախիլ ընել անոր մտքէն արտաքին զօրութեան միջնորդութեամբ յանկարծ փրկուելու մոլար ու վտանգաւոր հաւատքը։ Սակայն, ընդհակառակն, անոնք սկիզբէն ի վեր այդ մոլորութիւնը աւելի խորապէս հաստատելու սատարած են իրենց զանազան խլրտումներով, որոնց ամենն ալ օտարին օգնութիւնը իրենց ուզած ատենը բռնադատելու տղայական ճիգեր եղած են։

Այս մոլորանքին երեսէն է որ ազգը այսօր կը տառապի սպառնալից տկարութեան մը մէջ խորասոյզ։ Ասիկա հասկնալ անհրաժեշտ է մեր մեծերուն ու պզտիկներուն։ Ու պէտք է այնքան փորձառութենէ վերջ պատրաստուած ըլլա-

յինք մեր այս քաղաքական մոլորանքէն բուժուելու։ Հաւանական չէ որ այսօր գտնուի ազգին մէջ անհատ մը՝ հասարակ իմացականութեան տէր՝ որ կարող չըլլայ սա տրամաբանութեան անխզելի հետեւականութիւնը տեսնել—այսինքն թէ (1) Դաշնագիրները և հայասիրական կարգ մը հրատարակութիւններ չափազանց յոյս ներշնչեցին մեր ժողովուրդին թէ Եւրոպա բարեկարգ վարչութեամբ կամ նոյն իսկ ինքնօրինութեամբ պիտի օժտէր զՀայաստան. (2) այս յոյսը պատճառ եղաւ որ, զԵւրոպա մեր կողմ հաշուելով, մենք սկսանք անհամբեր դիրք մը առնել հանդէպ Թուրք Կառավարութեան և մենէ ոմանք յեղափոխական շարժումներ ստեղծելու չափ յառաջ գնացին, հետեւապէս (3) Թուրք Կառավարութիւնը հակահայկական քաղաքականութիւն մը ծրագրեց ու զմեզ ապստամբութեան բոլորովին անկարող վիճակի մը մէջ ձգելու համար սկսաւ հալածել ու ճմլել զմեզ։ Ասկէ բացարձակ յայտնի է, և կարծեմ ոչ ոք կրնայ անկեղծօրէն երկբայիլ թէ Սասունի 1894ի ջարդը, 1895—96ի ընդհանուր կոտորածները, 1904ի Սասնոյ երկրորդ ջարդը տեղի պիտի չունենային եթէ Հայերըս Եւրոպիոյ պաշտպանութեան վրայ այնքան յոյս դնելով՝ յանկարծական բարեբաղդութեան մը հետապնդած չըլլայինք ընդ խօլ։

Այս ազգային փորձառութեան լուսով կը տեսնենք ամենքս ալ թէ ո՛րքան միակողմանի կամ մեզի հաճելի մեկնութիւններ տուած ենք պատմական կարգ մը իրողութիւններու ու այսպէս սնուցած մեր մոլորանքը։ Օրինակ իմն, յեղափոխական երգ մը կ'ըսէ.

‘‘Օրինակ առնենք Պուլկարի ազգէն․
Մենք ալ կ'ազատինք վատ Թուրքի ձեռքէն։”
Իրաւ է թէ Պուլկարիոյ պատմութեան մէջ հինգ
դէպքեր իրարու յաջորդած կը գտնենք․ ընդվըզ-
ում, կոտորած, եւրոպական կարծեաց յու-
զում, ռուսական միջամտութիւն, և պուլկարա-
կան ազատութիւն։ Գիտենք սակայն, և հաւաստ-
եա՛ւ գիտենք, թէ Պուլկարիա ազատեցաւ ո՛չ
շնորհիւ ընդվզմանը և կոտորածին, ո՛չ վասն զի
Կլատսթոն Թուրք բարբարոսութիւնները հրա-
շունչ պերճախօսութեամբ դատապարտեց—զի
հայոց կոտորածք շատ աւելի սարսափելի էին,
և Կլատսթոն աւելի քան միանգամ դատապար-
տեց զանոնք, և գրեթէ ամբողջ մարդկային սե-
ռը ցասմամբ բողոքեց, սակայն և այնպէս փըր-
կաւէտ միջամտութիւն տեղի չունեցաւ—այլ
Պուլկարիա ազատեցաւ բացառիկ պայմաններու
շնորհիւ, այսինքն Ռուսիոյ պատերազմելով ու
յաղթելովը Թուրքիոյ։ Նաև գիտենք թէ Ռու-
սիա այդ ահագին պատերազմը մղեց ո՛չ զՊուլ-
կարները ազատելու բուն նպատակաւ, այլ զՊուլ-
կարիա իբրև իրեն ուժին նոր ու նպաստաւոր յենա-
կէտ գործածելով զԿ․ Պոլիս առնելու համար։
Այս պատմական նշանակիչ դէպքը մին է շատե-
րէն որ կ'օգնեն մեզ ըմբռնել թէ Դրան քրիս-
տոնեայ հպատակաց մանր խնդիրները որքան
խստիւ կապուած ու ստորակարգուած են մեծ
խնդրոյն, մայր խնդրոյն, այսինքն Արեւելեա-
նին։ Արեւելեան խնդիրը հիւսիսէն՝ Ռուսիոյ,
հարաւէն՝ Միջերկրականին, արեւելքէն Փոքր Ա-
սիոյ, և արեւմուտքէն՝ Պալքանեան թերակըղզ-
ւոյն հետ կնճռոտ կապակցութիւններ ներկա-

յայտնող ամենադժուար խնդիր մէջ, իր կորիզն ու էական կէտը ըլլալով Կ. Պոլիս։ Այս հին ու զարմանալի մայրաքաղաքը բովանդակ երկրագնդին վրայ եզական է իր անբաղդատելի աշխարհագրական դիրքին շնորհիւ, և "Արեւելեան Խնդիրը" էապէս այն խնդիրն է թէ ո՛ր Տէրութեան ձեռքը պիտի անցնի այդ ամենանախանձելի դիրքը, աշխարհի կեդրոնը։ Երբ ոևէ մեծ ու հզօր Տէրութիւն տանայ զԿ. Պոլիս, ճակատագրուած պիտի ըլլայ տնտեսական գերակայութեան և գերակշիռ քաղաքական ազդեցութեան։ Ռուսիա՛ է երկար ատենէ ի վեր այդ բաղդին թեկնածուն, և եւրոպական մեծ Տէրութեանց իւրաքանչիւրը նախանձով եւ երկիւղով կը դիտէ ամեն շարժում, խլրտում, յուզում որ կըրնայ առաջնորդել վերջնական ընդհարումի մը եւ վճռական լուծման մը։ Արդ, Հայերուս անհուն զոհողութեամբ սորված դասն այս է թէ մենք բնաւ ոյժ չունինք մեծ Տէրութեանց շարժումներուն մեզի նպաստաւոր ուղղութիւն մը տալու, և մեր հարիւր հազարաւորներու խողխողումն իսկ բաւական չէ հայկական խնդրոյն լուծմանը առաջնութիւնը հարկադրելու դաշնադիր Տէրութեանց։ Լալկան ու աղմկալից տղու մը պէս մեր ոտքերը անդադար գետինը ծեծելով չենք կրնար հայկական խնդիրը անջատել տալով անոր շուտափոյթ լուծում մը հարկադրել Եւրոպիոյ։ Եւ ուրիշ տղայութիւն մ'ալ ըրած կ'ըլլանք պահանջելով որ մեծ Տէրութիւններն իրենց հոգերը, երկիւղները, նախանձորդութիւնները, երկարամեայ ձգտումները մէկդի դնեն վայրկեան մը ու մարդասիրական խանդավառութեամբ մը մի-

դրանին մեր խնդրոյն անմիջական կարգադրութեան ի գլուխ հանելու համար։ Ի՞նչ դիւրին է խօսիլ։ ՄԻԹԷ ՄԵՆՔ ՄԵ՛Ր խնդրոյն բարւոք կարգադրութիւնը ձեռք բերելու համար ՄԵՐ մէջ այդպիսի միաբանութիւն մը, բոլոր անձնական շահերէ ու կուսակցական նկատողութիւններէ վեր, իրագործա՞ծ ենք։

Ձկայ բան մը մեզի այնքան յստակօրէն պարզուած որքան այն տխուր իրողութիւնը թէ մեծ Տէրութիւններն լոկ մարդասիրական կամ քաղաքակրթական ցոյցի մը համար ստորագրած են Պէռլինի 61րդ Յօդուածը, եւ ուստի մենք տղայամիտ կ'ըլլանք երբ պահանջենք որ անոնք մեր խնդրոյն համար յանկարծ բարձրանան այն մարդասիրական բարձր մակարդակին ուր հասնելու համար դեռ գուցէ դարաւոր բարոյական զարգացում և միջազգային յարաբերութեանց երկարատեւ բարեշրջում հարկաւոր են։

Ի՞նչ է այս երկար քննութենէն բխող եզրակացութիւնը։

Միթէ Պէռլինեան դաշնագրի կէս-մարդասիրական այդ ցոյցը հանդէպ Հայոց կրնա՞ր բոլորովին առ ոչինչ գրուիլ, և միթէ հրատարակչական գործունէութեամբ քաղաքակիրթ աշխարհի ուշը մեր Դատին անդադար հրաւիրել սխա՞լ էր․ ո՛չ։ Կրկին ու կրկին ապացուցինք այս քննական վերլուծման ընթացքին մէջ թէ մեր սխալը անո՛ր մէջ կը կայանար որ չափազանց մեծ կարեւորութիւն տուինք այդ ցոյցերուն եւ չափազանց աճապարեցինք մեր խնդրոյն կարգադրութիւնը ձեռք բերելու, ու այս պարզամիտ աճապարանքին մէջ յոխորտ ու գրգռիչ կեցուածք մը ա-

ունինք Հանդէպ Թուրք Կառավարութեան, վարուելով այնպէս որպէս թէ Տէրութեանց պաշտպան միջամտութիւնը ապահովուած էր ու մօտալուտ։ Այս կերպով մեր ու Թուրքին մէջ յառաջագոյն յարդարուած ապրելակերպը, պատշաճեցումը խանգարուեցաւ, ու մենք Հարուած Հարուածի ետեւէ կրելու նշաւակ ըրինք զմեզ երեւակայական պաշտպանութիւն մը վաՀան ընելով մեզի։

Հիմա որ մեր Հիմնական սխալը վերջնականապէս Հասկցեր ենք, պարզ կը տեսնենք նաեւ թէ ո՛րն է մեզի Համար միջազգային քաղաքականութեան ուղիղ գիծը։ ՄԵՆՔ ԱՅՍՕՐԻՀԵՏԵՒ ԱՅՆՊԷՍ ՊԻՏԻ ՇԱՐԺԻՆՔ ԻԲՐ ԹԷ ԵՒՐՈՊԱ ԿԱՐՈՂ ՊԻՏԻ ՉԸԼԼԱՅ ՄԵՐ ՄԱՍԻՆ ԻՐ ԴԱՇՆԱԳՐԱԿԱՆ ՅԱՆՁՆԱՌՈՒԹԻՒՆԸ ԿԱՏԱՐԵԼ՝ ՄՕՏԱՒՈՐ ԱՊԱԳԱՅԻ ՄԸ ՄԷՋ ԻՐԱԳՈՐԾԵԼՈՎ ԲԱՐԵԿԱՐԳՈՒԹԻՒՆՆԵՐԸ։ Հայ արեան կաթիլ մը անգամ չպիտի վատնենք եւրոպական միջամտութիւն մը գրգռելու Հաշուով։ Հայոց խողխողումներու արիւնով անօգուտ և անպատուաբեր ուշադրութիւն մը միայն գրաւած պիտի ըլլայինք այսուհետեւ ալ։

Թող թիւրիմացութեան տեղի չմնայ սակայն։ Գործելակերպը կ'եղանակաւորենք բայց գործը պիտի շարունակենք անվհատ և անդուլ։ Ա՛նմիջապէս, շուտո՛վ, յա՛նկարծ մեծ բան մը ձեռք բերելու Համար խենթն ի խենթը չպիտի վազենք այլ եւս, սակայն ոստիւնի անբնականոն և սպառիչ ճիգին տեղ պիտի սկսինք փորձառութեամբ խելօքցած, իր ուղածը գիտցող և կրցածը ուզող մարդու ընթացքը, այսինքն՝ ընթացքը Համբե-

քաջար ու անյողդողդ մարդուն որ ճամբուն երկայնութենէն ու դժուարութիւններէն չի վախնար,՝ քանզի վստահ է թէ շիտակ ճամբան դըտած է վերջապէս իր նպատակին հասնելու համար։

Մեր պահանջը լուրջ և չափաւոր կերպով պէտք է բանաձևել. մենք անկախութիւն չենք խնդրեր և ոչ Օսմանեան կայսրութենէն անջատում, այլ իրական և վստահելի բարեկարգութիւններ որոնք մարդկային. տարրական իրաւունքներն ապահովեն մեզ համար, և այնպիսի վարչութիւն մը որ մեր տնտեսական ու կրթական գործունէութիւններն քաջալերէ՝ փոխանակ խոչընդոտնելու։

Մենք պիտի պնդենք թէ մեծ Տէրութիւնները պարտաւոր են իրենց յանձնառութիւնը կատարել Հայոց մասին։ Եւրոպիոյ պարտաւորութիւնը բնաւ չենք հիմներ մենք ոմանց յեղափոխական շարժումին վրայ. մեր խնդիրը յեղափոխութեան կարօտ չէր։ Մեծ Տէրութեանց պատասխանատուութիւնը շատ մեծ է սակայն Հայաստանի վիճակին համար։ Գիտենք թէ լոկ քաղաքակրթական ցոյց մ'էր Պէռլինի Դաշնագըրին 61դ Յօդուածը, բայց այն յօդուածին և ուրիշ շատ մը պղատոնական ցոյցերու պատճառաւ է որ Հայոց կացութիւնը վատթարանալով ներկայ ճգնաժամին հասած է ուր անոնց նիւթական գոյութիւնն անգամ վտանգուած է։

Հայերը կը հասկնան թէ Եւրոպա համակրական ցոյցերը բարի նպատակով ըրած է, բայց սաստիկ կը մեղադրեն զայն անո՛ր համար որ շատ բարձր խօսելէ վերջը քաջութիւնը կամ ա-

ռաքինութիւնը չունեցաւ չօշափելի զօրութեամբ յարդիւնս բերելու իր առաջադրութիւնը։ Եթէ Հայերը ապստամբած ըլլալով ջարդուէին, խնդիրը տարբեր երևոյթ կ'առնէր։ Եւրոպա կրնայ արդարացնել իր ձեռնպահութիւնը երբ օտար երկրի մը գործերուն միջամտել չուզէ ի նպաստ յեղափոխականներուն։ Սակայն 300,000 Հայեր ջարդի ենթարկուելով ցուր ցուր եղան այն ատեն երբ հայ ազգը գոհ և ուրախ սրտով շրջապատած էր դիւանագիտական սեղանը և վստահ էր թէ Տէրութեանց ազդու ջանքերուն շնորհիւը բարեկարգ վարչութիւն մը իրեն ապահովուելու վրայ էր։ Օսմանեան Կառավարութիւնը ևս լաւ գիտէր թէ Հայք աւելի քան երբեք հեռու էին ապստամբութիւն դարբնելէ, սակայն խաբնօք անոնց ձեռքէն առաւ քիչ մը զէնքը զոր ունէին և անզէն ու անպաշտպան հասարակութիւններու վրայ արձակեց իր կանոնաւոր ու անկանոն խողխողիչները։ Ի՛նչ ալ որ ըսուի միաբան միջամտութեան մը դժուարութիւններուն և մասնաւորապէս Ռուսիոյ վճռական հակառակութեանը վրայ, չէ՛ կարելի զԵւրոպա պատասխանատու չճանչնալ այս ահաւոր եղերերգութեան համար, զի անիկա Թրքին զայրոյթ և Հայուն յոյս ներշնչելէ յետոյ ասպարէզէն քաշուեցաւ՝ լքանելով իր պաշտպանեալը Օսմանեան շղթայակերծ ցասումին զոհ։

Եւրոպիոյ ժողովուրդները հետզհետէ աւելի կը հասկնան այս ահաւոր ճշմարտութիւնը թէ բոլոր դաշնադիր Տէրութեանց անհամաձայնութեան և անոնցմէ մէկ կամ երկուքին մասնաւորապէս հակամարդասիրական կեցուածքին վերա-

գրելի է Հայոց աղէտներուն քստմնեցուցիչ ահաւորութիւնը։ Պէտք է շարունակել անոնց խղճին բողոքել, զի խղճահարութիւնն է որ Եւրոպիոյ ազնուագոյն զաւակներն վերջապէս պիտի մղէ անցեալի ոճիրը քաւելու մարդասիրական ժէսթին։

Թէ մեծ Տէրութեանց որոնք աւելի տրամադիր են իրենց այս զանցառութիւնը դարմանելու՝ անոր վրայ հոս չունիմ խօսիլ։ Սակայն յիշել պէտք է մանաւորապէս Ամերիկան։ Նախագահ Րօզվէլթ առ Քօնկրէսն ուղղած տարեկան պատգամագրին մէջ, Դեկտ. 5; 1904, զօրաւոր լեզուով ակնարկեց Հայաստանի հարստահարութիւններուն։ Ասիկա իրօք շատ արտառոց երեւոյթ մ'է միջազգային տեսակէտէ։ Նախագահը հրապարակաւ դատապարտած եղաւ Թուրք կառավարութեան ընթացքը Հայոց նկատմամբ։ Ամերիկայի քաղքենիներուն օտար երկրաց մէջ իրաւունքներուն վրայ խօսելով կ'ըսէ. "ի Թուրքիա մեր դժուարութիւնները չեն ծագիր մեր քաղքենիներուն երբեմն ցոյց տրուած (անարդար) վարմունքէն այնքան որքան այն զայրոյթէն որ անխուսափելիօրէն կը գրգռի ի տես այնպիսի ահաւորապէս գեղծ կառավարութեան որպիսի է Հայաստանինը և Մակեդոնիոյն։" Նախագահ Րօզվէլթ շատ մեծախոհ և արդարասէր է, և յիրաւի կը նկատուի իբրև մին ի մեծագոյն Նախագահաց Ամերիկայի։

Ասկէ չի հետեւիր սակայն թէ Ամերիկա իբրև հայկական դատին ախոյեանը ասպարէզ է իջած կամ պիտի իջնէ։ Անիկա Քուպային օգնեց ընդդէմ Սպանիոյ, որովհետեւ ընկճեալը իր դրացին

էր և խնդիրը իր շահերը մօտէն կը շօշափէր։ Ամերիկայի միջազգային դերը Մնրօյեան վարդապետութեան սահմաններուն մէջ սեղմուած է, և շատ գոհ է երբ կրնայ Եւրոպական Տէրութեանց չթողուլ ամերիկեան ցամաքին վրայ աշխարհակալութիւններ ընել, անոր պզտիկ պետութիւններուն հետ կռուի բռնուելով։ Ի փոխարէն՝ Ամերիկա ալ կ'առաջադրէ ձեռնպահ մնալ Եւրոպիոյ ներքին խնդրոց միջամտելէ։ Արեւելեան Խնդիրը էապէս Պոլսոյ ապագային խնդիրն է, որ իր ահագին կարեւորութիւնը ունի Եւրոպական Տէրութեանց հաւասարակշռութեան տեսակէտէն։ Ամերիկայի արտաքին քաղաքականութիւնը չի ներեր իրեն այդ խնդրոյն միջամուխ ըլլալ, անտի՛ կը ծագի բարոյական "դըժուարութիւն" մը երբ Ամերիկացիք զայրոյթ կը զգան ի լուր Թրքական վայրագութեանց ի Հայաստան։ Եւրոպացւո՛ց պարտաւորութիւնն է այդ ահագին զեղծմանց դարման մը ընել, եւ Ամերիկա չի կրնար անոնց դաշնագրական յանձնառութիւններ ի գործ դնելու ելլել։ Միամիտ չըլլանք այնքան մինչև կարծել թէ Ամերիկա իր վրայ առած է աշխարհի զանազան երկիրներուն մէջ անիրաւ կառավարութիւնները արդարութեան բռնադատելու գործը։ Ուրեմն ի՞նչ կրնայ ընել անիկա.—կրնայ բարեկամօրէն խրատ տալ մեծ Տէրութեանց, մասնաւորապէս Անգլիոյ, որ հոգ տանին Հայկական բարեկարգութեանց խնդրոյն։ Գիտենք թէ Նախագահ Րօզիվէլթ այդպէս խրատած է իր դեսպանին միջոցաւ Անգլիոյ կառավարութիւնը, և կաթողիկոսական պատգամաւորութեան պատասխանելու ատեն ակնարկեց

այս իրողութեան՝ իբրև ապացոյց իր համակրանաց առ մեզ։ Ուրեմն գոհութեամբ նշանակելով հանդերձ Ամերիկայի ազնիւ ու համակիր կեցուածքը հանդէպ հայկական բարեկարգութեանց խնդրոյն, պարտինք անոր վրայ ևս չափազանց յոյս չդնել և Նախագահին դիմումներ չընել ի ժամու և ի տարաժամու։

Քաջալերական երևոյթը միայն Ամերիկեան կառավարութեան անկեղծ համակրութիւնը չէ առ մեզ, այլ և բովանդակ միջազգային պայմաններու մէջ չեշտուող նոր ոգին և ուղղութիւնը։ Երեսուն տարիէ ի վեր Եւրոպա խաղաղութիւն կը վայելէ և խաղաղութեան բարիքներըն ու առաւելութիւններն գնահատել կը սորվի։ Ֆռանսեւգերման պատերազմէն յետոյ Ֆըռանսա կը ցանկար յաղթական պատերազմով մը վերստանալ Մեծ Ազգի նախկին դիրքն ու հըմայքը, սակայն խաղաղութեան շրջանը երկարելուն այդ ազգը կամաց կամաց նշմարեց թէ խաղաղութեան մէջ ալ կրնայ ժողովուրդ մը յաղթանակներ տանիլ, փառաւորիլ ու ցանկալի վիճակի մը հասնիլ։ Իրօք, թէև այսօր Ֆռանսա առջի գերակշիռ դերը չի կատարեր յԵւրոպա, Լուդովիկոս ԺԴ ի և Մեծն Նաբոլէոնի ժամանակին փառասիրութիւններն չունի, սակայն ամեն մեծ Տէրութիւն անոր բարեկամութիւնը կը գընահատէ ու կը փնտռէ, զի ամենէն ուշիմ, աշխատասէր, տնտես, հարուստ և հզօր ազգերէն մէկն է։ Ակամայ երկարած խաղաղութիւնը բուժած է զՖռանսա իր վրէժխնդրութեան տենդէն և անոր մէջ ստեղծած է՝ խաղաղութեան արուեստներուն մէջ մրցելով հզօր և օգտակար հանդիսանալու տիրական ճաշակը։

Ֆռանսայի օրինակը դրս մ'է ուրիշ մեծ Տէրութեանց, և ամենն ալ խաղաղութեան ընկերութիւններն կը գնահատեն: Լահէյի ժողովը այս խաղաղասիրական միտումին արտայայտութիւններէն մին էր: Անկէ ի վեր բազմաթիւ իրաւախոհական դաշնագրեր կնքուած են այլ և այլ Տէրութեանց միջև ու շարունակ կ'աւելնայ այդ օրինակ ռազմարգել համաձայնութեանց թիւը:

Այս նոր ոգին կ'արտայայտուի նաև Խաղաղութեան Համաժողովներու մէջ որուն կը մասնակցին Եւրոպիոյ ամենէն լուսամիտ և ազդեցիկ գլուխները: Կայ նաև Միջազգային Իրաւանց Կաճառը (L'Institut de Droit International) որոյ նշանաբանն է Արդարութիւն և Խաղաղութիւն, և ամեն կերպով կ'աշխատի յաղթանակին այն արդար եւ մարդասիրական սկզբանց որոնք պէտք է կառավարեն ժողովրդոց յարաբերութիւններն իրարու հետ: Նախագահ Ռօզվէլթ յաճախ կը գործածէ այդ երկու բառերը զուգորդեալ—ԱՐԴԱՐՈՒԹԵԱՆ ԽԱՂԱՂՈՒԹԻՒՆԸ:

Այսպիսի կարգ մը նշաններէ կը տեսնուի Եւրոպական ազգերու մէջ զօրացող միտում մը դէպ ի համեւրոպական միութիւն մը, որուն գործարանն ըլլայ Միջազգային Խորհրդարան մը, եւ այս Խորհրդարանը Եւրոպական ազգերու պաշտօնական ներկայացուցիչներէն կազմուած, նկատի առնէ եւ վճռէ միջազգային արդարութեան խնդիրները: Ասոր վրայ արդէն շատ կը գրեն, եւ իրերու ակներեւ միտումն է դէպ ի ստեղծումն այդպիսի Բաղամէնթի մը որ այլ եւս տեղ պիտի չթողու պատերազմի, զինուորական ուժով արդարութեան եւ պատուոյ խնդ-

գիրներ վճռելու։ Եւ հաւանական է որ ոչ շատ հեռաւոր ապագայի մէջ մարդկութիւնը ողջունէ ''Եւրոպիոյ Միացեալ Նահանգները'' հանգոյն Ամերիկայի Միացեալ Նահանգներուն։

Այս բոլորը մեզի եւ բոլոր պզտիկ ու նեղեալ ժողովրդոց համար մեծ մխիթարութիւն են։ Եւ այս ալ անդրադոյն պատճառ մ'է որ մենք եւս ներշնչուելով Եւրոպիոյ նոր ոգիովը, մեր դատը, մեր իրաւունքը խաղաղական միջոցներով ձեռք բերել աշխատինք։ Վիթխարի ապուշութիւն գործած պիտի ըլլայինք եթէ Եւրոպիոյ խաղաղասէր միտումներէն մենք անխաղաղասէր ըլլալու կամ Հայկական Դատը խաղաղութեան սպառնալիք մը ընելու ներշնչում առնէինք։ Եթէ կ'ուզենք որ Եւրոպիոյ լաւագոյն զաւակները մեզի համակրելով մեր խնդրոյն լուծումին նպաստեն, պէտք է ելլենք մեր արեւելեան հին ու անձուկ շրջանակէն և ուշիւ դիտենք միջազգային հորիզոնը, առանց աչքէ վըրիպեցնելու հոն երեւան եկող ամէն կարեւոր ու նշանակիչ երեւոյթ։

Եզրակացութիւնը սա է—Մենք Եւրոպիոյ կողմէն արդինաւէտ և վաղընդփոյթ միջամտութիւն մը հաշիւէ դուրս ձգելով պիտի վարենք մեր ճակատագիրը, սակայն եւ այնպէս պիտի շարունակենք մեր արդար դատը եւրոպական մեթոտներով, խաղաղ միջոցներով քաղաքակերթ աշխարհի դատարանին առջեւ պահել։

Հիմա կը մնայ մեր խնդիրը ուրիշ տեսակէտէ մը դիտել—Հայկական Դատը Օսմանեան Կառավարութեան և մահմ ական աշխարհին առջեւ։

## ԳԼՈՒԽ Թ

# ՀԱՅԿԱԿԱՆ ԴԱՏԸ

## ՕՍՄԱՆԵԱՆ ԿԱՌԱՎԱՐՈՒԹԵԱՆ ԱՌՋԵՒ

Հայ հայրենասէրներու վերջին տարիներս շեշտուող միտումն ըլլալով Հայկական Դատը Եւրոպիոյ առջեւ ջատագովել իբրեւ պարզ բարեկարգութեան խնդիր, եւ ոչ անկախութեան կամ Օսմանեան Կայսրութենէն անջատումի դատ, եւ որովհետեւ անոնց գործունէութեան նշանաբանն է ‘‘ԽԱՂԱՂՈՒԹԻՒՆ և ԱՐԴԱՐՈՒԹԻՒՆ”, ինքնայայտ է թէ ‘‘Հայկական Խնդիրը” իր խըրտուցիչ հանգամանքը թօթափած ու իր նախկին ընդունելի երեւոյթն զգեցած ըլլալու է Օսմ. Կառավարութեան համար։ Սակայն Հայերը ոչ լալկան տղու կեցուածքն ունին հանդէպ Եւրոպիոյ, եւ ոչ նկուն եւ երեսանկեալ ստրուկինը հանդէպ Սուլթանին Կառավարութեան։ Անոնք ահագին ջարդերու զոհ եղած են, սակայն եւ այնպէս գիտեն թէ այդ ամենը իրենց գլխուն եկած է անոր համար որ իրենք պահանջած են մարդկային տարրական իրաւունքեր։ Արդար դատի մը պայ-

քարին մէջ անոնք ջարդուած են բայց չեն յաղթուած։ Ուստի անոնք կը տառապին առանց յուսահատելու, եւ իրաւացի մարդու, նահատակի արժանաւորութեամբ կը կենան անոնք հանդէպ Բ. Դրան։ Եւ ասիկա բաւական կը համարին։ Անոնք չեն պնդեր թէ անսխալ են, ընդհակառակն անկեղծօրէն կը յայտարարեն թէ իրենց քաղաքական կեանքի փորձառութիւն չունենալով խաբուած են յաճախ։ Անոնք կը պարսաւեն այն հայ տղաքը որ "յեղափոխական" կոչելով իրենք զիրենք, այնքան անօգուտ աղմուկ հանեցին եւ մինչեւ այսօր ալ իրենց բարկութիւնը զսպել չեն սորված։

Այս պայմանները տրուած ըլլալով, կ'արժէ որ քիչ մը խօսինք այն հնարաւոր մերձեցումին եւ նոյն իսկ հաշտութեան մասին որ կրնայ հիմա իրագործուիլ Սուլթանին կառավարութեան ու Հայ ազգին միջեւ, առանց մէկ կամ միւս կողմին արժանապատուութեանը վիրաւորանք մը գալու, եւ երկուց կողմանց ճշմարիտ շահերուն համար։

Մենք բարեկարգութիւն ըսելով կը հասկընանք կառավարական դրութիւն մը որ կեանքի պատուոյ եւ ստացուածոց ապահովութիւն եւ կրթական ու տնտեսական խաղաղ գործունէութեան քաջալերութիւն ընծայէ։ Այս պահանջը Օսմանեան կայսրութեան ամբողջութեան եւ շահերուն ոչ միայն հակառակ չէ այլ մանաւանդ անհրաժեշտ է, եւ մեր Ս. Պատրիարքը պէտք է կարող ըլլայ այս բարեկարգութեանց մասին ներկայացումներ ընել Դրան առանց ոեւէ կասկածի տակ իյնալու։

Յիշենք թէ Խրիմեան Հայրիկն եղաւ առաջինը Հայ Պատրիարքներուն, որ 1874ին Բ. Դրան մատուց երկար տեղեկագիր մը հայկական գաւառաց մէջ գործուող աւերիչ հարստահարութեանց վրայ եւ դարման խնդրեց։ Այդ "Թագրիրը" Պատրիարքին յանցանք չսեպուեցաւ։

Պատճառ չունինք կարծելու թէ Օսմանեան կառավարութիւնը կ'ուզէ մշտնջենաւորել Հայ-Թուրք յարաբերութեանց ներկայ ձգտեալ վիճակը։ Ընդհակառակն շատ մը իրողութիւններ կան զմեզ բերելու այն թուրքին թէ նախկին խաղաղ եւ համերաշխ կացութեան վերահաստատումը կը փափաքի անիկա։ Առաջին ու ամենէն շօշափելի իրողութիւնը անտեսական կարգի է։ Կոտորածները որոնք Հայերը տկարացնելու եւ աղքատացնելու նպատակաւ ի գործ դրուեցան՝ տկարութեան եւ աղքատութեան պատճառ եղան նաեւ Օսմանցւոց համար։ Կրքերու եռ եղած պահուն գուցէ կառավարութիւնը ի նկատ չառաւ այս ողբալի հետեւանքը բայց հիմա շատ որոշ կը տեսնուի։ Հայոց հարստութիւնը երկրին հարստութիւնն էր, Թուրք հասարակութիւնն ալ անկէ կ'օգտուէր ամեն կերպով, եւ Թուրք հասարակութիւնն իսկ այդ բանը կը հասկնայ հիմա։ Հազարէն մէկ դէպք մը յիշել կ'արժէ հոս, որ թէեւ ըստ երեւութին անկարեւոր, է սակայն նշանակիչ, զի ցոյց կու տայ թէ որքան ողբալի կը նկատեն Օսմանցիք կոտորածին հետեւանքները ընդհանուր բարեկեցութեան տեսակէտէն։ Ակնայ շրջականներէն Թուրք մը բեռ մը ընտիր սերկեւիլ քաղաք կը բերէ ծախելու։ Որովհետեւ բարեկեցիկ եւ ունեւոր Հայերը որ

ազդմիսի բաներու յանձնառուներն էին։ Ջարդուած չէին, միայն Թուրքեր կը մօտենային, ոչ գնելու այլ համը նայելու։ Գիւղացին չարաչար յուսահատ եւ բարկացած, վերջապէս սերկեւիլները հրապարակին վրայ կը պարպէ, լաւ մը կը կոխոտէ, եւ Հայերը Ջարդողներուն սպառնալիք հայհոյանքներ ժայթքելով կ'առնէ կը քալէ։ Շատ Թուրքեր ապրուստը այնքան դժուարացած գտան Ջարդէն վերջը որ գաւառներէն ստիպուեցան գաղթել Կ. Պոլիս։ Հայ տարրին ցանցառացումը Թուրքին առջեւ գործի ասպարէզը ընդարձակելու չծառայեց, այլ աւելի նեղցուց։ Թուրքք և Հայք երկրին տնտեսական դրութեան մէջ իրարու անհրաժեշտ պէտք ունէին, զի աշխատանքի բաժանում մ'է եղած անոնց միջեւ։ Ասիկա զգացուած է ոչ միայն ի գաւառս այլ եւ մայրաքաղաքին մէջ։ Սուլթանը իր անձնական գանձուն նախարար կ'ընտրէ Հայ մը վասնզի Հայը միա՛յն կարող է այդպիսի գործ ընել, անո՛ր ուղեղն է միայն վարժուած այդպիսի աշխատանքի։

Կոտորածէն յետոյ Կ. Պոլսոյ մէջ այնքան մեծ էր ատելութիւնը Հայոց դէմ որ կարգ մը գործեր, զորս դարերէ ի վեր մերազնեայք կ'ընէին, Թուրքերու յանձնուեցան։ Մայրաքաղաքին բիւրաւոր զինուորական եւ քաղաքային պաշտօնէից օրական պարէնի կամ "թային"ի բաշխման գործը, օրինակ իմն, Հայոցմէ առին ու Թուրքերու տուին։ Անբաւ եւ անմաքրելի չփոթութիւններ ծագեցան հաշիւներուն մէջ։ Նաեւ, հարեւանցի յիշենք, թէ Թուրք բաշխիչները Օսմանեան ընտանիքներու թայինները յանձ-

նելու առթիւ յանդուգն ակնարկներ եւ անհա-
մեստութիւններ ըրին, բան մը զոր Հայերը եր-
բէք չէին ըներ։ Վեց կամ եօթը ամիս հազիւ
տեւեց այս փորձը։ Գործը ամբողջովին նորէն
Հայոց ձեռքն անցաւ։ Հայը իրեն յատուկ պաշ-
տօններ ունի կատարել որոնցմէ չի կրնար Օս-
մանեան կայսրութիւնը ինքզինքը զրկել, եւ սը-
խալ մը կ'ընէ Կառավարութիւնը այդ փորձն ը-
նելով։ Նաարէտարին՝ կտրելով ճիւղը որուն վրայ
նստած էր՝ վար ինկաւ։

Թուրք քաղաքագէտները եւ ինքն Սուլթան
Համիտ անշուշտ լաւ գիտէին թէ Օսմանեան Գա-
հուն անկախութեան մեծագոյն սպառնալիքը տն-
տեսական կարգի է։ Փոխադարձ նախանձը եւ կը
պահէ մեծ Տէրութիւնները զԹուրքը Պոլսէն զըր-
կելէ, սակայն եթէ պետական Գանձուն վիճակը չը
բարւոքի, ուշ կամ կանուխ վարչական մեքենան
Եւրոպական հսկողութեան պիտի ենթարկուի։ Ել-
մըտական խեղճ վիճակն է պատճառ որ Օսմանեան
նաւատորմիղը այսքան տկարացած է։ Նոյն պատ-
ճառաւ է նաեւ որ 425,000 զօրաց՝ զոր կրնայ
Թուրքիա դրօշի տակ կանչելէն հինգ շաբաթ յե-
տոյ թշնամւոյն դէմ հանել՝ 170,000ը անմարզ
են, զէնքերը անմիօրինակ ու մասամբ հնաձեւ։
Թէպէտ ընտրեալ գնդերու զինուորական կըր-
թութեանը մեծ հոգ տարուած է վերջին տա-
րիներս, հազիւ երբեք զէնքի կիրառութեան եւ
ռազմական մարզանքի ընդարձակ փորձեր եղած
են, ու արգելքը պարզապէս դրամի պակասու-
թիւնն է, որովհետեւ ոչինչ այնքան կենսական
կարեւորութիւն ունի յաչս Կառավարութեան որ-
քան բանակին զօրութիւնը։ Անկէ անխուսափելի-

օրէն կը հետեւի թէ կառավարութիւնը, եթէ իր գործը գիտէ, պէտք է փափաքի որ հայկական տարրը խաղաղի ու իր տնտեսական դերը ազատօրէն կատարէ Օսմանեան կայսրութեան մէջ։

Սուլթանին կառավարութիւնը պարտի ի հաշիւ առնել ուրիշ մեծ վնաս մ'ալ, բարոյական կարգի, որ Մահմետական տարրին կ'ըլլայ հայատեաց քաղաքականութեան երեսէն։ Տնտեսական կարգի վնասին չափ ակներեւ չէ այն, բայց ո՛չ նուազ ահագին է։ Կառավարութիւնը վիթխարի սխալ մը կ'ընէ եթէ կը կարծէ թէ Թուրք ժողովուրդը բարոյապէս կ'օգտուի երբ արտօնութիւն կը ստանայ իր հայ դրացիները նեղելու եւ կոտորելու։ Արձակ դաշտի վրայ երբ զօրքը թշնամւոյն դէմ կ'ելլէ ու կը մարտնչի, քաջերն աւելի քաջ կ'ըլլան ու անձնուէրներն աւելի կը զօրանան բարոյապէս, եթէ ունին գիտակցութիւնը թէ «Աստուծոյ և Իրաւունքի» համար կը կռուին։ Սակայն ի՞նչ էր Թուրքերուն շարժառիթը երբ Հայերը կոտորելու հրահանգ ստացան — կողոպուտի սէրը եւ հնազանդութիւն մը վերին հրամանի։ Թուրքերը վարժուած են իրենց իշխանութեանց կամաւորապէս հնազանդիլ, եւ ասիկա է իրենց զօրութեան խարիսխը։ Բայց տարակոյս չկայ թէ Թուրքերը ջարդէն յետոյ շատ անգամ զգացին թէ պարզ սպանութիւն էր իրենց ըրածը եւ ոչ քաջութեան գործ։ Ի՞նչ քա՞ջութիւն կրնայ ըլլալ հոն ուր զինեալ ամբոխը, իրեն թիկունք ունենալով կանոնաւոր զօրքը, կը յարձակի անզէն դրացիներուն վրայ, կը զարնէ, կը կտրէ, կը մորթէ, դողդողջուն ծերունիներուն եւ կաղերուն եւ կոյրերուն անգամ չխնայելով։ Ասիկա

ամենավատ արարք մըն է, և Թուրքին բարոյական յատկութիւններուն խորապէս կը վնասէ։ Անոր անգթութեան, աւազակային եւ ոճրագործական կիրքերը կը զօրացնէ, այսինքն ճիշդ ինչ որ հակառակ է Ղուրանի օրէնքին։ Կիրքերուն բորբոքած պահուն՝ երբ ամբոխը կը հալածէ ու կը խողխողէ Աստուծոյ արարածները որոնք բնաւ յանցաւոր չեն, չի խղճահարիր, սակայն հանդարտ հանդիսատեսները կը զգան թէ ահաւոր չարութիւն մը տեղի կ'ունենայ։ Խարբերդի ջարդին ատեն Մահմետական կին մը, դիտելով պատուհանէն իր կրօնակիցներուն վայրագ ու անագորոյն ընթացքը, կ'աղաղակէր Թուրքերուն. «Ալլահ պիտի պատժէ ձեզ այդ չարութեան համար։»

Հասարակ իմացականութիւնները կը կարծեն թէ չար գործի մը պատիժը անմիջապէս կուգայ շօշափելի եւ շռնդալից կերպով, այսինքն իբրեւ արդիւնք Աստուածային ցասումին։ Սակայն օրէնքներու սովորական գործողութիւնը կամաց է թէև ստոյգ եւ անխուսափելի։ Եւ կարծեմ Մահմետական իսլէման ալ Քրիստոնեայ վարդապետաց հետ կ'ընդունին թէ մարդ իր անիրաւութիւն գործած վայրկեանին իսկ կը կրէ իր պատիժը, կամ պատիժին մէկ մասը, հետեւանօք այն վնասին զոր իր խիղճը կը կրէ չարագործելով։ Վատ գործը զմարդ կը վատասերէ անվրէպ։ Ասիկա բարոյական օրէնք է մարդկային բնութեան համար։ Կոտորածէն ետև Մահմետականները անշուշտ նուազ բարոյական ոյժ ունին, նուազ խըղճամիտ են քան առաջ։ Ասիկա կարեւոր վնաս մ'է ուրիշ կարգի վնասներով ալ։

Սուլթանին համար կ'ըսուի թէ քաղաքական համիսլամական չարժումին շատ համակիր գտնըւած է։ Սակայն մեծ զարմանք է որ ինքը զգացած չըլլայ թէ երբ իր Մահմետական ժողովուրդներուն թոյլ կուտայ դաւել ու վատ նախճիրներ գործել հակառակ Մահմետական օրէնքի, թէ՛ կրօնքին վարկին կը վնասէ թէ ժողովուրդին բարոյական թելերուն։ Մոնդէսքիէօ շատ խորունկ դիտողութիւն մը կ'ընէ, երբ կ'ըսէ թէ «Մեզի այնքան ակներեւ չէ կրօնքի մը ճշմարիտ ըլլալը որքան այն իրողութիւնը թէ կրօնք մը պարտի մարդոց բարքերը մեղմացնել։» Ասկէ կը հետեւի թէ խորհող եւ խղճամիտ Միւսիւլմանները թերահաւատութեան պիտի միտին երբ տեսնեն թէ կրօնքին առաջնորդները կ'արտօնեն սրտերն անգըթութեան վարժեցնող գործեր։ Իսկ եթէ կըրօնքին վրայ իրենց հաւատքը անյողդողդ է, առաջնորդներուն վրայ պիտի երկմտին։ Ֆրանսացի հեղինակը այս կապակցութեամբ կը յիշէ գեղեցիկ երազ մը ի բացատրութիւն։ «Սապպաքօնի, հովիւ թագաւորներէն միոյն, պատմութիւնը ըսքանչելի է,» կ'ըսէ Մոնդէսքիէօ։ «Թեբէի աստուածը անոր երեւցաւ յերազի, եւ անոր հրամայեց Եգիպտոսի բոլոր քուրմերը սպաննել։ Ասոր վրայ թագաւորը խորհեցաւ թէ աստուածներն այլեւս չէին ուզեր որ ինքը թագաւորէր, որովհետեւ իրենց սովորական կամքին այնքան հակառակ բան մը իրեն կը հրամայէին, եւ քաշուեցաւ յԵթովպիա։» (Esprit des Lois, էջ 372)։ Խղճամիտ Իշխանը, զօրքը, կառավարիչը եւ հասարակութիւնը պարտաւոր են չգործադրել Աստուծոյ կամքին հակառակ հրաման մը եթէ հրամանը թուի Աստուծմէ իսկ գալ։

Սուլթանին կառավարութիւնը չի կրնար հալածանքն ու ջարդերը արդարացնել ըսելով թէ հարկ էր այդ միջոցներով պահպանել Օսմանեան տիրապետութիւնը Հայաստանի վրայ։ Կ՚ընդունինք թէ կառավարութիւն մը իրաւունք ունի իր աշխարհակալած երկիրներուն վրայ իր իշխանութիւնը պահպանել, ապստամբները զսպել, ընդվզողներուն դէմ զօրք հանել, անոնց հետ կռուիլ եւ զանոնք ջախջախել։ Բայց Օսմանեան կառավարութիւնը շատ լաւ գիտէ, ու Եւրոպա ալ քաջ իրազեկ է, թէ Հայկական ոչ ապստամբութիւն եղած է եւ ոչ յեղափոխական շարժում։ Այսպիսի անուններով հռչակուած խլրտումները գործն եղած են 50 հոգիէ, հազիւ երբեք 100 հոգիէ բաղկացած անձերու որոնք բուն Տաճկահայ ալ չեն եղած, քիչ բացառութեամբ, այլ ռուսահպատակ Հայեր, Կովկասէն սպրդած ի Հայաստան։ Վերջին քսան տարուան մէջ զէնք առած ու յեղափոխական կռուի ասպարէզն իջած Հայերու ամբողջ թիւը երբեք հարիւրի չի հասնիր, ու դըրամով անոնց օգնող տղոց թիւը երբեք հազարը չանցնիր։ Յեղափոխական առաջնորդներն այդ պատճառով նեղը մնացած են դրամի կողմէ եւ սպառնալեօք հարուստներէն ստակ կորզել ջանացած են. եւ ծանօթ է նոյնպէս թէ քանի մը մեծատուններ՝ մերժած ըլլալով անոնց պահանջին համակերպիլ՝ սպաննուած են։ Այս իրողութիւնները պարզ կը ցուցնեն թէ Հայ ազգը ապստամբած չէ եւ ոչ յեղափոխութեամբ իր դատը վարկելու հետամուտ եղած։ Աշխարհք գիտէ թէ եկամուտ չնչին խմբերու բռնազբօսիկ փորձերուն տեղ՝ եթէ բուն Հայ խելացի առաջնորդները եւ

Հասարակութեան գոնէ կարեւոր մէկ մասը համոզուած ըլլային թէ յեղափոխութիւն հարկաւոր է բարեկարգութիւններն ի գործ դնել տալու համար, 40-50ի տեղ գոնէ 15-20 հազար հոգի կը չարժէին եւ չնչին գումարներու տեղ միլիոններ կը հանգանակուէին։

Սակայն Հայերը բնութեամբ խաղաղասէր են ու իրենց գործին զբաղիլ կ'ուզեն, հաւատալով թէ վերջապէս իրենց արդարութիւն պիտի ըլլայ։ Արդ, ափ մը տղաքը կրնա՞ն երբէք յեղափոխական կուսակցութիւն կազմել, եւ ո՞ր կառավարութիւն կարող է արդարանալ երբ մէկ-երկու պզտիկ, աննշան խմբերու, կրակոտ եւ գրգռեալ երիտասարդներու արարքին համար կ'իյնայ ամբողջ հասարակութեան կամ ամբողջ ազգին վըրայ ու կը ջարդէ բիւրաւորներ։ Կ. Պոլսոյ Պանքայի ցոյցը ընողները ութ կամ տասը Ռուսահայեր էին, սակայն Կառավարութիւնը այդ ցոյցին առթիւ մայրաքաղաքին մէջ ջարդել տուաւ 8 կամ 10 հազար Հայեր, որոնք այնքան հակառակ էին առանկ ցոյցերու որքան ինքը՝ Կառավարութիւնը։ Ո՞ր կրօնք, ո՞ր օրէնք կրնայ չքմեղել առանկ անիրաւութիւն մը։ Ո՞վ կրնայ մեզի կըլլել տալ թէ Ղուրանի օրէնքին համաձայն է այսպիսի վիթխարի անգթութեան գործ։

Պէտք է որ Հայոց կողմէն դիմում մ'ըլլայ Մահմետական իւլէմաներու հեղինակաւոր ժողովի մը, եւ այս մասին անոր վճիռը ստացուի։ Յայտնի է թէ այդ վճիռը ինչ պիտի ըլլայ, և ես կը համարիմ թէ արդէն անուղղակի տրուած է անիկա։ Վերջերս երեւան ելաւ շատ կարեւոր իրողութիւն մը Մահմետական աշխարհին մէջ յա-

ռաջ գնացող կենսական շարժումի մը մասին։ Մահմետական Իւլէման, այսինքն իսլամական օրինաց եւ Ղուրանի սկզբանց վարդապետները, յաջողած են հիմնել գաղտնի ընդարձակ ընկերութիւն մը, որուն ճիւղերը բովանդակ Իսլամ աշխարհի մէջ սփռուած են, եւ որուն նպատակն է Միւսիւլման օրէնքը իր սկզբնական մաքրութեան մէջ վերահաստատել։ Ընկերակցութիւնը երբեմն այս երբեմն այն Մահմետական կեդրոնի մէջ կ'ընէ իր տիեզերական ժողովը։ Այս տարի Կ. Պոլսոյ մէջ եղաւ անոր նիստը։ Շատ շահեկան է այս Իւլէմայից մեծագոյններէն մէկուն յայտարարութիւնը։ «Իսլամութեան խարիսխը,» ըսած է անիկա, ''մարդասիրութիւնն ու ընկերին սէրն է։'' Նոյն անձնաւորութիւնն ըրած է նաև հետեւեալ հաստատումներն. —

''Մեր պարտքն է բարեկամական յարաբերութիւններ մշակել բոլոր ազգերուն հետ...։ Այն Իսլամ Իշխանները որոնք չեն պաշտպաներ կրօնքին իրաւունքները, և տկարութեան ու կործանման պատճառ մ'ըլլալ կը սպառնան Իսլամութեան համար, Շէրիի օրէնքին առջև պատասխանատու են։.... Իւլէմաները Իսլամ վեհապետներու ուշադրութիւնը կը հրաւիրեն իրենց պարտաւորութեան վրայ որ է պաշտօնէ զրկել բոլոր անբարոյական պաշտօնեաները, ամէն անոնք որք կը կողոպտեն կառավարութիւնը կամ ժողովուրդը, ինչպէս նաև տգէտ ու մակաբոյծ պաշտօնեաները, եւ անոնց տեղ կարգել ուսեալ և փորձառու մարդիկ որոնք գործեն Իսլամ կրօնքին սկզբանց համաձայն։ Այս կերպով միայն պիտի կրնան վեհապետները պաշտպանել Իսլամութեան շահե-

րը, պաշտպանել ստացուածքը, անհատներուն տալ ապահովութիւն, եւ իւրաքանչիւր մարդու իրաւունքներն յարգել տալ։ Այս նկատողութիւններով է որ սրբազան օրէնքի ամենէն մեծ վարդապետները յանուն Մարգարէին կը հրաւիրեն զԽալիֆան ինքնայօժար ձեռնարկել բարեկարգութեանց։" (LE COURRIER EUROPE'EN, 10 Փետըր· 1905)։

Լսեցէ՛ք, լսեցէ՛ք։ Աշխարհի հեռաւոր ծայրերէն եկած Իւլէմաները կը յայտարարեն թէ Սուլթանը պարտաւոր է բարեկարգութեանց ձեռնարկել։ Ուրեմն անոնք ալ համաձայն են Հայոց թէ բարեկարգութեանց պէտք կայ։ Ի՞նչպէս կարելի է ուրեմն արդարացնել կառավարութիւն մը որ տիեզերական կարծեօք պահանջուած բարեկարգութիւն մը ջատագոված ըլլալը ոճիր կը համարի Հայոց եւ զանոնք անասելի, անողոք, անգութ հարստահարութեանց կ'ենթարկէ, եւ Քըրդերու ու կանոնաւոր զօրաց վայրագ խժդժութիւններուն։ Եւ ի՞նչ կ'ուզեն այսօր Հայերը· ճիշդ ինչ որ 30 տարի կ'ուզէին· այսինքն Իւլէմաներուն բանաձեւած բարեկարգութիւնները, որ իրագործուին պարկեշտ, անկաշառակուրծ, արդարասէր կառավարիչներու եւ պաշտօնեաներու ձեռքով, որոնք ժողովրդին ստացուածքը, պատիւը, անհատական իրաւունքները պաշտպանեն։

Կրօնական եւ բարոյական տեսակէտէն դառնալով նորէն քաղաքականին, կրնա՞յ Օսմանցւոց լուսամիտ մասն արդարացնել իր Կառավարութեան ընթացքը հանդէպ Հայոց։ Անոնք գիտեն թէ Հայոց Պատրիարքը Ռուսի շահախնդիր թելա-

գրութիւններէն խաբուելով Սան-Ստեֆանօ գընաց, յուսալով որ այդ կերպով բարեկարգութեանց գործադրումը պիտի ապահովուէր։ Գիտեն նոյնպէս թէ Ռուսահայեր, Ռուս կառավարութեան թոյլտուութեամբ, քանիցս մտած են Թուրքիա եւ խռովութիւններ յարուցած, խռովութիւններ զորս անոնք ապստամբութիւն կոչեր են, իսկ Հայոց անհուն մեծամասնութիւնը այդ խլրտումները թէ տղայական եւ թէ վնասակար նկատած են։ Ներկայութեան այս իրողութեանց՝ կը վայլէ՞ր Օսմանեան Կառավարութեան այնպէս վարուիլ իր հպատակ Հայ ազգին հետ իբր թէ դրսէն եկող մի քանիներու արարքին համար ա՛զգը ըլլար պատասխանատու։ Կառավարութեան պարտաւորութի՛ւնն էր, ընդհակառակն, համակրիլ Հայոց, եւ իմաստուն միջոցներով եւ Հայոց Պատրիարքին հետ խորհրդակցութեամբ ձգել այդ խմբերը իրենց արժանաւոր դիրքին մէջ, այսինքն վնասակարութեան անկարող վիճակի մը դատապարտել զանոնք՝ իրագործելով հարկաւոր բարեկարգութիւններ, ո՛չ թէ ամբողջ ազգը լայնատարած հալածանքներու ենթարկել և անմեղներու անթիւ բազմութեան մը վրայ լուծել վրէժը ափ մը մոլորեալներու ընթացքին։ Օսմանեան կառավարութեան ծայրայեղ ու անգութ խստութիւնները Հայոց մասին կրնան այնքան ռուսական նենգաւոր թելադրութեանց արդիւնք ըլլալ որքան խումբ մը հայ տղոց խենթութիւնները։ Ռուսը, որ Թուրքիոյ երդուեալ թշնամին է եւ ուխտած է Պոլիսը առնել, ամէն հնարք ի գործ դրած է թէ՛ Թուրք և թէ՛ Հայ տարրերը տկարացնել, եւ ամէն ոք գիտէ թէ հայ-Թուրք յարաբերութեան,

ձգտումն ու ջարդերը ռուսական հաշիւններու յաջողութեանը միայն ծառայեցին ի վնաս Օսմանցւոց եւ Հայոց։ Դարձեալ կը հարցնեմ — քաղաքական գործոց մէջ այնքան եփած եւ Ռուսիոյ դիմումներուն այնքան ներկուռ Օսմանեան կառավարութեան կը վայլէ՞ր թակարդն իյնալ և իր ալ բազուկն եղող Հայ ազգը վիրաւորել, ցըրտացնել եւ ջախջախել։

Ռուս կառավարութեան ուխտեալ թշնամական կեցուածքը հանդէպ Օսմանեան կայսրութեան դարէ մը ի վեր ակներեւ էր, ու վերջին 25 տարուան մէջ ալ նոյնը ակներեւ եղաւ Հայոց նկատմամբ։ Մոսկոֆը կովկասի մէջ Հայոց դպրոցներուն և կրթական ընկերութիւններուն դէմ անիրաւ տնօրինութիւններ ըրաւ, Հայոց եկեղեցապատկան ստացուածոց մատակարարութիւնը իր ձեռքն առնել ուզեց, և, ի լրումն չարեաց, վերջերս Բագուի մէջ իր գործերուն աչքին առջեւ 700 Հայեր խողխողել տուաւ Թաթարներուն, որոնց զէնք հայթայթեց, մինչ Հայերը անզէն ու անկասկած իրենց գործերովը զբաղած էին, թէև ասոնք ալ ինքնապաշտպանութեան հարկէն սպաննեցին քանի մը հարիւր Թաթարներ։

Բայց այս ողբալի ընդհարումը չորրորդ օրն իսկ վերջացաւ սխրալի տեսարանով մը։ Կովկասի Մահմետականներուն Շէյխ-իւլ-Իսլամը Թիֆլիսէն եկաւ Բագու եւ Հայ ու Թաթար երեւելիներու հետ դիմեց խաղաղութեան կեդրոնավայրը, և սա բարձրախոհ խօսքերն ուղղեց իր կրօնակիցներուն. ''Մահմետակա՛ն եղբայրներ, արիւնը կը սառի երակներուս մէջ երբ կը մտածեմ պատուհասին վրայ որ կը սպասէ ձեզի Աստուծոյ դա-

տաստանին մէջ։ Դուք ձեր եղբայր Հայերուն անմեղ արիւնը թափած էք։ Մոռնալով եղբայրական դարաւոր յարաբերութիւններն զոր ունեցած էք անոնց հետ, ձեր խաղաղ եղբայրներուն վրայ խոյացած էք գազանօրէն եւ հարիւրաւոր ընտանիքներ որբացուցած։ Արթնցէ՛ք ձեր ապշութենէն։ Եղբայրական ձեռք կարկառեցէք Հայերուն։ Զղջացէ՛ք ձեր ոճիրներուն վրայ եւ Հայոց հետ գործակցեցէք որբերն մխիթարելու։ Հաստատ համոզուած եմ թէ ձեր ու Հայերուն միջեւ այս զարհուրելի ընդհարումը երբէք պիտի չկրկնուի ապագայ դարերուն մէջ։ Եղբայրութեամբ ապրեցէք միասին եւ Աստուած պիտի օրհնէ զձեզ։"

Այս սրտայոյզ խօսքերը լսելով Մահմետական ամբոխը զղջումի մեծ լալիւն մը կուլայ և համբոյրներ կը փոխանակէ Հայերուն հետ։ Ցետոյ Շէխ-Իւլ-Իմամը, Միւֆթին, Մօլլաները և Մահմետականներու մեծ բազմութիւն մը Թիֆլիսի Հայոց եկեղեցին կ'երթան եւ Հայոց Ս. Կաթողիկոսին և Ժողովուրդին հետ ներկայ կ'ըլլան հոգեհանգստի պաշտամունքին։ Բազմութիւնը 45,000 կը հաշուեն։ Երկու ազգերուն կղերականներն սիրոյ յորդոր կը կարդան հայ եկեղեցւոյ բեմէն և յետոյ նոյն եղբայրական ցոյցերը կը կրկնեն Մահմետականաց մզկիթին մէջ։ Կովկասի Մահմետականներն ո՛րքան ուելի լուսամիտ են և իրենց աչքերը ո՛րքան բաց են ճանչնալու հասարակաց թշնամին, Ռուս Կառավարութիւնը։

Ինչպէս եւրոպացիները կ'ըսեն, "հոգեբանական վայրկեանը" հասած է, և Սուլթանին Կառավարութիւնը պարտի փութով Հայերուն համակրութիւնը շահիլ ու զանոնք իր գահուն հաւա-

տարիմ հպատակներն ընել որպէս յանցելումն, լուրջ բարեկարգութեանց գործադրմամբը մոռցընել տալով անոնց եղած անբաւ անիրաւութիւնները: Քաղաքական իմաստութիւնը կը թելադրէ որ Օսմանցին փոխանակ Հայերը տկարացնելու զօրացնէ, վստահ ըլլալով որ անոնք, այս ահաւոր փորձառութենէն յետոյ, միշտ պիտի նախընտրեն Օսմանեան իշխանութիւնը ռուսականէն, եւ քանի որ իբրեւ պզտիկ ազգ մը կարօտ են աւելի մեծ ազգի մը թեւարկութեանը, ապագային մէջ ալ անոնք Օսմանցւոց լաւագոյն դրացիները և հաւատարմագոյն աջակիցները պիտի ըլլան օտարներու ոտնձգութեանց դէմ:

Օսմանեան Կառավարութեան համար պատուաբեր պիտի ըլլայ այս հաշտութիւնը անոր համար որ խելացի եւ ճշմարիտ քաղաքագիտութեան գործ մը կատարած պիտի ըլլայ իր վիրաւորած Հայ հպատակ ազգը իրեն բարեկամ և ուժ մը ընելով, փոխանակ տկարութեան և տագնապի աղբիւրի մը վերածելու զայն: Հայոց համար ալ պատուաբեր պիտի ըլլայ այնո՛ւ որ Հայ ազգը, փոխանակ օտարներէն սպասելու իր վիճակին բարւոքումը, ինքն իր ճակատագրին տէրը կը դառնայ, դժուարութիւնները ի՛նքը կը վերցնէ մէջտեղէն եւ կը մտնէ խաղաղ յառաջդիմութեան ուղին:

Այս հաշտութիւնը դժուար բան մը չէ եւ կրնայ անյապաղ իրականանալ եթէ երկու կողմէն ալ անկեղծութեան ապացոյց տրուի: Հայերը չատոնց կ'աշխատին կանոնաւոր պայքարով մը համոզել Դաշնակցականաց խումբը որ իրենց այդ անօգուտ յեղափոխական խլրտումներէն վազ

դան, և եթէ կ՚ուզեն անվրէպ ծառայել ազգին, կազմեն կրթական ընկերութիւն մը, ընեն առողջ հրատարակութիւններ, ի լոյս հանեն օգտակար գրքեր եւ օգնեն որբանոցներու և դպրոցներու և արհեստանոցներու զարգացմանը։

Նոյնպէս և Օսմանեան Կառավարութիւնը լաւ կարող է իր անկեղծութիւնը ապացուցանել վերադարձնելով Հայոց Պատրիարքարանին իր նախկին իրաւասութիւնները։ Դրան աւանդական քաղաքականութիւնն եղած է իր հպատակ քրիստոնեայ ազգերը անոնց կրօնական գլուխներուն միջոցաւ կառավարել, որով կարգ մը աւելորդ հոգերէ ու մանրամասնութիւններու ծանրութենէն զերծ կը մնայ։ Պատրիարքարանին վարկը բարձրացնելով՝ յեղափոխական տղոց խմբին հարուած մը տուած կ՚ըլլայ Կառավարութիւնը, վասն զի ասոնց յանդգնութեան մէկ պատրուակը ա՛յն եղած է թէ Պատրիարքարանը ազգին հոգ տանելու արտօնութենէն զրկուած, պատրիարքական թաքդիրները անարգուած ըլլ՚ալով՝ իրե՛նց անկ է բարեկարգութիւններն իրագործել տալու աշխատանքը։

Կառավարութիւնը, Պատրիարքին խնդիրներուն անկեղծ ուշադրութիւն տալով հանդերձ, եթէ մեծ նեղութեան ու աղքատութեան մէջ չարաչար տառապող գաւառներուն վրայ շնորհքով եւ լուսամիտ կառավարիչներ անմիջապէս կարգէ, տարակոյս չկայ թէ զգալի բարւոքում մը ձեռք կը բերուի։ Հարկ է նաև որ բոլորովին վերցուին այն կաշկանդիչ կարգադրութիւններն որոնք տարիներէ ի վեր դրեթէ անդամալուծած են Հայոց տնտեսական շարժումն և առևտրական

երթեւեկութիւնը։ Այս անսովոր կարգադրութիւններուն նպատակն էր յեղափոխական քանի մը երիտասարդները արգիլել գործունէութենէ կամ հաղորդակցութիւններէ, սակայն անոնք հընարը կը գտնեն ասդին անդին մուտ գործելու երբեմն, մինչ բովանդակ Հայ ազգը գրեթէ չըդթայուած կը մնայ։ Այսօր փաստը, տնտեսականօրէն, ինչպէս փորձառութիւնը ցոյց տուած է, թէ Թուրք և թէ Հայ տարրերուն կը դպչի հաւասարապէս։

Հայ Ազգին լուսամիտ առաջնորդները կը ջանան երիտասարդութեան եռանդն ու գործունէութիւնը մղել դէպի խաղաղ զարգացման միջոցները, եւ բանաւոր կը համարին յուսալ թէ Օսմանեան կառավարութիւնը իր կողմէն պիտի ընէ ամէն ինչ որ հարկաւոր է Հայ ազգը այս ուղղութեան մէջ քաջալերելու։ Այս մասին մանրամասն թելադրութիւններ ընելու պէտք չկայ։ Գիտենք թէ ոմանք արտասահմանի մէջ յեղափոխութիւն քարոզելն իրենց արուեստ ըրած են, քանզի Հայրենիքին մէջ կանոնաւոր ու խաղաղ գործով մը ապրելու դիւրութիւններէն զրկուած են։ Թէև Սուլթանին կառավարութիւնը աղմուկներէ խաբուելով կը կարծէ թէ Ամերիկայի մէջ Հայերը մեծ մասամբ թունդ յեղափոխականներ են, սակայն իրողութիւնն այն է թէ այդպիսիք բաղդատաբար աննշան թիւ մը կը կազմեն, ու կան բազում չնորհքով Հայեր, ծանրագլուխ, նախապաշարումներէ ազատ, եւ Թուրքիոյ մէջ այլ և այլ կերպով ծառայելու պատրաստ, որոնք անիմաստ արգելքներու պատճառով չեն կրնար Թուր-

քիա վերադառնալ եւ օգտակար ըլլալ իրենց երկրին։

Մենք վստահ ենք որ եթէ Սուլթանին Կառավարութիւնը այս բաներուն վրայ լաւ խորհի և քննելով իրաց ճշմարիտ վիճակին տեղեկանայ, պիտի տեսնէ թէ հաշտասէր քայլն առնելով և Հայոց սիրտը շահելով՝ բացած պիտի ըլլայ բարեկարգութեան եւ յառաջդիմութեան դարաշրջան մը Օսմանեան կայսրութեան [illegible]րութեան համար։



ԳԼՈՒԽ Ժ

## ՀԱՅԿԱԿԱՆ ԳՈՐԾՈՒՆԷՈՒԹԵԱՆ ՄԵԹՈՏԸ

Հայաստանի մէջ 1870էն առաջ իսկ կացութիւնը այնպիսի քստմնելի վիրաւորանք մ'էր մարդկային արժանապատուութեան որ գովելի և մարդասիրական գործ մը ըրած պիտի ըլլար ոևէ մէկը որ այդ վիճակին դարման մը փնտռէր։ Սակայն Հայոց դատը ուրիշ և աւելի բարձր տիտղոս մ'ալ ունի համակրութեան։ Հայը կը ճանչցուի Եւրոպացւոցմէ իբրև ամենէն ուշիմ, աշխատասէր և յառաջդիմական ցեղն Արևելքի մէջ։ Այս իրողութեան գիտակցութիւնը սրբազան եւ հրամայական կոչ մ'է հայկական խղճին ուղղուած։ Հա՛յն է ցեղը զոր պատմութիւնը կը հրաւիրէ քաղաքակրթիչի դեր կատարել իր գտնուած

շրջավայրին մէջ։ Հայուն ազգային նպատակն է, մշակութեամբ բեղմնաւորելով իր արգաւանդ ընդունակութիւններն, իր ամբողջ կարողութեան չափովը սատարել լուսաւորութեանն ու զարգացմանը բոլոր այն ցեղերուն որք կը շրջապատեն զինքը Փոքր Ասիոյ եւ Սիւրիոյ մէջ։

Այսպէս Հայուն նպատակը բարձրօրէն մարդասիրական ըլլալով, ինչո՞ւ անիկա իր ազգային ճիգին առաջին շրջանին մէջ իսկ հզօր ու յամառ դիմադրութիւններու բախեցաւ եւ անյաջող եղաւ։ Ինչո՞ւ այն ցեղերը — Թուրք և Քուրդ — որոնք ամենէն աւելի պիտի օգտուէին Հայուն յաջողութենէն, եղան անոր ամենէն ոխերիմ թշնամիները։ Կրնանք ըսել թէ երկուքն ալ տըգէտ էին, եւ ինչպէս Քուրդը Թուրքէն խաբուեցաւ; այնպէս ալ Թուրքը՝ Ռուսէն։ Բայց անիկա բաւական չէ։ Մենք գիտէինք անոնց մտային վիճակը երբ շարժիլ սկսանք։ Մեր բազմաղէտ ձախողութեան գլխաւոր պատճառը կայ։

Փորձառութիւնը շատ պայծառօրէն ցոյց տըւած է թէ նպատակի մը բարի ըլլալը ամենեւին երաշխիք մը չէ յաջողութեան։ Նենգամիտ մարդ մը կը յաջողի իր բարերարը մեռցնել եթէ անոր տայ հարուած մը կամ թոյն մը մատուցու։ Ընդհակառակն՝ անձնուէր բարեկամ մը չի յաջողիր իր սիրելին բժշկել եթէ չգիտնայ տալ բուժիչ դեղը, եւ տալ զայն պահանջուած չափովն ու յարատեւութեամբը։ Որպէս զի մարդս հասնի իր նպատակին, չար թէ բարի, պարտի գործածել այն միջոցները որոնք հարկ եղած յարմարութիւնն ունին։ ՄԵԹՈՏ կը կոչենք որոշեալ նպատակի մը զմեզ առաջնորդող կազմակերպեալ

միջոցներու ամբողջութիւնը։ Մեթոտ մը այնքան աւելի արժանի է այդ անունին, այսինքն այնքան աւելի լաւ եւ կատարեալ է որքան աւելի ստուգիւ եւ դիւրութեամբ կը հասցնէ զմեզ մեր փնտռած նպատակին։

Արդ, մեր ազնիւ ու մարդասիրական նպատակին հասնելէ հեռի՝ կը տեսնենք հիմա մեր կացութիւնը շատ աւելի վատթարացած քան 1878էն առաջ ապրող սերնդոցը, ուստի և ստիպուած ենք ընդունիլ թէ մեր միջոցները պատշաճեցուցուած չէին նպատակին — թէ մերը առանց մեթոտի գործունէութիւն մ'է եղած։

Անմշակ, թէպէտ բարեմիտ, երիտասարդք գաղափա՛րն անգամ չունին թէ ազգին քաղաքական եւ իմացական ծառայութիւններ մատուցանել յոյժ դժուար արուեստ է՝ լուրջ պատրաստութիւններու կարօտ, ուստի և չենք զարմանար երբ կը տեսնենք թէ անոնք ափ յափոյ կը վճռեն խնդիրներ որոնց առջեւ փորձ դիւանագէտք անգամ կը շուարին։ Զարմանալով կը զարմանանք սակայն որ դպրոցականի անուն ունեցող ‘‘ինտէլիգէնդ’’ներէն ոմանք ազգային փրկութեան ճիգը բաղդախաղի մը վերածած ըլլան եւ բիւրաւոր Հայերու գլուխները սեղանին վրայ դնեն խոշոր արդիւնք մը ձեռք բերելու թեթեւամիտ փափաքով։ Այս մեթոտին, եթէ պէտք է այդ անունով կոչել յայտնապէս խենթուխելառ գործելակերպ մը, ինչո՞վ կը դիմադրեն ազգին լուրջ եւ զգօն մտաւորականները։ Առանց տատամսելու ըսենք, անոնց ալ գործունէութիւնը բոլորովին առանց մեթոտի է։ Անոնք մինչեւ այսօր չեն յաջողած ի գործնականին ցոյց

տալ այն մեթոտը որ ուղիղ է եւ նպատակին ծառայելու լաւ հաշուըւած։ Ուղիղին բացակայութի՛ւնն է որ մոլարին առջեւ ասպարէզը այնքան լայնօրէն բաց կը պահէ։ Ազգավնաս ուղղութեան վրայ կասկածողներն, գայթակղեալներն ու բարկացողք չեն տեսներ ազգային վարիչ կեդրոն մը առ որ դարձնեն իրենց աչքերը։

Ճշմարիտ է թէ արտասահմանի մէջ ունինք քանի մը հայրենակիցներ որոնք տարիներէ ի վեր կ'աշխատին ազգային դատը ջատագովելու օտարաց առջեւ։ Գիտենք սակայն թէ ասոնց ոչ մին պաշտօնական ձեռնհասութիւն ունի, եւ ոչ իսկ գլուխն կամ ներկայացուցիչն է կազմակերպեալ մարմնոյ մը։ Հայ մը, անհատական նախաձեռնութեան շնորհիւ, կը հիմնէ հայերէն կամ օտարալեզու թերթ մը, կը ստանձնէ անոր ելմտական եւ խմբագրական բոլոր պատասխանատուութիւնը՝ ըլլալով տնօրէն, քարտուղար և գանձապետ, երբեմն Հայոց եւ Հայկական Խնդրոյն վրայ կը բանախօսէ օտարաց, շատ անգամ օտար թերթերու մէջ Հայոց դատը կը ջատագովէ, եւ կը պատահի ալ որ այս կամ այն կառավարութեան գրաւոր դիմում մ'ընէ իբրեւ անհատ մը և խմբագիր մը։ Այս ամենը սքանչելի է, զի բազում նեղութիւն եւ աշխատանք կ'ենթադրէ, բայց ըսքանչելի է իբրեւ անհատական ճիգ, զի ազգային տեսակէտէն մեթոտի ողորմելի բացակայութեան նշան է։

Եւրոպական մեթոտները դիտելու պատեհութիւն ունեցող ազգայիններն գիտեն թէ անհատի մը ազդեցութիւնը ո՛րքան կը մեծնայ եւ անոր խօսքերն ո՛րքան աւելի ուշադրութիւն կը գրա-

ւեն երբ յանուն կազմակերպեալ մարմնոյ մը խօսի անիկա։ Մենք չգիտցանք Եւրոպայի մէջ կազմել այսպիսի մարմին մը որով բազմապատկած ըլլայինք Հայ ջատագովութեան եւ դիմումի ազդեցութիւնը։ Պարոն Ա., Պարոն Բ. և Պարոն Գ. անհատապէս խօսելով իւրաքանչիւրը կ'ազդէ իբրեւ մէկ, եւ երեքին յառաջ բերած շարժումը դարձեալ մէկ է։ Սակայն երբ երեքը իբրև Հայկական կազմակերպութեան մը օրկանը խօսին, անոնց ազդեցութիւնը ոչ երեքի հաւասար, այլ աւելի կ'ըլլայ։ Անոնց ձայնին մէջ ներկայացած կ'ըլլայ ազգին ստուար մէկ մասին ամբողջ հեղինակութիւնը։

Անցեալ տարի Նիւ Եօրքցի բնագէտ մը անասնոց եւ մարդոց ուժերուն վրայ փորձեր կատարեց գործիներու միջոցաւ։ Հարիւր մարդիկ պարանէ մը քաշելով արտայայտեցին ուժ մը 6,700 փաունտի հաւասար։ Ասիկա շատ գոհ չըրաւ գիտունը։ Այսպիսի գործողութեանց փորձառու անձ մը փորձին գլուխն անցաւ, նոյն հարիւր մարդիկը կարգի դրաւ և իր հրամանին համեմատ տուաւ անոնց փորձը կատարել և արդիւնքն եղաւ 12,000 փաունտի ոյժ մը։ Գործելակերպի բարւոքումը անմիջապէս կրկնապատկեց բազուկներուն արդիւնքը։ Հայ ազգն ալ, թէև տակաւին իր ընդունակութիւններուն շատ չնչին մէկ մասը գործօն ուժի փոխած է կրթութեամբ, ունի սակայն զօրութիւն ոչ փոքր, եթէ միայն գիտնայ կազմակերպեալ միջոցներու դրութեամբ մը կիրարկել զայն։

Ամերիկայի Հայոց մէջ կատարուած պզտիկ փորձ մը կրնայ հոս յիշուիլ իբրև բացատրու-

թիւն։ Այս երկրին հայ գաղթականութեան ընդհանուր Հովիւը, Սարաճեան Սրբազան, քանի մը տարի առաջ Նիւ Եորքի մէջ կազմաւորեց Գաղթային "Խորհուրդ" մը՝ իրեն աջակից և խորհրդական ըլլալու յարաբերական և ուրիշ կարեւոր խնդիրներու մէջ։ Յետոյ ընդհանուր պատգամաւորական ժողովի մը մէջ "Ամերիկայի Հայոց Գաղթային Խորհուրդ"ը ընտրուեցաւ, որ եղաւ ընդհանուր Հովիւին նախաձեռնութեամբ կազմըուածին աւելի յառաջացած մէկ ձեւը, եւ կը նկատուի մինչեւ այսօր ամերիկաբնակ բոլոր Հայոց պաշտօնական օռկանը։ Առաջ տասը հայ գաղութներու կողմէն տասը տեսակ դիմում կ'ըլլար այս կամ այն ազգային խնդրոյ մասին առ Ուաշինկթընի Կառավարութիւնը, եւ տասը դիմումները մէկի ազդեցութիւնն անգամ չէին գործեր, այլ մանաւանդ ձանձրոյթ կը պատճառէին եւ տղայական երեւոյթ մը կուտային ծանրակշիռ իրերու։ Հիմա այլեւս վերջացած է բազմաթիւ դիմումներու անպատեհ դրութիւնը։ Ամեն կողմէ Հայերն իրենց թելադրութիւնները կը հաղորդեն "Խորհուրդ"ին, ասոր թողլով զկարեւորն տնօրինել։

Արտասահմանի Հայութիւնը 1896էն ի վեր զգալապէս ստուարացած է բիւրաւոր գաղթականներու յաւելումովը։ Եգիպտոսի, Եւրոպայի եւ Ամերիկայի մէջ ունինք իմացական եւ դրամական ուժի տէր շատ մը անհատներ։ Անոնց մէջ կան մի քանիներ որք ամբողջ ազգին ամենէն բարձր մտաւորական դասակարգին կը պատկանին։ Շատ մը ուղեղներ կը խորհին, եւ աւելի շատ բազուկներ կը յոգնին, սակայն արդիւ-

նարեր ոյժ մը յառաջ չի գար՝ ի չգոյէ հարկաւոր կազմակերպութեան։

Երբ Լորտ Քէլվին, 1893ին, ոչ արուեստագէտի այլ բնագէտի աչքով՝ հիացած կը դիտէր Նիակարայի ջրվէժը, ցաւ զգաց որ այնքան սոսկավիթխար ոյժ մը կը վատնուէր, եւ յոյս յայտնեց թէ թերեւս իր օրով իսկ մարդիկ պիտի գիտնային — ինչպէս արդարեւ գիտցան — այդ զօրութիւնն յօգուտ կիրարկել։ Այդ ջրվէժին ուժը հաւասար է իբր ութը միլիոն ձիու զօրութեան։ Ամբողջ Միացեալ Նահանգաց բոլոր գործարաններուն մէջ այդքան ոյժ չէր գործածուեր 1890ին։ Հաշիւ կ՚ըլլայ թէ ժամը 45,000 տոլարի արժողութեամբ ոյժ մըն է որ պարապը կը հոսի ի Նիակարա։

Ճիշդ այդպէս կը վատնուի, պարապը կը հոսի այսօր հայ ազգին ալ ուժը, զոր գոնէ արտասահմանի Հայութեան մէջ պէտք է մեքենաւորել ազգին ի սպաս կիրարկելու համար։

Ի՞նչ կերպով կարելի է գործադրել այս կենսական գաղափարը։ Խնդիրը այնքան կնճռոտ չէ։ Մեր արտասահմանի ուժերը պէտք է լծենք կեդրոնական օղակի մը, "Խորհուրդ"ի մը, "Ցանձնախումբ"ի մը, "Վարչութեան" մը, արտասահմանեան Հայկական Պատրիարքարանի մը, ինչպէս եւ ուզէք կոչել զայն։

Այս կերպով միայն կարելի է վերջ տալ մեր ազգային աշխատութեանց ներկայ մեթոտազուրկ, ապարդիւն կերպին։ Հիմա մենք միշտ անպատրաստ կը գտնուինք ամենէն կարեւոր եւ ստիպողական պարագաներու մէջ անգամ։ Երբ կեդրոնը ունենանք, ալ պիտի չստիպուինք հապճեպով

բաներ մը ընել ու միշտ գէշ ընել։ Կեդրոնը միշտ կանգուն, հանապազ արթուն, իր մատը Եւրոպայի բազկերակին վրայ դրած, յար պատրաստ պիտի ըլլայ պատեհագոյն վայրկեանին առնելու կարեւոր քայլերը ի պաշտպանութիւն հայ դատին։

Մեծ վարիչը կամ հանճարը երկինքէն չիյնար այլ ժողովրդի ծոցէն կ'ելլէ, եւ կ'ելլէ միայն փորձառութեան շնորհիւ։ Ո՞վ կրնայ ըսել թէ Անգլիոյ եւ Ֆրանսայի մեր հայրենակիցներուն մէջ չկայ մէկէ աւելի հայ Քաւուր որ իր լիուլի փթթումին եւ իր բոլոր ուժին արտայայտութեանը համար պատեհութեան կը սպասէ։ Պատեհութիւնը մե՛նք պիտի հայթայթենք՝ լծելով այնպիսիները ազգային գործին։ Կազմակերպեա՛լ գործունէութեան մէջ, եւ ոչ թէ առանձին առանձին աշխատելով է որ մեր մեծ գործողները պիտի կազմուին ու երեւան ելլեն։

Սակայն դիցուք թէ մեծ հանճար մը երեւան չելլէ, ատիկա պատճառ մը չէ յոռետես ըլլալու։ Անհրաժեշտ պէտք չկայ հսկայական, արտակարգ մտքերու մեր գործին յաջող վարչութեան համար։ Լաւ սերտուած մեթոտը եւ փորձառութիւնը հանճարի գործ կը կատարեն։ Կար ժամանակ մը երբ գիտուն ըլլալու եւ գիւտ մը ընելու համար մարդը անսովոր մտային կարողութեանց տէր պէտք է ըլլար․ հիմա ամէն մարդ որ միջակ իմացականութեան տէր է՝ կրնայ գիտուն ըլլալ եւ իր ընտրած մասնագիտութեան ոլորտին մէջ նոր բաներ գտնել շնորհիւ մեթոտին որուն կը տիրանայ համալսարանին մէջ։ Աղեքսանդր, Կեսար, Նաբոլէոն զինուորական հան-

ճարներ էին եւ շատ հիանալի բաներ ըրին իրենց անհատական վիթխարի իմացական ուժովը, սակայն մեր օրերը Մոլթքէներ, Օյամաներ, Քուրօքիններ ալ հիանալի բաներ կ'ընեն առանց Նաբոլէոնեան հանճարի, զի պատերազմի գիտական մեթոտները կ'ուսանին մեծ խնամով։ Մեծ չափով մը ճշմարիտ է նոյնը նաեւ դիւանագիտական ասպարէզին համար։ Մեր փորձառու եւ Եւրոպական մշակութեան տէր քանի մը ազգայիններն երբ Կեդրոնին մէջ միանան, վստահ եմ որ իրենց կարողութիւնը հանճարի ոյժ պիտի ունենայ։

Թիւրիմացութեանց եւ աւելորդ առարկութիւններու տեղի չտալու համար հարկ է անմիջապէս ըսել թէ ասիկա յեղափոխական կուսակցութիւնները միացնելու խնդիր չէ, եւ ոչ Եւրոպայի մէջ մեր ազգային դատին համար աշխատող ծանօթ քանի մը հայրենակիցները համախմբելու առաջարկ։ Կեդրոնական Յանձնախումբը պիտի կրնայ բաղկանալ երեք կամ հինգ հոգիներէ որոց ոչ մին պիտի ըլլայ ծանօթ յեղափոխական պետերու շարքէն։ Անիկա պիտի ըլլայ օռկանը արտասահմանի Հայոց ստուար մեծամասնութեանը որ նախորդ երկու Գլուխներուն մէջ բացատրուած սկզբանց եւ ուղղութեան համեմատ գործունէութիւն մը կազմակերպել կ'ուզէ։

Ի՞նչ պիտի ըլլայ Կեդրոնական Յանձնախումբին գործը։ Անոր գործը պիտի ըլլայ ընել այն ամենը զոր արտասահմանի Հայութիւնը կարող է և պարտաւոր է ընել հայկական դատին յաջողութեանն համար և յօգուտ Հայ ժողովուրդին վերածնութեանը։

Կեդրոնական Յանձնախումբը ազգային մտածութեան օրկանը պիտի ըլլայ։ Անիկա ուղեղի պաշտօն պիտի վարէ Հայուն համար։ Անոր անդամները եւրոպական մշակութիւն առած եւ հայկական ինչպէս եւ միջազգային պայմաններու մօտէն ծանօթ անձնաւորութիւններ ըլլալով՝ պիտի կրնան իրենց լուրջ եւ բեղմնաւոր ուսումնասիրութեան նիւթ ընել ազգային խնդիրը իր բոլոր ճիւղերովը։ Շրջավայրը ամենանպաստաւորն է, զի Լոնտոնի և Փարիզի պէս կեդրոններու մէջ անոնք պատեհութիւն պիտի ունենան փափկօրէն զգալու միջազգային հոսանքները։ Անոնց մէջ կը համբարուի տպաւորութեանց եւ ծանօթութիւններու առատ պաշար մը եւ այսպէս կը պատրաստուին վարպետի ուղիղ ու արագ դատողութեամբ խօսիլ ամենէն լաւ խօսքը ամենէն պատեհ վայրկենին եւ ցոյց տալ մեզի ալ մեր լաւագոյն ուղղութեան գիծը։

Կեդրոնական Յանձնախումբին գործը միջազգային կացութեան հորիզոնը դիտել եւ մերձեցող պատահականութիւններն գուշակել չպիտի ըլլայ միայն, այլ և ներքին ուժերը ամբարել եւ անոնց օգտակար ուղղութիւն տալ։ Օրինակ մը կրնայ բացատրել ասիկա։ Մեր տկարութեան պատճառներէն մէկը ազգային պատրաստ գանձի չգոյութիւնն է։ Մինչեւ անգամ երբ մեծ Տէրութեանց դիմում ընող պատգամաւորութիւն մը ճամբայ կ'ելլէ, կը ստիպուի, ինչպէս եղաւ անցեալ տարի, այդ արտակարգ եւ բաւական կարեւոր ծախքերուն համար դրամ գտնել աստի անտի։ Գարոն Ֆէռռառի անցեալ տարի Գուլկարիոյ "Հայաթերթ"ին մէջ շատ լուրջ ուսումնասիրութիւն

մը հրատարակեց հայկական պանքա մը հիմնարկելու եւ ազգային դրամագլուխ մը ստեղծելու վրայ։ Այդ առաջարկը հովի մը պէս մեր վրայէն անցաւ գնաց, քանզի անհատ Հայեր իրենք զիրենք անկարող կը գտնեն այդպիսի հսկայ ձեռնարկի մը նախաձեռնութիւնն ստանձնել։ Սակայն երբ ունենանք Կեդրոնական Յանձնախումբը, ունեցած պիտի ըլլանք այն վստահելի եւ կարող մարմինը որ ազգային գանձի խնդիրը ձեռնհասօրէն ուսումնասիրէ եւ ի գործ դնէ։

Ուրիշ օրինակ մը։ ''Անահիտ'' և ''Բազմավէպ'' ամսաթերթերը անցեալ տարի ցոյց տուին թէ Փարիզի մէջ պէտք է հիմնարկել ''Հայկարան'' մը, ուր պատեհութիւն ունենան եւրոպական համալսարաններին յաճախող հայ բազմաթիւ երիտասարդներն ամառները կանոնաւոր դասընթացքներու հետեւիլ հայ լեզուի ու գրականութեան վըրայ։ Գաղափարը գերազանցապէս հայրենասիրական է։ Հայկարանը միջոց մը պիտի ըլլայ մեր համալսարանականներն դէպի ազգային ծառայութեան ասպարէզը մղելու և անոնց ուժերը, գէթ մասամբ, հայկական դաշտին բեղմնաւորութեանը կիրարկելու։ Սակայն եւ այս առաջարկը, որուն ահագին կարեւորութիւնը մեր վերածնութեան գործին համար ակներեւ է, անոյշ գեփիւռի մը պէս անցաւ մեր մէջէն, եւ ոչ իսկ ''Բազմավէպ'' ու ''Անահիտ'' այդ գաղափարը դէպի գործնական շրջանը յառաջ տանելու համար կանոնաւոր պայքար մը մղելու վրայ են։ Եւ ո՞վ է որ սանկ խնդիր մը ձեռք պիտի կրնայ առնել — Յանձնաժողով մը կազմել, ծրագիր մը ուրուագծել, եւ հարուստներուն դիմում ընել։ Կեդ-

րոնական Յանձնախո՛ւմբը պիտի կրնայ ընել ատիկա։ Դիտել պէտք է թէ արտասահմանի Հայութեան մէջ պէտք եղած դրամը կայ, զգայուն եւ հայրենասէր հարուստներ ունինք, կարող դասախօսներ չեն պակսիր, եւ թէ՛ "Հայկարանը" թէ՛ "Պանքան" կարելի / րերու սահմանին մէջ են։ Սակայն հիմա հայ իմացական եւ անտեսական զօրութեանց Նիւակարան պարապը կը վիժի՝ ի չգոյէ հարկաւոր մեքենաւորումին։

Որովհետեւ մեր Կեդրոնին նշանաբանը պիտի ըլլայ "Արդարութիւն և Խաղաղութիւն" եւ չափաւոր կերպով պիտի բանաձեւէ հայկական պահանջները, անիկա պիտի կրնայ թերեւս ամենայն Հայոց Ս. Հայրապետին եւ Օսմանեան Հայոց Ս. Պատրիարքին ալ ծառայութիւններ ընել իբրեւ կազմ ու կարող գործիք մը։ Անիկա պիտի կրնայ ազգային պետերուն անունով ալ դիւանագիտական դիմումներ ընել երբ որ անոնք յարմար սեպեն, կամ թէ միայն աջակցիլ եւ խորհրդականի դեր կատարել եթէ ուրիշ պատգամաւորներ ընտրըուած ըլլան։ Օրինակի համար, Վեհ. Հայրիկի կողմէն անցեալ տարի նշանակուած պատգամաւորութիւնը հապճեպով կազմուած և օգնականի դժբաղդ ընտրութիւն մ'էր ըրած։ Նաև պատգամաւորութիւնը իմացաւ Եւրոպիոյ մէջ հայ եւ օտարազգի խորհրդատուներէ թէ վայրկեանը անպատեհ էր մեծ Տէրութեանց այնպիսի դիմում մը ընելու համար, եւ իրօք ալ անիկա, իր պաշտօնին փոքրագոյն մէկ մասը կատարած ըլլալէ յետոյ, ցրուեցաւ։ Արդ, եթէ Հայոց Կեդրոնական Յանձնախումբ մը գոյութիւն ունեցած ըլլար յԵւրոպա, բնականօրէն այս կարգ մը սխալներուն

ոչ մէկը տեղի կ'ունենար եւ պատգամաւորութեան յղումը վերապահուած կ'ըլլար պատեհագոյն վայրկեանի մը։

Ի՞նչ արգելքներ կան այս կենսական կազմակերպութեան իրականացմանը։ Ինչպէս արդէն դիտել տուի, Կեդրոնական Վարչութիւնը կազմելու համար հարկաւոր եղած ատաղձը կայ։ Մեր լաւագոյն մարդիկը հիմա Անգլիոյ և Ֆրանսայի մէջ են եւ թուով աւելի են այնպիսիք քան շատերս կ'ենթադրենք։ Եւրոպական այցելութենէ մը վերջերս վերադարձած հայ անձնաւորութիւն մը, իմ հետաքրքիր հարցումներուս ի պատասխան, կը յիշէր երկու հայրենակիցներ որոնց անունները հրապարակի վրայ չենք լսեր, եւ սակայն ազգային գործունէութեան ոլորտներու մէջ փորձառու եւ բանիբուն անհատներ են՝ շատ յարմար առաջարկուած Կեդրոնին անդամ ըլլալու։ Անոնցմէ մին, Տիար Մ., Պատրիարքարանի մէջ պաշտօն վարած, թէ ազգային թէ դիւանագիտական գործոց ընթացքին ներկուռ, մշակեալ եւ ծանրագլուխ անձնաւորութիւն մ'ըլլալ կը վկայուի։ Աւելորդ կը համարիմ յիշել հոս ուրիշ հանրածանօթ դէմքեր՝ նոյնպէս յարմար այդ պաշտօնին։

Դժուարութիւնը կը ծագի անտի՛ որ մենք արեւելեան երազուն ժողովուրդ մ'ենք և ոչ գործնական՝ հանրային ճիգերու մէջ։ Մեր մէջ ամէն հայրենասէր գործիչ քննադատուած, եւ արհամարհուած ալ է ոմանց կողմէն՝ ամեն աղէկ յատկութիւն չունենալուն համար։ Ասիկա անբանաւոր բծախնդրութիւն է։ Պէտք է անձերը յարգենք այն բարեմասնութիւններուն համար զոր ունին և

ոչ թէ պարսաւենք այն յատկութիւններուն համար որոնցմէ զուրկ են։ Ծանր պատասխանատուութիւն յանձն առնող մարմինի մը անդամները պէտք է որ տարբեր բարեմասնութիւններ ունենան աշխատանքի օգտակար եւ բեղմնաւոր բաժանում մը ընել կարենալու համար։ Մէկը փափկանըկատ եւ ծանրագլուխ եւ դիւանագէտ ըլլալով աւելի քան միւսները՝ կազմակերպութեան ատենապետ կ'ընտրուի. ուրիշ մը, գրելու մէջ վարպետ մը, մանաւանդ Ֆռանսերէն լեզուով, քարտուղարի պաշտօն կը վարէ. երրորդ մը՝ հաշիւներու գլուխ ունեցող՝ կը ստանձնէ գանձապետի գործը։

Կը տեսնեմ գլուխներու սկեպտիկ շարժումներ։ ''Շա՛տ լաւ, շա՛տ լաւ, բայց չը՛լլար. 15-20 տարիէ ի վեր ատոր վրայ կը խօսուի, փորձեր ալ եղած են ու չե՛ն յաջողած։''

Սկեպտիկներուն կը պատասխանեմ. — Նկատեցէք թէ այս առաջարկը տարբեր է հին միութենական առաջարկներէն։ Նկատեցէք նաեւ թէ արտասահմանի Հայութիւնը հիմա շատ աւելի հզօր է թուով եւ իմացականութեամբ քան էր 10 տարի առաջ։ Ազգային վտանգը այժմ աւելի ըսպառնալից է, գործը աւելի կանոնաւոր և իմաստուն ղեկավարութիւն կը պահանջէ եւ մերազնեայց մէջ աւելի ընդհանուր կերպով զգալի ըլլալու է հիմա կազմակերպեալ ճիգի հարկաւորութիւնը։ Ասիկա շատոնց ըրած ըլլալու էինք։ Հայկական խնդիրը իր բոլոր ներքին ու արտաքին դժուարութիւններով հարկադրուեցաւ մեզի երբ մեր ազգը դեռ հասուն չէր այդ ահագին պայքարին համար. հիմա աւելի հասուն է։ Արեան

գներ արժած են մեզի վերջին 25 տարուան փորձառութիւնները, և յաւիտենական ամօթ կ'ըլլայ մեր ցեղին եթէ իր շատ սուղ փորձառութեամբ ստացած քիչ մը հասունութիւնը չփութայ արդիւնաբեր ուժի մը վերածել:

Ասիկա հարկ է ընել: Բոլոր ուժովս կը պոռամ այս պատգամը բոլոր իմ հայրենակիցներուս — կրնա՛նք ընել ասիկա, եւ ընե՛նք պիտի: Կեդրոնական օճախ մը մենք մեզի ստեղծելու ենք ոչ միայն անոր համար որ անիկա ազգային ճիգին յաջողութեանը համար անհրաժեշտ բաներէն մէկն է, այլ եւ անո՛ր համար որ մենք այս կերպով մշակել պարտինք մեր ստեղծագործելու եւ կազմակերպելու կարողութիւնը: Այս կարողութեան պակասն է որ մեր ազգային տկարութիւնը կը բնորոշէ: Եթէ կ'ուզենք մեր նպատակին հասնիլ, հարկ է որ այդ կարողութիւնը զօրացնենք, եւ Կեդրոնական Մարմինի մը կազմակերպումը այդ տեսակէտով ալ ահագին, կենսական կարեւորութիւն ունի: Ասիկա աւելի յստակ պիտի տեսնենք յաջորդ գլխուն մէջ՝ երբ առիթ պիտի ունենանք մեր ազգային նկարագիրը քննելու:

# ԳԼՈՒԽ ԺԱ՛

## ԱԶԳԱՅԻՆ ՆԿԱՐԱԳԻՐԸ ԵՒ ՀԱՄԵՐԱՇԽՈՒԹԻՒՆ ՀԱՅՈՑ

Մեր ժողովուրդը մօտէն ճանչցող Եւրոպացիներ ու Ամերիկացիներ միաբան են վկայելու թէ Հայոց իմացական կարողութիւններն ամենաբարձր կարգին կը վերաբերին։ Օտար համալսարանաց մէջ ուսում առնող մեր երիտասարդներն ալ ընդհանրապէս այս տպաւորութիւնը թողած են իրենց վարպետներուն վրայ։ Ամերիկայի հանրային վարժարաններուն մէջ ալ հիմա հայ մանուկներն առաջնակարգ ուշիմութեան անուն կը հանեն։ Քլարք Համալսարանի վարպետներէն մէկը Ուսթր քաղաքին հանրային դպրոցներուն աշակերտացը վրայ քննութիւններ կատարելով հասաւ այն եզրակացութեան թէ հայ մանուկնե՛րն էին, ի մէջ այնքան զանազան ցեղերէ աշակերտաց, ամենէն լաւերը։

Հայերէն լեզուն որ հին լեզուաց ամենէն կատարեալին, Յունարէնի հետ կրնայ չափուիլ, եւ նոր լեզուաց ամենէն կատարեալին, Ֆրանսերէնի հետ մրցիլ կը խոստանայ, փառաւոր վկայ է թէ հայ իմացականութիւնը նախապատմական դարուց մէջ արդէն ստացած էր իր գերազանցութեան դրոշմը։ Եթէ մեր Ե. դարու ոսկեղինիկ

գրականութիւնը չկրցաւ մինչեւ Յոյն եւ Լատին գրականութեանց բարձրութեանը հասնիլ, պատճառն այն է որ քաղաքական պայմաններուն դըժբաղդ յեղաշրջումը խանգարեց անոր փառաւոր հոլովոյթը՝ իր բարձրագոյն փուլին հասնելէ առաջ։

Սակայն ի՞նչպէս բացատրելու ենք այն իրողութիւնը թէ Հայը՝ շատ ուշիմ ժողովուրդ մը ըլլալով հանդերձ, ի հնումն չէ կրցած հասնիլ կեդրոնական զօրութեան մը դիրքին, ու շատ մը դարերէ ի վեր ինկած կը մնայ արգահատելի կացութեան մը մէջ։ Եւ ո՞չ ապաքէն այս մեր քննական տեսութեան ընթացքին մէջ շատ անգամ ստիպուեցանք մեր մտաւորականներէն ոմանց ազգային գործելակերպը որակել իբրեւ ապուշ, եւ նոյնպէս ցաւ ի սիրտ խոստովանիլ թէ հայկական գործունէութիւնը առ հասարակ առանց մեթոտի եղած է։

Այս կնճիռը լուծե՛նք։

Իմացականութիւնը յաջողութեան բաւական պայման չէ։ Պէտք է մտային կարողութիւններու ներդաշնակ եւ գործնական խառնուած մ'ունենալ մանաւանդ քաղաքական ասպարէզին վըրայ փառաւոր եւ տեւական ընթացք մ'ընելու համար։ Մեր ցեղը իր պատմութեան ամենէն փայլուն շրջաններուն մէջ իսկ քաղաքական կազմակերպութեան եւ գործողութեան հանճար ի հանդէս բերած չէ։ Միայն Տիգրան Մեծի օրով, հայկական վաղանցիկ կայսրութիւն մը գոյութիւն ունեցած է խիզախ աշխարհակալութեանց շնորհիւ։ Յիշենք սակայն թէ ազգերուն ամենէն մեծը, Յոյնը, նոյնպէս վրիպած է աշխարհակալի

ընթացքին մէջ, բացի շատ կարճ միջոցէ մը։ Արիստոտէլ ըսած է որ եթէ Յունաստան միանայ, կրնայ աշխարհս կառավարել։ Յունաց աշակերտող Հռովմն էր սակայն որ հանճարը ունեցաւ աշխարհը դարերով կառավարելու։

Հայ ազգը իմացական ցեղերուն դասէն է և ոչ կամեցողական։ Սրամտութիւնը չէ որ պակսած է մեզի, այլ կամքը, տոկունութիւնը։ Ահաւասիկ թէ ինչպէս Էմիլ Պոյլ ազգերը երկու դասի կը բաժնէ. «Կամքի զօրութեան և իմացականութեան հաւասարութիւնը,» կ'ըսէ Էմիլ Պոյլ, «հազիւ երբէք կ'իրականանայ։ Կշիռն մերթ ի մի կողմ եւ մերթ ի միւս թեր կը հակի։ ... Շատ որոշ կերպով կը տեսնենք տարբերութիւն մը որ թոյլ կուտայ մեզ զանազանել կամեցողական (volitional) և իմացական (intellectual) ազգերը։ Առաջին կարգին կը պատկանին Հռովմայեցիք և Անգլիացիք. երկրորդին մէջ կ'իյնան, զանազան աստիճանով, ժամանակակից Եւրոպայի երկիրներուն ամենամեծ մասը, եւ նոյն դասին կը վերաբերէին վերածնութեան Իտալացիներն և հին Յոյները։ ...» Կարող ենք հազիւ երեւակայել թէ ինչպէս անկամէտ շրջանի յունական նուրբ միտքին համար ալ գործելակերպ դժուար էր, եթէ ոչ անկարելի։ Ոչ թէ չէր կրնար իրեն դէմ ցցուող քաղաքական խնդիրներն ըմբռնել, այլ այնքան լաւ կ'ըմբռնէր զանոնք որ կարող էր անթիւ լուծումներ յղանալ անոնց համար։ Իր դըժուարութիւններէն ազատելու ճամբաներ շատ կը նշմարէր, սակայն զուրկ էր կամական ուժէն ու կայանքէն որ հարկաւոր էին այդ միջոցներէն ալ մէկը կանոնաւորապէս ի գործ դնելու համար։

... Անգլիոյ մէջ է որ կամքի զօրութիւնը կը պաշտուի։ Անգլիացին համոզուած է թէ աշխարհս կամքի ուժով, նկարագրի ուժով կը կառավարուի, եւ ուստի աշխարհի տիրապետութիւնը իրեն ապահովելու համար այդ յատկութիւնները զարգացնել կ'աշխատի։ Անդստին ի մատաղագոյն հասակէն՝ Անգլիացի տղեկը մեթոտաւոր կամամշակութեան (will-culture) կ'ենթարկուի։ Անոր շուտով կը սորվեցնեն իր յուզումներուն արտաքին նշանները կատարելապէս զսպել, զանիկա կը վարժեցնեն իր կամական զօրութեանը կիրառութեանը մէջ փնտռել իր ապագան. ... Երբ դպրոց կ'երթայ, տղան բնաւ չի յուսահատիր ի նշմարելն թէ դպրոցին նպատակն է իր հաստատակամութիւնը, դիմադրութեան ուժը և տոկունութիւնը զարգացնել շատ աւելի քան թէ իր իմացական ընդունակութիւնները։" (Success among Nations, Գլուխ Զ.)։

Ստիպուած եմ կամամշակութեան ահագին կարեւորութիւնը մեր ազգային դաստիարակութեան մէջ հարեւանցի մատնանիշ ընելով՝ անցնիլ քննութեանը այն փոխակերպիչ ազդեցութեանց զորս ներկայ ճգնաժամը սահմանուած է գործել մեր ազգային նկարագրին վրայ։

Մեր ազգային տկարութիւնը եթէ ուղենք մէկ բառով նշանակել, պիտի ըսենք "Նսականութիւն։" Ու ահա թէ ինչպէս այդ ախտը վարակած է Հայ հոգին։ Շատ դարերէ ի վեր Հայը իրմէ զօրաւոր ցեղերէ շրջապատուած ըլլալով՝ ստիպուած է իր իմացական ճարպիկութիւնը զարգացնել իբրեւ լրացուցիչ մը իր ինքնապաշտպանութեան միջոցներուն։ Շատ ակներեւ է ասիկա

Հայաստանի ժամանակակից պայմաններուն մէջ ալ։ Մեզի դրկից տիրող կամ աւազակ ցեղերը ապրելու դիւրութիւններ ունին, մինչ մենք, անզէն ու անզօր, ստիպուած ենք տնտեսական ժիր գործունէութեան շնորհիւ ապրիլ, իբրև երկրագործ, արհեստաւոր եւ վաճառական։ Այս կերպով ոչ միայն մենք կ'ապրինք այլ և մեր օտարացեղ մակաբոյծներուն ալ հիւթ կը հայթայթենք, եւ մակաբոյծները՝ բնութեան բոլոր կարգերուն մէջ՝ իրենց հիւթաբեր եղող էակներուն կը խնայեն ընդհանրապէս։ Բնական է որ մեր տնտեսական այս հարկաւոր ճիգը՝ մեր խելքը սուր եւ մեր ձեռքերը ճարտար պահէ։

Սակայն այս կացութիւնը իր շատ դժպհի կողմըն ալ ունի։ Զօրաւորները կրնան չափազանց շատ կողոպտել իրենց արդիւնաբերող դրացիները եւ էական պէտքերէ իսկ երբեմն զրկել զանոնք։ Լոկ ճարտարմտութիւնը չի բաւեր այս վըտանգին առջեւն առնել երկրի մը մէջ ուր կառավարութիւնը իր պաշտօնը չի կրնար ու չուզեր կատարել, եւ ուստի Հայերը ստիպուած են զանազան խորամանկութեանց, կեղծեաց, սուտի և երբեմն աւելի ստորին անարգութիւններու դիմանիլ իրենց գոյութիւնը պահպանելու համար։ Այս կերպով է որ Հայոց հնարիմացութիւնը կ'արատաւորի եւ նկարագիրը կը գձձի ու կը տկարանայ։ Օտարներէն ոմանք այս ընկերաբանական դժբաղդ պատճառներուն ուշադրութիւն նուիրած չըլլալով՝ չափազանց խստիւ դատած են հայ նըկարագիրը։ Պատմաբան Ճօրճ Րօլինսըն բաւական ուղիղ կը դատէ յասելն Հայոց մասին. "Սրամիտ (Subtle) եւ խորամանկ (wily) են, մեծ տաղանդ-

ունին վաճառականութեան համար, բայց կը թե-
րանան զօրութենէ, հաստատնութենէ (stamina)
եւ դիմացկունութենէ։” (The Story of Parthia),
էջ 121)։

Նկատել պէտք է թէ Հայը ստիպուած է իր սրամտութիւնը անհատական ինքնապահպանութեան համար կիրարկել շատ դարերէ ի վեր, վասըն զի զուրկ գտնուած է ազգային կազմակերպեալ զօրութեան կամ հաւաքական ինքնապաշտպանութեան առաւելութիւններէն։ Այս դժբաղդութիւնն է որ անոր հնարիմացութեանը կուտայ պզտիկութեան եւ եսականութեան արատը։ Սակայն նկատել պէտք է նաեւ այն մեծ ու կարեւոր իրողութիւնը զոր ճգնաժամը ցոյց տուաւ, այսինքն թէ Հայուն համար սկսած է կեանքի նոր շրջան մը յորում մակաբոյծները՝ վատթարացած՝ այլ եւս իրեն գոյութեանը չեն խնայեր, և, որ աւելին է, անհատական ինքնապաշտպանութիւնը այլ եւս անզօր է իր գոյութիւնը պահպանելու։

Հալածանքներու ինչպէս եւ Արիւնի Շրջանին մէջ կառավարութիւնը խտիր չդրաւ Հայու եւ Հայու միջեւ, այլ առ հասարակ հարուածեց զէնք առնողն եւ անզէնը; յեղափոխականն եւ ոչն, Լուսաւորչականն ու Բողոքականը, կարնեցին ու Ակնցին։ Ամենէն հասարակ Հայուն անգամ զգալի եղած է այժմ կամ պիտի ըլլայ թէ ինքը, ի՛նչ քաղաքական կամ ազգային դաւանանքի ալ որ հակած ըլլայ, ի՛նչ կրօնական յարանուանութեան ալ որ պատկանի, պետութեան ո՛ր գաւառին մէջ ալ որ ապրի, անխուսափելի մասնակցութիւն պիտի ունենայ ազգային յաջողութեանն ինչպէս ձախողութեան, փառացն ինչպէս տառապանաց։

ՃԳՆԱԺԱՄԸ ՀԱՅԵՐՈՒՆ ԿՈՒՏԱՑ ԻՐԵՆՑ ԱԶԳԱՅԻՆ ԳՈՅՈՒԹԵԱՆԸ ԳԻՏԱԿՑՈՒԹԻՒՆԸ։ Փրկաւէտ ուշիմութիւնը սա պիտի ըլլայ ամէն հայ անհատի համար թէ ինքը, իբրեւ մէկ անխզելի անդամը Ազգային Մարմնոյն, պարտաւոր է եւ ստիպուած է անոր իմացական, բարոյական և տնտեսական զարգացմանը հոգածու ըլլալ, քանզի Ազգին վնասն եւ օգուտը իւրն ալ է, ինչպէս իւրն՝ Ազգին։ Այս խորունկ եւ զգացուած համոզումէն կը ծնի ԱԶԳԱՅԻՆ ՀԱՄԵՐԱՇԽՈՒԹԵԱՆ ՈԳԻՆ։ Ու այս հոգեկան հոլովոյթն է ճշմարիտ, ՆԵՐՔԻՆ ՅԵՂԱՓՈԽՈՒԹԻՒՆԸ, ազգային ինքնապաշտպանութեան և համախումբ ու յաջող գործունէութեանց ամուր խարիսխը։ Ա՛յս կերպով հայկական բնաւորութիւնը պիտի ստանայ հաստատնութիւն, զօրութիւն և դիմացկունութիւն։

Ճշմարիտ հայրենասէրին պարտաւորութիւնն է ամենայն իմաստութեամբ խնամել Հայուն այս հոգեկան հոլովոյթը կամ ներքին յեղափոխութիւնը։ Աճապարանքը մահացու սխալ է։ Երբ վառեակը ներձուական գաղտնի սննդառութեան շնորհիւ հարկաւոր եղած զարգացումն ստացած ըլլայ, ինքը կը կոտրէ փեճեկը եւ դուրս կ՚ելլէ, ու կարող է ինքն իրեն հոգ տանիլ. սակայն եթէ դուն, վառեակին ծնունդը շուտ մը ողջունելու փափաքով դրսէն տաս հարուածը, կը կոտրես ձուն, սպանութիւն մը գործած կ՚ըլլաս։

Պա՛րզ խօսինք։ Հայերուն ԲՌՆԻ զէնք ծախելով եւ զանոնք անհաւասար ու անկարելի պայքարի մը մէջ իբրեւ ի ծուղակ նետելով չէ որ պիտի զարգացնենք անոնց մէջ հաւաքական ինքնապաշտպանութեան ոգին։ Ընդհակառակն, այդ-

պիսի անբնական ու անբանաւոր արարքները ջախջախուած ժողովուրդը աւելի նեղելու, իրենց վիճակէն ու մեծերէն զզուեցնելու, և վերջապէս գաղթումը իբրեւ փրկութեան միակ հնարք իրենց հարկադրելու կը ծառայեն։ Գաղթո՛ւմը, ա՛հ, այդ կորուսիչ դարմանը, որ Հայուն ոտքին տակէն հողը, իր ազգային գոյութեան խարիսխը կ'առնէ...։ Զարհուրանքո՛վ արտասանեցէք "գաղթում" բառը։

Մեր պարտաւորութիւնն է ուրեմն բարոյական, հոգեկան հոլովոյթը յուշիկ յառաջ տանիլ Հայրենիքին մէջ ուր զինեալ եւ հաւաքական ինքնապաշտպանութիւն մը կազմակերպել, ինչպէս արդէն ցոյց տուինք, ներկայ պարագաներուն մէջ անկարելի է։ Եւ այս անկարելիութիւնն է որ այնքան անհրաժեշտ կ'ընէ արտասահմանի հայ ուժերը կազմակերպելու գործը։ Դիւանագիտութիւնն ալ զինեալ ուժի տեղը բռնելու պաշտօն ունի։ Նոյն իսկ հզօր ու սպառազէն ազգերը դիւանագիտութեամբ իրենց շահերն ու իրաւունքներ պաշտպանել կը նկրտին։ Մեզի համար այդ միջոցը այնքան աւելի անհրաժեշտ է որքան մեր դատն արդար է ու միանգամայն զուրկ զինեալ պաշտպանութենէ։ Արտասահմանի մէջ կրնանք մեր ճիգերը կազմակերպել անկաշկանդ, յօրինելով կեդրոնական օռկան մը Եւրոպա, որ պաշտօնական վեհութեան հմայքն ունենայ օտարաց առջեւ եւ մեր վատնուող տնտեսական և իմացական զօրութիւններն հաւաքական և արդիւնաշատ կիրարկութեան բերէ։ Այսպիսի Մարմին մը անշուշտ իր խանդավառող ջերմութիւնը պիտի ցոլացնէ նաեւ Մայր Հայրենիքի զանգուածին վրայ։

*Պէտք չէ որ գոհ ըլլանք, սակայն, ազգային ինքնապաշտպանութեան միջոցներ կազմակերպելով. երբեք ազգ մը լոկ ինքնապաշտպան ըլլալով չի կրնար մեծ զօրութեան տիրանալ կամ փառաց հասնիլ։ Մեր ազգային նպատակին մէջ պարտինք կարեւոր տեղ տալ աշխարհակալութեան։ Նիւթական աշխարհակալութիւն ըսել չեմ ուզեր։ Այդ կարգի աշխարհակալութեանց շրջանը ամենէն հզօր զինուորական Տէրութեանց համար իսկ փակուելու վրայ է։ Այն ազգերը որ տիրապետած են ուրիշ ազգերու՝ մեծ կոչուած են. սակայն մեծագոյն պիտի ըլլան անոնք որ ուրիշ ազգերու զարգացումին ու մեծութեանը պիտի սատարեն այսուհետեւ։ Հայ ցեղը, բարոյական աշխարհակալութեան մեծ ասպարէզ մը ունի առջեւը, իր փորձառութիւնը, ճկուն ու սուր միտքը, ճաշակը, սքանչելի լեզուն, ձեռաց ճարտարութիւնը կարող կ՚ընեն զինքը մրցումի համաշխարհային ասպարէզն համարձակ իջնել։ Իր նըպատակը պիտի ըլլայ իրեն դրացի Թուրք, Քուրդ, Թաթար, Պարսիկ ժողովուրդներուն մէջ ինքզինքը քաղաքակրթութեան խմորն ընել։ Ճշմարիտ գաղափարներու, բարձր իտէալներու, լեզուի ու գըրականութեան ամենագեղեցիկ արտադրոյթներու աշխարհակալութիւնն է որ հետզհետէ աւելի խանդավառելու է զմեզ։ Այս աշխարհակալութիւնը Արեւելքէն դէպ Արեւմուտք ալ պիտի կըրնայ յետոյ ծաւալիլ։ Ուրեմն ԱՄԷՆ ՀԱՅ ԱՆՀԱՏ ՊԷՏՔ Է ԱՐԱԳՕՐԷՆ ՋԻՆՈՒԻ ԱՅՍ ԱՇԽԱՐՀԱԿԱԼՈՒԹԵԱՆ ՀԱՄԱՐ։ Ահա ասոր վրայ կը մնայ ինծի խօսիլ։*

## ԳԼՈՒԽ ԺԲ.

# ՎԵՆՍԱԿԱՆ ՃԻԳԸ

Գերման հանճար մը, Հումպոլթ, ժթ դարուն սկիզբները խրատ մը տուաւ Բրուսիոյ վեհապետին — ի՛նչ որ կ'ուզես, ըսաւ, որ ասկէ յիսուն տարի վերջը բուսնի ազգին մէջ, պէտք է զայն այսօրուընէ սերմանես դպրոցներուդ մէջ։ Իրօք, եթէ գետի մը ընթացքը փոխել ուզենք, երթալու ենք անոր աղ՛բիւրին։ Նորաբոյս սերունդին դաստիարակութեանը միջոցա՛վ միայն կարելի է ազգի մը ընթացքը փոխել, եւ պէտք է որ գոնէ երկու սերունդներ յաջորդաբար սաստիկ եւ մեթոտաւոր կրթութեան բովէն անցնին։ Ազգի մը բազմադարեան կեանքին մէջ յիսուն տարին խիստ կարճ միջոց մ'է, եւ եթէ հանրային կրթութեան շնորհիւ ազգի մը բարոյական կեանքը արմատապէս նորոգուի կէս դարու մէջ, իրաւամբ կրնայ անիկա հրաշազան երեւոյթ մը նկատուիլ։

Ասիկա է մեծ ճշմարտութիւնը զոր մեր պարբերական մամուլը ամէն օր պէտք է քարոզէ հայ հանրութեան թէ տիեզերքի յառաջդիմութեան ընթացքը ո՛չ յեղափոխութեան (revolution) այլ հոլովոյթի (evolution) մեթոտով կը կատարուի։ Բնութիւնը ոստիւն չգիտէ։ Ինչ որ

ըստ երեւոյթին յանկարծական կը թուի մեզի, իրօք յամր ու աստիճանական գործողութեանց արդիւնք է: Օրինակ իմն, ծննդաբերական երկունքը քանի մը ժամու խնդիր է, բայց երախան ինը երկար ամիսներու ընթացքին՝ աննշմարելի կէտի մեծութենէն մինչեւ աղուոր մանկիկի մը համեմատութիւններուն ու հիանալի կազմուածութեան հասած է հոլովութական յամր մեթոտով: Ազգային վերականգնումի ճիգն ալ ժէսթ մը, հարուած մը, մոգական շարժում մը չէ բնաւ, այլ տոկուն եւ մեթոտաւոր աշխատութիւն մը որ սերունդէ սերունդ պէտք է շարունակուի անդուլ:

Ազգի մը զօրութիւնը քանակական եւ որակական չափեր ունի: Ֆրանսացիք շատ անհանգիստ են իրենց թուական աճումին դրեթէ դադարած ըլլալուն համար, նայելով որ իրենց մըրցակիցներն, Գերմանք և Անգլիացիք կը շարունակեն բազմանալ: Հայերս ալ մեր թուական կշռին պարտաւոր ենք կարեւորութիւն տալ: Անօգուտ արիւնահեղութիւններն մեզի պէս քիչուոր ժողովուրդի մը համար ահագին վնաս կը նշանակեն: Համաճարակներու, ժողովրդային ապառողջ սովորութեանց և մոլութիւններու դէմ կանոնաւոր պայքար մղել պէտք է՝ ոչ միայն դպրոցներուն մէջ այլ եւ չափահասներու ուղղըուած հրատարակութիւններով: Նպաստաւոր պայմաններու մէջ՝ ժողովրդի մը թիւը կրնայ 25 տարուան մէջ կրկնապատկուիլ, պայմաններ որ հազիւ երբեք լիովին կ'իրականանան: Սակայն եթէ 3 միլիոնը 6 միլիոնի բարձրացնել դժուար է քառորդ դարու մէջ, հնարը կայ զանիկա այդքան

քիչ ժամանակէն 30 կամ 60 միլիոնի հասցնել՝ որակական տեսակէտով։ Հայկական գեղեցիկ առակը ճշմարտիւ կ՚ըսէ —

Մարդ կայ որ հազար կ՚արժէ,
Հազար կայ որ մէկ մը չարժեր։

Վիթխարի թիւերն չեն պատմութեան ընթացքին ազդողներն այնքան որքան բարձր ու հզօր յատկութիւններն փոքրամասնութեանց։ Վիճակագրօրէն Ռուսիա եռապատիկ հզօրագոյն էր քան Ճափոն, սակայն փորձը ցոյց տուաւ թէ որակն ու կազմակերպութիւնը աւելի մեծ դեր կը կատարեն քան զանգուածային մեծութիւնը։ Միքատօն 1869 ին հրամայեց, որ Ճափոնի մէջ անդաստիարակ տղայ մը չմնայ։ Քիչ ատենէն հանրային կրթութիւնը անանկ համասփիւռ ծաւալ մը առաւ որ առջի իւրաքանչիւր 100ի փոխան 3,000,000 աշակերտ կը հաշուէին դպրոցներուն մէջ։ Երեսուն տարուան մէջ Ճափոնցին, որ մարդկային ամենէն բարձր ցեղին չի վերաբերիր, գերազանցեց ոչ միայն իր ասիական դրացիներն այլ եւ Եւրոպականներէն շատերն։ Մեթոտաւոր ու խնամեալ դաստիարակութիւնը ի՛նչ հրաշագործ ոյժ ունի։ Ճափոնի փորձառութիւնը այս մասին ամենէն ապացուցականն է։ Անդրին Զարը եւ իր խորհրդակիցները, բիրտ ուժի կռթնած, կը թողուն իրենց ժողովուրդին 100 ին 90ը անդաստիարակ, այսինքն կոշտ մսակոյտ մը անզօր ու անմիտ, փոխանակ այդ վիթխարի զանգուածը կրթութեամբ անհուն զօրութեան մը փոխելու։ Զարմա՞նք է միթէ որ 14 ամսէ ի վեր Ռուսիա ամեն ճակատամարտի մէջ,

առանց եզական բացառութեան մը, կը յաղթուի ծարոնէն։ Ամենալաւ կրթութեա՛մբ միայն, եւ ոչ այլ հնարքով, կրնար Միքաայէլի ժողովուրդը հանիլ այս փառքին ու համաշխարհական վարկին այսքան կարճ ատենի մը մէջ։ Եւ վա՛րկը չէ մեծագոյն վարձքը, այլ այն հոգեկան, ներքին հոլովոյթը որ խարիսխն է զօրութեան և որ ամենէն փառաւորն է՝ ճշմարիտ յեղափոխութեանց։

Այո՛, դաստիարակութիւնը ամենէն հրաշագործ զօրութիւնն է յաշխարհիս։ Հինգ նկանակն ու երկու ձուկը օրհնելով հինգ հազար հոգիներ կերակրելէն շատ աւելի մեծ հրաշք մ՚է զոր ճշմարիտ վարժապետը կը կատարէ իւրաքանչիւր աշակերտի վրայ որ կոշտ ու կոպիտ հինգ զգայարանքներովն կուգայ ենթարկուիլ կրթական ազդեցութիւններու դրութեան մը։ Մանուկին մէջ իմացական կեանքը կը խթանուի, անոր միտքը ճիգի կը վարժուի, ուշադիր ըլլալ, տրամաբանել կը սորվի։ Անոր մէջ գաղափարներու, զգացումներու, ձգտումներու, կամական ուժի եւ իտէականի ուժերը կը համբարուին, եւ ահա տխմար ու տկար տղան 10–15 տարուան մէջ փոխուած կը գտնենք բոլորովին տարբեր էակի մը. հինգ զգայարանքով տղան հինգ հազար հոգիէ բաղկացած լէգէոնի մը հաւասար զօրութեան մը տէր դարձած է։ Հողէ տկար անօթի մը նման էր, ու հիմա անսպառ ուժանակ կամ տինամիթ արտադրող գերմարդկային էակի մը կը նմանի։

Դաստիարակութեան ուժը շատոնց ճանչցուած է, եւ սակայն Ամերիկայի ու Եւրոպայի մէջ

վերջին ժամանակներս աւելի մեծ կարեւորութիւն տալ սկսած են անոր ։ Յառաջդիմական ամենէն իմաստուն առաջնորդներուն միտքը կ'ըզբաղի կրթական քաղաքականութեան ու մեթոտի խնդիրներով ։ Հարվըրտ Համալսարանի նախագահ Էլիըթ յիրաւի կ'ըսէ թէ կրթութիւնը Ամերիկացւոց համար կրօնք դարձած է ։

Մեր Ազգին առաջնորդներն ալ այս ճշմարտութիւնը ըմբռնած են ։ Արդի ժամանակաց ամենէն մեծ երկու հայ դէմքերը ատով մեծ եղած են ։ ՄԽԻԹԱՐ հայկական թագ չուզեց Եւրոպայի Տէրութիւններէն , այլ Եւրոպիոյ լոյսը ուզեց նշողել դէպի Հայ ժողովուրդը որպէս զի Ազգը նախ ստանար թագ կրելու արժանի գլուխ ։ ԺԹ․ դարու մեծ Հայերուն ամենէն մեծը , ԽՐԻՄԵԱՆ ՀԱՅՐԻԿ , իսկատիպ ու կորովի միտք , կրթասիրական սխրալի խոյանքով մը Հայաստանէն Պոլիս , Պոլսէն Հայաստան կը սրանայ , և ժողովրդային զանգուածը բուն Հայրենիքին բոլոր ընդարձակութեանը մէջ կրթելու դատը կը ջատագովէ մարգարէի հոգւով — եւ կը յաջողի Հայաստանի կուրծքին վրայ կանգնել տպարան , հիմնարկել թանգարան , հրատարակել հանդէս մը , հասցնել վարդապետներ ու վարժապետներ , եւ եւրոպական լուսոյ ու զօրութեան վառարաններ ստեղծել հայրենեաց ծոցին մէջ ։ Յայսմ է մեծութիւնը Հայրենեաց Հայրիկին ։

Հայրիկին տուած ցունցը չուկէտն եղաւ այն դպրոցասիրական շարժումին որով , ի ձեռն այլազան Ընկերութեանց , բազմաթիւ վարժարաններ ստեղծուեցան հայկական գաւառներուն մէջ ։ Այդ շարժումը ողբալի կերպով խոչընդոտնուած

է 1878էն ի վեր, սակայն չէ կանգ առած։ Միայն բաղդապաշտիկ հատուածին մէջ է որ կրթական գործը, որբերու խնամքը, դպրոցը անարժան կը համարուին զոհողութեան և ճիգի։ Մոլորութի՛ւն անչքմեղելի։ Կուգայ ժամանակը, եւ ոչ շատ ուշ, երբ բոլոր ժողովուրդը պիտի հասկնայ թէ իր հարազատ ու իմաստուն զաւակներն անոնք չեն որ կը փորձեն դիպուածներ ստեղծելով ազգային բաղդը "ձեռք ձգել յանկարծական յարձակմամբ", այլ անոնք որ ազգային վերածնութեան հոյակապ ճիգին կը նուիրեն իրենք զիրենք հոլովութական մեթոտով։ Մեր ամենէն մեծ ազգասէրները Ռէթէոս Պէրպէրեաններն են որ կըրթըւած զաւակներ կ՚ընծայեն Ազգին ու օտարներէն ամենէն ճշմարիտ բարեկամներն են Համլիններ, Թրօպրիճներ, Ուօշպըրններ ու Րօպէրդ Չէյմպըրգները որոնք իրենց ներկայութեամբն ու կրթական գործունէութեամբը Հայոց մէջ կը բարձրացնեն կրթական աստիճանը ու կ՚ընդլայնեն հայ մտածութեան հորիզոնը։ Պուլկարիոյ նախարարապետն, Սթօիլոֆ, յայտարարած է որ եթէ Րօպէրդեան վարժարանի պուլկար ընթացաւարտները չըլլային, Պուլկարիա, ազատութիւնը գտած ատեն, պիտի ստիպուէր Ռուսիոյ դիմել իր գործադիր պաշտօնեաները հայթայթելու համար։ Ռուսիա՛ ալ գիտէ այս բանը։ Մին այն խնդիրներէն որոնք երկու տարի առաջ տրուեցան Քիէվի Ռուսական Եկեղեցւոյն Աստուածաբանական Ճեմարանի չըրջանաւարտ դասին՝ էր "Րօպէրդեան վարժարանին ազդեցութիւնը Պուլկարիոյ փթթումին մէջ։"

Մեզի համար ալ չկայ լուր մը այնքան քաջալերական ու անոյշ որքան կրթական լուրջ ձեռ-

նարկներ ծանուցանող լուրերը։ Պօղոս Փաշա Նուպար ահա մէկ միլիոն ֆրանք կը նուիրէ Գահիրէի մէջ բարձրագոյն վարժարան մը հիմնելու համար։ Ռաշտի մէջ Տիար Աւետիս Յորդանանեան 20 հազար թուման կը ծախսէ դպրոցի մը վրայ։ Տիար Տիրան Ափրիկեան Ուրմիոյ գաւառին մէջ քսան դպրոց մէկէն կը բանայ։ Այրի Տիկին Քէլէկեան 4000 ոսկիի գումար մը կը յանձնէ Ս. Պատրիարքին տրամադրելով որ անոր հասոյթը կրթական հաստատութեանց նուիրուի։ Լուրերու այս փունջը որ մէկէն կը հասնի մեզի օրերս, ամենէն բարեգուշակն է Հայութեան համար։

Մեր ազգային քաղաքականութիւնը էապէս կրթական քաղաքականութիւն մ'ըլլալու ուղղութեան կը միտի, ահա վերածնութիւն գուշակող երեւոյթը։ Պէտք է բոլոր ուժերնիս այդ կրթական գործին նուիրենք ու սերմանենք հիմա ինչ որ կ'ուզենք որ 50 տարիէն բուսնի Հայաստանի մէջ։ Ու աւելի մօտ ապագայի մէջ ալ պիտի գընահատենք կրթութեան առաւելութիւնները։ Ասկէ ետեւ մեր մրցումը Քրդին ու Թուրքին հետ չպիտի ըլլայ այլ մանաւանդ Գերմանացւոյն եւ ուրիշ բարձրօրէն կրթուած ցեղերու հետ որոնք պիտի գան մեզի դրացի ըլլալ Փոքր Ասիոյ մէջ։ Մենք ընդունակ ենք ըլլալու եւ պէտք է որ ըլլանք Գերմանացիին չափ կրթուած։ Ու կը փութամ աւելցնել — Գերմանացիէն ալ աւելի։ Եթէ Քուրդը մսակոյտ մ'է ու Գերմանը ուժանակ, Հայը պէտք է ըլլայ հրատիոն (radium)։

Կրնանք կրթութեան շնորհիւ հայ մանուկին արժէքը հարիւրապատկել։ Այս կենսատու

ճիգը պէտք է տարածենք ամբողջ Հայութեան վրայ եւ ՁԹՈՂՈՒՆՔ ԱՆԴԱՍՏԻԱՐԱԿԵԱԼ ԵՒ ՈՉ ՄԷԿ ՄԱՆՈՒԿ, ՄԱՆՉ ԹԷ ԱՂՋԻԿ։ Ասիկա ընելու համար միլիոններով դրամ պէտք է ծախսել, եւ ունինք, կրնանք գտնել դրամը։ Հինգ հազար վարժապետներ ու վարժուհիներ հարկաւոր են, կրնանք պատրաստել զանոնք։ Ասոնք մեր ազգային կարողութենէն վեր բաներ չեն։ Բաւական է որ բոլոր մեր հարուստներն ու առաջնորդներն որոշեն թէ ՀԱՅ ԱԶԳԸ ԱՇԽԱՐՀԻՍ ԱՄԵՆԷՆ ԼԱՒ ԿՐԹՈՒԱԾ ԱԶԳԸ ՊԻՏԻ ԸԼԼԱՅ

Հայ Ազգին կենսական ճիգը այս կրթական հզօր, մեթոտաւոր ու կազմակերպեալ ճիգը պիտի ըլլայ։

# ՎԵՐՋԱԲԱՆ

## ՀԱՅԿԱԿԱՆ ՓԱՌԱՒՈՐ ՀԵՌԱՆԿԱՐՆ

Հայ Ազգը նշանաւոր անցեալ մը ունեցած է ու փառաւոր ապագայի մը կը պատրաստուի։ Ո՛չ հրաշիւք, այլ կարգ մը բարեմասնութիւններո՛ւն շնորհիւ է որ անիկա արժանացած է հին աշխարհի կայսրութիւններուն քայքայումը տեսնելէ յետոյ՝ նոր ազգերու ծնունդը ողջունել, եւ իր նուիրական Հայրենեացը կրօնական ջերմեռանդութեամբ մը յարած՝ դարերով կանգնիլ քաղաքակրթութեան ու բարբարոսութեան սահմանագլխուն վըրայ իբրեւ աննկուն ախոյեանը յառաջդիմութեան։

Ու հիմա կը սկսինք հասկնալ թէ մեր Ազգը, որ երեք հազար տարի անվկանդ կուրծք տուած է դէպքերու ահեղ ու համայնակուլ թաւալմանը, այժմ վաղվաղկոտ ոստոստիւնով չէ որ պիտի կրնայ քաղաքակիրթ ազգերու շարքին մէջ պատուաւոր դիրք մը գրաւել, եւ ոչ ալ այդ դիրքը շնորհք մըն է հզօրներէն պարգեւելի, այլ վիճակ մը որուն պիտի հասնինք՝ հոլովութական մեթոտին պատկառ՝ մեր բոլորանուէր ու համբերատար ճիգերը թափելով։ Մեր զօրութեան աղբիւրը հեռուները չպիտի փնտռենք, այլ մեր իսկ ներսը։ Մոգական ցուպի հարուածը ապառաժէն ջուր չպիտի հանէ մեզի համար, այլ մեթոտեալ ու հա-

մասփիւռ դաստիարակութեան շնորհիւ իւրաքանչիւր հայ անհատ պիտի ըլլայ հսկայ ոյժ մը— ոյժ մը օտար թերթերու բիւրաւոր համակրական յօդուածներէն աւելի օգտակար, Կլատսթոններու պերճախօս ջատագովութիւններէն աւելի ազդու, մեծ Տէրութեանց միջամտութիւններէն աւելի՛ արդիւնաւոր։ Ու երբ այս անհատական վիթխարի ուժերը հաւաքական ճիգին մէջ միանան, Ազգին զօրութիւնը ամենազօր պիտի ըլլայ ու ամենայաղթ։ Անիկա բարբարոսաց պատկառելի պիտի ըլլայ ու քաղաքակրթելոց յարգելի։ Այն ատեն Ազգը ոչ թէ ՊԻՏԻ փրկուի, այլ ՓՐԿՈՒԱ՛Ծ է — փրկուա՛ծ իր համբաւեալ անմիաբանութենէն, փրկուա՛ծ իր ստրկութեան բոլոր ախտաւորութենէն, փրկուա՛ծ իր գերութենէն, ու համերաշխութեան ամուր խարիսխին վրայ իր աշխարհաշէն գոյութիւնը հոյակապօրէն բարձրացուցած։

Ճգնաժամը սարսեց մեր Ազգը. ահագին է ցունցը զոր կը զգանք եւ որ կարգ մը կենսական ճշմարտութիւններ կը հարկադրէ մեր հասկացողութեան։ Աղէտի դղրդեցուցիչ մրրիկներուն մէջէն ձայն մը կը գոռայ մեր Ազգին — Դո՛ւ ես Արեւելքի ժողովուրդներն դէպի լոյս առաջնորդելու պաշտօնին կոչուած Ազգը. դո՛ւ պիտի մղես զանոնք յառա՜ջ, ո՛չ գնդակի ու սուինի հարուածներով, այլ քու վերկենցաղմանդ հրապուրիչ օրինակն ու աշխարհաշէն արդիւնքներն անոր ընծայելով։

Ու այս է պատգամն Յաւիտենականին որ Ազգերու ճակատագրին կը նախագահէ։

ՎԵՐՋ